ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա.

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ
## ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑ

ԹՐԳՄՆ.
Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Վ. ԳԱԼԵՄՔԵԱՐԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*
1890.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա.

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑ



ՎԻԵՆՆԱ

*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*

1890.

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ

1, ՊԻԾՈՓ, ԼԵՀԱՀԱՅՈՑ ՀԻՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

2, ԳՈԼԷՐ, ԻՐԱՒՈՒՆՔ ՀԱՅՈՑ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*

1890.

Այս երկուքն գիրար կ'ամբողջացընեն: Եւ թէեւ երկրորդն առաջնոյն վրայ յեցած է, սակայն Մխիթար Գոշի[1] Դատաստանագիրքն եւ ուրիշ ազգերու օրէնքներն Լեհահայոց օրէնքներուն հետ համեմատուած ըլլալուն, սոյն ուսումնասիրութիւնն մեծագոյն արժէք է ստացած:

Մեր կողմանէ քանի մը ծանօթութիւնք դրուած են, աւելի առաջին մասին մէջ:

ԹԱՐԳՄԱՆԻՉՆ

---

[1] Արտագրութեան արժանի է որ Ստեփանոս Ռոշքա իւր ժամանակագրութեան մէջ (ամ Տեառն 1184) Մխիթար Գոշի Դատաստանագիրքը կու տայ Յովսէփ անուն մէկու մը: Ահա իւր խօսքը.

“Հայրն Յովսէփ ի Գունդոյ անապատին, հրամանաւ Տ. Ստեփաննոսի Աղուանից կաթողիկոսին, յաւուրս Մեծի Ռուբենի Կիլիկիոյ իշխանին, գրեաց զդատաստանագիրքն Հայոց, զեկեղեցականաց, եւ զաշխարհականաց խառնիխուռն եդեալ: Հաւաքեալ ի զանազան օրինաց կայսերացն Հռոմայեցւոց, ի հին օրինացն Մովսէսի, եւ ի Հարց ոմանց: Բայց ի տեղիս տեղիս յոյժ սխալի, յայտ է, թէ ոչ էր Օրինագէտ: Խառնէ զքաղս Լատինաց, եւ Յունաց, կարծեմ, թէ ոչ էր տեղեակ նոցին: Դատ.(տօփանոփէրէ+) իմ:„ .

# ՊԻՇՈՓ

# ԼԵՀԱՀԱՅՈՑ ՀԻՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

## 1.

Երբ ես Աւստրիական Գաղիցիայէն իրաւանց ժողովածոյիս համար Լեմպերկի քաղաքային դիւանին դիմած էի, (որուն թոյլտուութիւն առած էի վարչական խորհրդական եւ քաղաքապետ R. v. Höpflingen-Bergendorfէ ամենայն շնորհակալութեամբ,) գտայ հոն Լեմպերկի Հայոց յարաբերութեանց մասին վաւերագրերու (Urkunden) մեծ քանակութիւն մը[1], որոնց մէջէն մանաւանդ Սիկիզմունտ Աի մէկ վճիռն իմ մտադրութիւնս վերջին աստիճանի գրաւեց: Այս վճիռն, որ քաղաքին վարչաց եւ Հայոց մէջ եղած իրաւանց խնդրոյ մ'առթիւ 1523ին տրուած էր, ի մէջ այլոց նաեւ միտ դնել կու տար՝ որ Հայոց իրաւունքն թագաւորին հրամանաւ հայերէնէ լատիներէն թարգմանուած է, եւ յետոյ բաւական ուղղութիւններէ եւ փոփոխութիւններէ ետեւ՝ թագաւորէն հաստատուած է:

---

[1] Փրոֆ. Պիշոփ սոյն վաւերագրերն ժամանակագրական կարգաւ հրատարակած է այս վերնագրով. Urkunden zur Geschichte der Armenier in Lemberg, v. Dr. Ferd. Bischoff, Wien, 1864. Այս հրատարակութիւնն կը բովանդակէ 69 թագաւորական վաւերագիր՝ լատին լեզուաւ, որոնք 1377—1736 տրուած են Լեհաստանի Հայոց քաղաքային եւ իրաւաբանական խնդիրներուն առթիւ: Ասկէ զատ կան ուրիշ վաւերագրեր ալ, զորոնք Պիշոփ դուրս թողած է, կամ որովհետեւ մասնական անձանց եւ դիպաց համար, եւ կամ զուտ կրօնական խնդրոց առթիւ տրուած են: Ծ. Թ.

Ասկէ գրգռուեցայ նոյն իրաւունքը փնտռել, մանաւանդ որ Լեմպէրկի Հայոց երբեմն սեպհական իրաւունք ունենալուն վրայ յիշատակութիւններ կարդացած էի: Եւ արդեամբք՝ հետաքրքրութեամբ փնտռածս շուտով գտայ նոյն դիւանին մէջ, որ մեծաւ մասամբ կարգի դրուած է: Թէեւ կրնամ ուրախանալ, որ այս շատ կողմանէ նշանակալից դատաստանագիրքն հրատարակել պիտի կարենամ[1], կ'ուզեմ սակայն առ այժմ իմ մինչեւ ցայժմ ըրած խուզարկութեանցս արդիւնքն հոծ եւ համառօտ կերպով ծանուցանելով՝ նպաստել նոյն արդիւնքն ամբողջացընելու եւ ուղղելու, եւ կամ նոր ծանօթութիւններ տալու՝ որոնք կրնան իրն աւելի կատարելագործել:

Երբ Լեհաց թագաւորն Գազիմիր Գ Լեմպէրկ քաղաքին գերմանական իրաւունք շնորհեց ԺԴ դարուն մէջերը, Հայք արդէն հոն կը բնակէին, եւ այն՝ — որ անտարակուսելի է, — արդէն երկայն ժամանակէ վեր[2]: Քաղաքային դիւանին քանի մը հնագոյն վաւերագիրները կը յիշեն՝ Հայոց բաղնիք, վաւերագրով հաւատարմացեալ ատենական խնդիրներ, ինչպէս նաեւ զայն՝ թէ Հայք նոյն իսկ Գազիմիրի ժամանակ հաստատուն կալուածներ, նշանաւոր պալատներ եւ նոյն իսկ քաղաքին մէջ տներ ունէին: Ինքն Գազիմիր՝ Գրիգոր հայ եպիսկոպոսին իշխանութիւն տուաւ իւր աթոռն Լեմպէրկ հաստատելու, եւ հոն իւր իրաւանց ու կրօնին եւ Հայոց սովորութեանց ու կարգին համեմատ ապրելու[3]: Իսկ 1379ին Եղիսաբէթ թագու-

---

[1] Եւ իրօք 1862ին հրատարակած է, Das alte Recht der Armenier in Lemberg անուամբ: Ծ. Թ.

[2] Հայոց Լեհաստան պանդխտելուն վրայ տ. Ճառ՝ Wiadomoscz o Ormianach w Polszcze, ի Bibl. naukow. Zakladu Ossolinsk. 1842, l. II. — E. Ritter, Erdkunde X, 3. S. 594. — Բժշկեանի գիրքը՝ Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, չկրցայ ցայսօր ձեռք բերել:

[3] Այս արտօնութիւնը տես՝ Naruszewicz, Hystoria narodu polsk. VI. 186. — Տես նաեւ Barącz, Żywoty

հւոյն տուած մէկ արտօնագրին մէջ, զոր յաջորդ-տարին Լուդովիկոս Թագաւորն եւ 1387ին Վլատիսլաւ Եակելոն վերստին հաստատեցին, եւ որ զՀայս Գազիմիր Թագաւորէն ի վեր ունեցած հին կարգաց ու սովորութեանց, իրաւանց եւ օգտին մէջ պահեց, Հայք արդէն իբրեւ հասարակութիւն մը կ'երեւան, որ ունի սեպհական Վոյթ, եպիսկոպոսներ, քահանաներ եւ եկեղեցիներ [1]:

Բայց իրենց դիրքն հազիւ Գազիմիր Գէն սկսեալ եւ հետզհետէ իրաւագիտօրէն որոշ եւ պաշտպանեալ եղաւ: Չունէին հիմնարկութիւն մ'ընելու կամ վարձելու արտօնութիւն, ինչպէս իրենք յետոյ իրաւաբանական վէճի մը ժամանակ յայտնապէս երդմամբ հաստատեցին, եւ հնագոյն արտօնութեան մը չքողոքեցին: Եւ նոյն իսկ Եղիսաբէթ Թագուհւոյն եւ Լուդովիկոս ու Վլատիսլաւ Թագաւորաց տուած յիշեալ արտօնութիւններուն՝ մանրամասն որոշեալ իրաւունքներ կամ արտօնութիւններ չունեցան. այլ՝ ինչ որ իրապէս կը գործադրուէր՝ այն արտօնութիւնք յընդհանուրն եւ իբրեւ օրինօք հաստատեալ ճանչցուեցան: Հազիւ ԺԵ դարէն ետեւ քանի մը Թանկագին արտօնագրեր ընդունեցան, որոնք ստուգիւ մեծապէս նպաստեցին այն բարօրութեան եւ հարստութեան, որով նոյն իսկ Թագաւորաց՝ իրենց լեզուագիտութեամբն եւ առեւտրական յարաբերութիւններուն՝ յաճախ մեծ ծառայութիւններ մատուցին: Իրենց համար,

---

slawnych Ormian, Lwow, 1856, S 133. — Bibl. nauk. Zaklad. Ossol. l. c. I. 80.

[1] Հայք տակաւին Լեմպէրկ չհաստատուած՝ ԺԴ դարու մէջերն Կամենիցի մէջ ունէին առանձինն ատեան: Ստեփանոս Ռոշքա իր ժամանակագրութեան մէջ կը գրէ. "Հայք Կամենիցացիք յայսմ ամի (1350) սկսան ի ձեռն բրիվիլէկաց Թագաւորացն Լեհաց դատաստանս առնել, մինչ զի կարող են եւ զմահապարտսն մեռուցանել, առանց հրամանի կամ Թոյլտուութեան Լեհաց (Մոհրն նոցա):„ Իսկ Լեմպէրկի Հայոց աԹոռանիստ եկեղեցւոյն շինութիւնն աւարտեցաւ 1363ին, եւ առաջին Արքեպիսկոպոսն եղաւ Յովհաննէս Ա. 1365ին: Ծ. Թ.

որոնց նախնիքն ըստ վկայութեան Հերոդոտեայ հեռաւոր երկիրներ առուտուր կ'ընէին, անտարակոյս ամենէն պատուականն էր տէրութեան ամէն մասին մէջ առուտուր ընելու հրամանն, զոր իրենց տուաւ 1402ին Վլատիսլաւ Բ թագաւորն, որպէս զի զիրենք մխիթարէ այն կորստեան համար, զոր կրեցին Թաթարստանի հետ առեւտրական յարաբերութեան՝ պատերազմներու պատճառաւ ընդհատելովն։ Գազիմիր Դ թագաւորն 1462ին այս կարեւոր արտօնութիւնն հաստատեց եւ ընդարձակեց այն պատուական յաւելուածով՝ որ Հայք կարենան ծովէ կամ օտար երկիրներէ բերած ամէն ապրանքն ու իրերն՝ տէրութեան ուրիշ բնակչաց պէս տաղանդով, կշռով եւ կանգնով ինչպէս սովորութիւն է, ամէն քաղաքաց՝ շուկայից եւ տէրութեան ուրիշ տեղերուն մէջ ծախել։ Երկու տարի ետքը թագաւորը նորէն հաստատեց իրենց իրաւունքն[1], եւ 1486ին իրաւունք տուաւ՝ 1476ին տրուած վճռագրին հաստատութիւն տալու առթիւ, զոր վերջէն յառաջ պիտի բերենք, ամէն տեսակ գինի Լեմպէրկի մէջ ծախելու։ Ի վերջոյ յիշենք Սիկիզմունտ Ա ի ժամանակէն ի վեր իրենց մաքսէ ազատ ըլլալն, զոր 1505ին տուաւ իրենց՝ Աղեքսանդր թագաւորն այն ամէն վաճառաց համար, որոնք սովորական դրամին 30 վաթսնակմնէն (Schock) աւելի կ'արժեն, բայց պարտաւորեց՝ որ ի վաղուց տրուած տարեկան 18 վաթսնականէն զատ՝ 12 վաթսնական ալ ամէն տարի թագաւորին հատուցանեն։

Բայց Հայոց արտօնութիւններն, որ յաճախ հաստատուեցան եւ նորեր ալ տրուեցան, ունէին նաեւ իրենց յոռի կողմերը, այսինքն՝ քաղաքին հասարակութիւնն ասով սկսաւ նախանձիլ եւ հոգալ՝ որ մի՛ գուցէ Հայոց յառաջադիմութիւնն իրեն շահը նուազեցընէ եւ զինք վտանգի մէջ դնէ։

[1] Bibl. nauk. I, 81։

Այս միջոցին քաղաքն ալ շատ նշանաւոր պատուութիւններ եւ իրաւունքներ ընդունեցաւ, որոնք ըստ մասին Հայոց իրաւանց հետ յարատեւ շփման մէջ էին։ Այս երկակողմանի յարաբերութիւնք հետզհետէ աւելի որոշուեցան եւ ճիշդ սահմանուեցան. եւ այս պատճառաւ՝ նոյն իրաւանց ամէն բնութագրութիւն աւելի դիւրաւ եւ զօրաւոր կը զգացուէր։ Բայց ասկէ՝ կրօնի, իրաւանց, լեզուի, սովորութեանց եւ կարգաց տարբերութիւնն անսպառ աղբիւր մըն էր երկակողմանի դրդուութեան եւ թշնամութեան։ Ուստի զարմանալի չէ՝ որ երկու հասարակութեանց մէջ միշտ կագ եւ կռիւ կար։

Սոր ահիթներէն մին էր անտարակոյս այն թագաւորական արտօնագիրն, որով առանձնական Հայու մը իրաւունք կը տրուէր ընտանեօք հանդերձ Հայ իրաւունքէ ելլել եւ անցնիլ գերմանական իրաւանց, զոր ունէր Լեմպերկ քաղաքն։ Կարելի չէ ճիշդ ըսել, որ արդեօք այս անցմունք (զոր միայն 1427էն ետեւ կրնանք վաւերագրերէ ցուցընել,) միայն այն առաւելութեանց համար կ'ըլլային, զոր կու տար գերմանական իրաւունքն։ Հաւանական է որ քաղաքացեաց կամ քաղաքին հասարակութեանը Հայոց տուած նեղութիւնքն ալ այն մղած ըլլան. եւ ստոյգ է՝ որ այսպիսեաց թիւն համեմատաբար մեծ էր։ Այս անցմունք երկու կողման ալ վնասակար էին։ Այսպիսիք քաղաքացեաց հաճոյ չէին. վասն զի ասով Հայք քաղաքին իրաւունքը կը վայելէին եւ քաղաքացեաց հաւասար իրաւունքներ կ'ունենային, զոր քաղաքացիք իրենց տալ երբեք չէին ուզեր։ Նաեւ Հայոց վնասակա[illegible] վասն զի ասով Հայ հասարակութիւնը կը նուազէր եւ անդամոցը մէջ երկպառակութիւն կը սերմանուէր, այնու որ գերմանական իրաւանց տակ մտնողն կ'ազատէր Հայ հասարակութեան բեռներէն եւ պարտաւորութիւններէն։ Այս վերջնոյս, որ նաեւ թագաւորական շահուն վնասա-

կար անպատեհութիւն մըն էր, առջեւն առնուլ ուզեց Վլատիզլաւ Գ․ին 1440ին տուած վճիռն, որով այն ամէն Հայք՝ որ Հայոց կրօնն ունէին, պարտական էին հաւատարապէս իրենց ստացուածոց աստիճանին համեմատ Թագաւորէն դրուած պարտաւորութիւններն կատարել, եւ ի մասնաւորի սպառնացաւ Թագաւորն, որ գերմանական իրաւանց անցած եւ յապագային անցնելի բազմաթիւ Հայք Թագաւորին աչքէն կ'իյնան, եթէ սոյն հրամանը չեն կատարեր։ Այս վճռէն քիչ մ'ետքը՝ Թագաւորն իւր նախորդին՝ Վլատիզլաւին 1434ին տուած մէկ արտօնութիւնն հաստատեց, որ նոյնպէս ազդու վկայութիւն մը կու տայ՝ թէ Հայք նաեւ իրենք իրենց մէջ խռովութեան մէջ էին։ Թագաւորն ուզելով իրենց ի վաղուց մինչեւ ցայնժամ գործադրեալ իրաւունքներն ու սովորութիւններն ամրացընել, արգելեց՝ որ կերպով մը չբռնաբարուի իրենց իրաւունքն մահուան ժամուն իրենց կամաց վերջին տրամադրութեան մասին, եւ հայ Վոյթին խստութեամբ պատուիրեց՝ որ այս իրաւանց բնաւ արգելք չդրուի եւ կամ այս կամաց գործադրութիւնն չխափանուի։ Այս արգելքն ուղղակի Հայոց ուղղուած էր, եւ առանձինն Վոյթին տրուած յորդորն ենթադրել կու տայ, որ ինքն ալ իւր պարտուց կատարման անփոյթ կը գտնուէր։ Գրեթէ միեւնոյն ժամանակ քաղաքացեաց եւ Հայոց մէջ ծագած ուրիշ վէճ մը, որ նոյնպէս Թագաւորին առջեւ ելած էր, Վլատիզլաւի 1444ին տուած մէկ վճիռը կը ծանուցանէ մեզի․ Վոյթը կ'ամբաստանէր երկու մսավաճառանոցներու իրաւանց բռնաբարութիւնն, որոնք քաղաքին մէջ ի վաղուց հաստատուած էին, եւ ասոնց ու Վոյթութեան եկամուտէն՝ ինքն Վոյթը Թագաւորին տարեկան որոշ տուրք մը, այն․ է՝ սովորական դրամի 18 վաթսնականը (Schock) կը հատուցանէր։ Թագաւորն պաշտպանեց Վոյթին

մոմավաճառանոցի իրաւունքն, ինչպէս նաեւ առհասարակ Հայոց մինչեւ այն ատեն ունեցած իրաւունքներն ու սովորութիւններն՝ արտօնագրոց խօսքերովն, կէտերովն ու յօդուածներովն վերստին հաստատեց. եւ կուսակալաց ու Լեմպէրկի հիւպատոսաց հրամայեց՝ որ հայ Ազգին մոմավաճառանոց ունենալու եւ հոն մոմ ծախելու իրաւունքն, ինչպէս նաեւ Հայոց հին իրաւունքներն ու ազատութիւններն անարատ պահուին, եւ անոնց ամէն բռնաբարութենէն զգուշացուի:

Թէեւ Թագաւորն այսպիսի տրամադրութիւններ ըրաւ, սակայն Հայոց եւ քաղաքացեաց յարաբերութիւններն չխաղաղեցան: Նա մանաւանդ քիչ մ'ետքն իրաւաբանական մեծ կռիւ մը ծագեցաւ, որ երկայն ատենէ վեր կը խմորէր. կռիւն Հայոց բուն մեծ բարեացն՝ այսինքն սեպհական ատենին վրայ էր, որ եւ երկու դարէ աւելի տեւեց:

Քաղաքային դիւանի վաւերագիրներէն եւ գրքերէն կարելի չէ իմանալ սոյն իրաւաբանական վէճին առաջին պատճառն. սակայն յաջորդ դէպքն կ'երեւայ թէ ասոր հետ յարաբերութիւն ունի: Յամին 1460 Լեմպէրկի հիւպատոսներն, քաղաքացիք եւ ամբողջ հասարակութիւնն Գազիմիր Դ Թագաւորին խնդիրք մը ներկայացուցին, որ Թագաւորն հաճի վերստին հաստատել Գազիմիր Գի արտօնութիւնն, զոր նաեւ Վլատիզլաւ (Բ) մեծ կնքով հաստատած էր: Գազիմիր Դ սոյն խնդիրքը լսեց եւ հաստատեց այն արտօնութիւնն՝ որով Գազիմիր Գ 1356ին Լեմպէրկ քաղաքին եւ բնակչացը գերմանական իրաւունք կը շնորհէր, որ սովորաբար Մագդեբուրգեան իրաւունք կը կոչուի, ռութենական իրաւունքն ու սովորութիւնները կը բառնար, քաղաքն ու բնակիչքը պալատական կոմսերու, բերդակոմսերու, դատաւորաց, երկրորդական դատաւորաց, զօրագլխաց եւ անոնց ամէն պաշտօնէից իրաւաբանութենէն եւ իշխանութենէն

կ'աղատէր. այնպէս որ ոչ ծանր եւ ոչ թեթեւ յանցանաց համար անոնց առջեւ պատասխանատու ըլլալ կամ պատիժ կրել պարտական էին։ Քաղաքացիք միայն իրենց սեպհական Վոյթին առջեւ պիտի ելլէին. իսկ ասիկայ միայն թագաւորին պատասխանատու էր, եւ այն՝ գերմանական իրաւանց համեմատ, եթէ թագաւորն կնքեալ թագաւորական թղթով մը զինք կանչէր։ Քաղաքին Վոյթն յանցանքի իրաց եւ ուրիշ դիպաց մէջ լիուլի իշխանութիւն ունէր դատելու, որոշելու, պատժելու, ուղղելու, կշտամբելու եւ դատապարտելու, ինչպէս որ գերմանական իրաւունքը կը պահանջէր։ Թէեւ բովանդակ քաղաքին եւ ամէն բնակչացն ու հոն գտնուողներուն Մակտեպուրկեան իրաւունք շնորհեցաւ, սակայն թագաւորն քաղաքին մէջ բնակող ազգաց, այն է՝ Հայոց, Ռութեններու, Սարակինոսաց, Հրէից եւ այլն առանձինն շնորհեց՝ որ ասոնց սեպհական իրաւանց գործադրութեան արգելք չդրուի, այլ ամէնքն ալ իրաւունք ունենան՝ թէ՛ իրենք իրենց եւ թէ՛ ուրիշին հետ ունեցած ամէն իրաւաբանական խնդրոց մէջ քաղաքին Վոյթին առջեւ Մակտեպուրկեան իրաւունքը գործածելու։ Եթէ այս իրաւունքն չեն ուզեր գործածել, այն ատեն իրենց դէմ եղած որեւէ ամբաստանութիւն իրենց ատեանին առջեւ իրենց սեպհական իրաւանց համեմատ՝ բայց քաղաքին Վոյթին նախագահութեամբը՝ քննուի եւ որոշուի[1]։

Շատ տարակուսական է՝ որ այս արտօնագիրն, որ նաեւ քանի մ'ուրիշ որոշումներ կը բո-

[1] Տես այս արտօնութիւնն՝ 1480ի հաստատ. Տէն հանուած՝ տպագրեալ Österreich. Staatsrecht u. Privil. եր. 72. Zubrzycki, Kronica miasta, Lwow, S. 488։ — 1356ի արտօնութիւնն՝ առանց հաստատողական յաւելուածոյն կը գտնուի քաղաքային մատենին մէջ Թ. 1061 եւ Լեմպէրկի հիւպատոսաց ընդօրինակութեան (Transsumpt) մը մէջ, անթուական եւ չստորագրեալ։ Քաղաքային մատենին ընդօրինակութիւնը հաստատիչ արտօնագրին խօսքերէն քիչ մը կը տարբերի։

վանդակէ՝ որոնք Հայոց վիճակին հետ յարաբերութիւն մը չունին, իրօք Գաղիմիր Գ. թագաւորին ըլլայ[1]. իսկ նոյնին ի Վլատիզլաւ թագաւորէ ենթադրեալ հաստատութեան հետքն անգամ չի գտնուիր: Բայց Գաղիմիր Գի հաստատելն անտարակուսելի է, նոյնպէս այն՝ թէ Հայք մինչեւ այս հաստատութիւնն՝ քաղաքին Վոյթին հետ չունէին այն յարաբերութիւնն՝ որ այս հաստատեալ արտօնագրոյն համապատասխանէ: Ըստ այսմ, միշտ եւ ամէն իրաւաբանական խնդիր որ առեան պիտի ելլէր, քաղաքին Վոյթին առջեւ կը քննուէր, թէեւ մէկն հայ կամ գերմանական իրաւունքն ունենար: Իսկ Հայք իրենց Վոյթն ունէին, որ հայ Աւագանւոյն հետ դատ կը նստէր, եւ Հայոց վրայ ըստ հայ իրաւանց գրեթէ անկոպար իրաւաբանութիւն ի գործ կը դնէր, եւ ոչ մէկ կողմանէ քաղաքին Վոյթին ստորակարգեալ էր: Յայտնի է որ այս յարաբերութիւնն չէր կրնար երկար տեւել՝ երբ այն արտօնութիւնն կը ճանչցուէր եւ անոր զօրութիւն կը տրուէր: Քաղաքացեաց՝ այս յարաբերութեանց ի վաղուց ընդդէմ չդառնալն բաւական զօրաւոր նեցուկ է այն կարծեաց, թէ Գաղիմիր Գին համարուած արտօնութիւնն հաղիւ նոյն առեն հաստատութիւն առնելու համար ի մէջ բերուած էր: Սակայն նոյն իսկ այս առթիւ՝ հին անխուսափելի խմորն անմիջապէս չժայթքեցաւ: Հայք գրեթէ միեւնոյն ժամանակ նոյն հաստատութեան հետ ընդունեցան իրենց արտօնութեանց հաստատութիւնն ի ձեռն Գաղիմիր Դի, որ այնչափ աւելի մտադրութեան արժանի է, որ գրեթէ ամէն արտօնութիւնք սեպհական հայ Վոյթութեան մը գոյութիւնը կ'ընդունին: Այսպէս հաստատեց թագաւորն 1460ին բաց ի Վլատիզլաւ թագաւորին 1440ին տուած վճռէն՝

[1] Zubrzycki, անդ, եր. 36—:

որ Հայոց հաւասարապէս տուրք վճարելու պարտքին վրայ է, նաեւ նոյնին 1444ի վճիռն, որ Հայ Վոյթին մսավաճառանոցի մասին ունեցած վէճին վրայ է, եւ բաց ասոնցմէ՝ նաեւ 1434ին տրուած արտօնութիւնն՝ որ Հայոց կտակելու ի վաղուց հետէ ունեցած իրաւանց վրայ է, եւ վերջապէս նաեւ Լուդովիկոս թագաւորին եւ Եղիսաբէթ թագուհւոյն արտօնութեանց հաստատութիւններն, զոր տուած էր Վլատիզլաւ թագաւորն յամի 1387։ Յաջորդ 1462 տարին տրուեցաւ, ինչպէս յառաջ յիշեցինք, 1402ին տրուած առեւտրական արտօնութեան հաստատութիւնն ու ընդարձակումը։ Այս 1462ին Գազիմիր Դ թագաւորէն տրուած ազատութեան թուղթ մը կայ, որ չի մեկնուիր, եթէ իրօք թագաւորէն տրուած է. այս թուղթն կը գտնուի թագաւորական դիւանագրերէն 1591ին ընդօրինակեալ դիւանական թղթի մը մէջ, որ եւ կնքուած է, կը գտնուի քաղաքային գրքի մը մէջ Թ. 1061 հին ընդօրինակութիւնը, եւ նաեւ ԺԷ դարուն լեհերէն թարգմանութիւնն, որ Օսսոլինսքի իշխանին ազգային մատենադարանին գրապետին՝ ֆոն Պիելովսքիի քովն է, որուն վրայ յետոյ պիտի խօսինք։ Այս վաւերագրոյն համեմատ՝ Քրիստինոս հայ Վոյթն՝ թագաւորէն հաստատուած արտօնագիրը ձեռքն առած՝ թագաւորին ներկայացաւ եւ ծանոյց, որ Հայք իրենց այս իրաւանց եւ ազատութեան վայելման մէջ թէ՛ ի քաղաքին եւ թէ՛ այլուր շատ կընեղուին եւ կը բռնաբարուին. այս պատճառաւ կը խնդրէ, որ թագաւորն հաճի զինք եւ քաղաքին մէջ բնակող ամէն Հայերն գերմանական քաղաքային իրաւանց տակ առնուլ։ Թագաւորն այս խնդիրքը մերժեց, եւ իւր շահերուն օգտակարագոյն համարեցաւ Հայոց արտօնութիւններն, իրաւունքներն ու ազատութիւններն հաստատուն պահել, եւ զՎոյթն ու Հայերն տէրութեան ամէն պաշտօնէից, դատաւորաց, երկրորդա-

կան դատաւորաց, զօրապետաց, նաեւ Լեմպէրկի Վոյթին եւ Հիւպատոսաց եւ գերմանական իրաւանց ամէն պաշտօնատարց որեւէ իրաւաբանութենէն եւ իշխանութենէն ազատ կացուցանել. այնպէս որ անոնցմէ եւ ոչ մէկուն առջեւ ծանր կամ թեթեւ իրաւաբանական խնդրոց կամ անկարգութեանց մէջ պարտական ըլլան պատասխան տալ կամ պատիժ կրել: Միայն իրենց Վոյթին առջեւ պարտական էին դատուիլ, իսկ սակայն միայն Հայ իրաւանց համեմատ ամբաստանողին պատասխանել պարտական էր: Եթէ մէկն իրաւաբանական խնդիր մ'ունենար Հայու մը հետ, կրնար միայն անոր Վոյթին եւ ատենին մէջ խնդիր յարուցանել, եւ ըստ այսմ պարտական էին վարուիլ ի մասնաւորի Վոյթն, Հիւպատոսք, քաղաքացիք եւ ամէն բնակիչ Լեմպէրկի: Դարձեալ կը սահմանէ Թագաւորն, — ճիշտ Վլատիզլաւ Թագաւորին 1440ին վճռոյն պէս, — որ Հայոց կրօնն ունեցող ամէն Հայք, որոնցմէ շատերն գերմանական իրաւանց անցած էին, իրենց ստացուածոյն համեմատ իրենց վրայ դրուած հարկն ու հանգանակութիւնքն հաւասարապէս պիտի տային: Այս ազատութեան թղթով Հայք ինքնօրինութիւն մը կը ստանային, որուն հասնիլ ի սրտէ կը բաղձային. իսկ սակայն բոլորովին հակառակ կ'ըլլար այն վիճակին, որ իրենց որոշուեցաւ 1460ի հաստատութեան արտօնութեամբ: Բայց ասոր երբեք չհասան, որովհետեւ անկէ ի վեր այս արտօնութիւնն միշտ ճանչցուեցաւ եւ հաստատուն պահուեցաւ: Ուրեմն այս ազատութեան թուղթն այնչափ աւելի շինծու բան մը համարելու է, որչափ որ տեղ մ'ալ յիշատակութիւնը չկայ՝ թէ Հայք փորձած ըլլան նոյնը գործադրել տալ, զոր ստուգիւ զանց չէին առներ այս ժամանակ քաղաքացեաց հետ ունեցած վէճերու առթիւ, եթէ այն ստուգիւ թագաւորէն տրուած ըլլար:

Այս վէճի մասին թագաւորական հնագոյն

որոշումն, որ մեր ձեռքն հասած է, է 1469ին, Նոր-Կիրակիէն ետեւ Բշ. օրն, (11 Ապր.) Թէեւ բնագիրը չկայ, բայց վաւերականութեան վրայ կարծենք չի կրնար տարակուսուիլ: Հայք կը հաստատէին՝ որ իրաւաբանական ամէն խնդրոց մէջ միայն իրենց Վոյթէն կրնան դատուիլ, տօր հակառակ քաղաքին հիւպատոսներն կը հաստատէին՝ թէ Լեմպէրկի Վոյթն Հայոց դատը պիտի վճռէ: Ասոր վրայ թագաւորը սահմանեց, որ Հայոց իրաւաբանական խնդիրներուն մէջ Լեմպէրկի քաղաքային Վոյթն շատ մը հայ Աւագանիներու հետ դատ պիտի ընէ եւ ըստ ամենայնի անոնց կարծեաց եւ համարման համեմատ վճիռը պիտի տայ: Պատժոյ դրամն, եթէ խնդիրը տեղացի Հայոց մէջ է, Հայոց Վոյթին, իսկ եթէ պանդուխտ Հայոց կամ ուրիշ անձանց մէջ է, Լեմպէրկի Վոյթին պիտի վճարուի: Վերջապէս սահմանեցաւ նաեւ, որ ամէն Հայք թէ քաղաքին մէջ եւ թէ դուրսն՝ պարտական են թագաւորական ամէն տուրքերը վճարել, եթէ ըլլան հայ եւ եթէ ուրիշ իրաւանց տակ: Արդէն 1476ին այս կէտն դարձեալ թագաւորին առջեւ հանուեցաւ: Հայք կը տրտնջէին, որ յիշեալ թագաւորական վճռոյն քանի մը որոշումներն չեն կրնար պահուիլ. եւ թագաւորն նոյն տարի Շմաւոն եւ Յուդա առաքելոց տօնէն առաջ ուրբաթ օրը վճիռ մը հանեց, որով հրամայեց առջինն հաստատուն պահել. բաց անկէ որոշեց, որ բռնութեանց եւ արեան խնդրոց մէջ քաղաքին Վոյթը միայն, եւ ոչ Հայերն՝ պիտի դատեն, եւ թէ՝ Վոյթն բաց ի յանցանաց եւ պատժական իրերէն եւ այն դէպքերէն, զորոնք Հայք ինքնին քաղաքին Վոյթին եւ անոր Աւագանւոյն վերաբերեալ կը ճանչնային, Հայու մը վրայ առանց հայ Աւագանւոյն՝ ամենեւին վճիռ մը պիտի չտայ: Եթէ Հայ մ'ամբաստանուի յանցանքի մը համար, խնդիրը քաղաքին Վոյթին պիտի յանձնուի, եւ անիկայ հայ Աւագանւոյն հետ պիտի դատէ եւ

բանտարկէ։ Եթէ այսպիսի Հայու մը դատապարտութիւնն գիշերը վրայ հասնելով արգելուի, այն ատեն Վոյթն նոյնն ամբաստանողին ծախիւքն խիստ հսկողութեան տակ մինչեւ յաջորդ օրը պիտի պահէ, եւ նոյն օրն Հայ Աւագանւոյն հետ պիտի դատէ։ Եթէ Վոյթն ու Հայ Աւագանին չմիաբանելով, խնդիրը թագաւորին որոշման թողուլ հարկ ըլլայ, նոյնը միայն երկակողմանի հաւանութեամբ եւ երկու կողման կնքովը պիտի ըլլայ, եւ թագաւորէն եկած որոշումն երկու կողման ներկայութեամբը պիտի բացուի եւ կարդացուի։ Երդում ընելու մասին՝ պիտի մնայ հին կերպն. բայց ուրիշ քաղաքաց մէջ Հայոց երդման եղանակն պիտի փնտռուի եւ թագաւորին առջեւ պիտի հանուի։ Դարձեալ Հայոց հարկ տալու պարտքը վերստին կը յիշուի, սոյն վճիռը բռնաբարողին դրամական պատիժ կը սպառնացուի, եւ սոյն վճռով կը յայտարարուի՝ որ նախորդ վճիռն պարտաւորիչ ըլլայ երկրին ուրիշ մասանց մէջ, մինչեւ որ թագաւորն առաջին անգամ այց ելլէ[1]։

Բայց այս որոշումն ալ չկրցաւ խաղաղութիւն հաստատել. վասն զի գրեթէ ամէն նախադասութիւն նոր տարակոյսներու եւ անորոշութեանց պատճառ եղաւ։ Քանի որ Գազիմիր Դ թագաւորը կ'ապրէր, սպառնացեալ դրամական պատիժն կրցաւ վիճող կողմնակցութիւնները նոր յարձակումէ ետ կեցընել։ Թերեւս 1486ին այս վճռոյն հաստատուելուն առթիւ՝ Հայոց տրուած գինետուն բանալու իրաւունքն եւ յետոյ մաքսէ ազատ կացուցուին զիրենք աւելի խաղաղեց։ Սակայն արդէն Սիկիզմունտ Ա թագաւորին ժամանակ հին վէճը դարձեալ բորբոքեցաւ, եւ այն՝ յառաջուընէ աւելի սաստկութեամբ, Գազիմիր Դի 1461ին հաստատութեան երկու արտօնութիւններն եւ 1505ին

---

[1] Այս երկու վճիռներն ծանօթ են ինձ միայն Պիելովաքիի օրինակէն։

Աղեքսանդր թագաւորէն մաքսի ազատութեան որոշման թագաւորական հաստատութիւնն ընդունելէն ետեւ: Թագաւորն հրամայեց որ վիճող երկու կողմանք իրենց փաստերովն ու վկայագիրներովն իր եւ խորհրդականացն առջեւ ելլեն. եւ իրերը քննուելէն ետեւ՝ մեծ պահոց երրորդ կիւրակէին նախորդ շաբաթ օրն, 1510ին, Բեդերհոֆի ընդհանուր ժողովոյն մէջ հետեւեալ որոշումը տուաւ: "Որովհետեւ Հայք թուղթ մը կամ արտօնութիւն մը ձեռքերնին չունին, որոնք հայ Վոյթութեան ըստ բաւականի հիմ ունենալը ցուցընեն, ուր ընդ հակառակն փոխ-հիւպատոսք եւ հիւպատոսք բաւական արտօնութիւններ մեր առջեւ դրին, որոնք կը ցուցընեն՝ թէ Լեմպէրկի մէջ քաղաքային իրաւանց Վոյթ մը պէտք է ըլլալ, որ կարենայ իր իրաւաբանութիւնն քաղաքին մէջ որեւէ կրօնի պատկանողաց վրայ՝ գործադրել, անոր համար Լեմպէրկի Հայք այսուհետեւ սեպհական Վոյթ մը պիտի չունենան. այլ յաջորդ որոշմանց համեմատ այն Վոյթին, փոխ-հիւպատին, հիւպատոսաց եւ Աւագանւոյն առջեւ երեւալու եւ պատասխան տալու պարտական են, որոնք քաղաքին գլխաւոր թաղին մէջ քաղաքական դատերու նախագահ են. ի բաց առեալ՝ անշարժական իրաց, բռնաբարութեան, սպանութեան կամ վիրաւորման եւ գողութեան խնդիրներն. այս չորս դիպաց մէջ Հայք եւ անոնցմէ իւրաքանչիւրն վերոյիշեալ անձանց առջեւ Մակտեպուրկեան իրաւանց որոշմանց եւ սովորութեանց համեմատ համար պիտի տան: Ուրիշ ամէն դիպաց մէջ քաղաքին Վոյթին առջեւ պիտի կոչուին. սակայն Վոյթը դատն Հայ ատենի առջեւ պիտի հանէ այնու՝ որ վեց Հայ Աւագանւոյ իրը պիտի իմացընէ եւ զանոնք փոխանակ իւր Աւագանւոյն՝ քովը պիտի առնու: Եւ ինչպէս որ այս Հայ Աւագանին խնդիրն ըստ Հայ իրաւանց կ'որոշէ, նոյնպէս Վոյթը վճիռը պիտի տայ: Բողոքն այն դիպաց մէջ, որոնք գլխաւոր

թաղին առենին մէջ պիտի կատարուին, պիտի ուղղուի այն բարձրագոյն գերմանական իրաւանց, առ որս քաղաքը բողոքել սովոր է. իսկ այն դիպաց մէջ, որոնք ըստ Հայ իրաւանց պիտի որոշուին, միայն Թագաւորին կրնայ բողոքուիլ։ Հանդերձ այսու՝ Վոյթն, փոխ-Հիւպատն եւ քաղաքին Հիւպատոսքն իրաւունք չունին զՀայս իրաւանց եւ արդարութեան հակառակ նեղել եւ ոչ ալ անսովոր պատիժներ պահանջել իրենցմէ, եւ զանոնք իբրեւ քաղաքացի պիտի նկատեն՝ այնպէս ինչպէս կաթողիկէականները։ Իսկ Հայք պարտական են այն ամէն բանի մէջ, որ քաղաքին լաւ վարչութեան կամ պաշտպանութեան կը հայի, ինչպէս նաեւ ինչ որ ուրիշ բնակչաց եւ ի մանաւորի հռովմէական կաթողիկեայց կը հայի, փոխ-Հիւպատոսին եւ Հիւպատոսաց հնազանդիլ։ „

Թէեւ այս վճռով վիճական յարաբերութիւնքն գլխաւոր մասանց մէջ որոշակի որոշուեցաւ, սակայն այնու հնագոյն տարակոյսք չլուծուեցան, մանաւանդ նորեր ալ ծագեցան։ Կ'երեւայ թէ այս վճռով հին վէճն եւ ոչ իսկ կարճ ժամանակի մը համար ընդհատած է. վասն զի արդէն 1513ին Թագաւորն աթիւ մը ստիպեցաւ Հիւպատոսաց հրամայել, որ իրենց եւ Հայոց մէջ միաբանութիւն եւ հանդարտութիւն ըլլայ, առ որ՝ ըստ իւր կարծեաց՝ ըստ բաւականի խնամ տարած է կանխաւ. եւ յաջորդ տարին Հիւպատոսք նոյն իսկ յանդիմանութիւն առին Թագաւորէն, երբ երկու Լեմպէրկցի Հայք, որոնցմէ մին առեւտրական իրաց մէջ, իսկ միւսն իբրեւ Թարգման Թագաւորին ծառայութեան մէջ էր, տրտնջած էին Թագաւորին, որ իրենց կ'արգելուի ջուր առնուլ աղբերէ մը որմէ ի հնուց սովոր էին առնուլ[1]։ Ասկէ քիչ մ'ետքը Թագաւորին ականջն հասաւ՝ որ Հիւպատոսաց եւ

---

[1] Acta Tomiciana, tom III. No. 405, 406.

Հայոց մէջ վէճ կայ, թէ արդեօք գերմանական իրաւանց Վոյթն կրնա՞յ հիւպատոսաց եւ Աւագանւոյն հետ ամէն դիպաց մէջ Լեմպերկի Հայոց վրայ դատաստան ընել եւ դատապարտել: Թագաւորն այն Ցայտարարութեան, մէջ, զոր տուաւ 1518ին Դատաւորաց կիւրակէին նախորդ շաբաթ օրն, (10 Ապրիլ) որ եւ ի գիտութիւն Հայոց՝ 1510ին վճիռն ամբողջ բառ առ բառ կը բովանդակէր, կրկնեց դարձեալ՝ որ նոյն վճռոյն մէջ դրուած չորս դէպքերուն մէջ միայն, զորոնք դարձեալ մի առ մի յառաջ կը բերէ, Հայք քաղաքին Վոյթին, փոխ-հիւպատոսին, հիւպատոսաց եւ Աւագանւոյն առջեւ ամէն ամբաստանող քաղաքացւոյն գերմանական Մակտեպուրկեան իրաւանց համեմատ պատասխանել պարտական են եւ վերյիշելոյ վճռոյն անսալ: Բայց որովհետեւ փոխ-հիւպատոսն եւ հիւպատոսք ամէն դիպաց մէջ ի վնաս հայ իրաւանց եւ սովորութեանց եւ ընդդէմ թագաւորական կարգադրութեանց կը խառնուէին եւ անով Հայերը կը նեղէին, մի անգամ ընդ միշտ հրամայուեցաւ, որ Հայք յիշեալ չորս դէպքերէն զատ՝ ուրիշ ամէն դիպաց մէջ քաղաքին Վոյթին առջեւ հրաւիրուէին. իսկ ասիկայ ամէն այսպիսի դէպքերը հայ ատենին յանձնէ այնու՝ որ Հայոցմէ վեց ծերագոյններ կանչէ, որոնք իրեն Աւագանւոյն տեղ իրեն հետ դատի նստին, եւ ինքն այնուհետեւ անձամբ գլխաւոր թաղի ատեան երթայ, ուր քաղաքին ուրիշ դատերն ալ կը կատարուէին, եւ այն Աւագանւոյն հետ հայ իրաւանց որոշման եւ սովորութեան համեմատ դատէ եւ վճռէ այնպէս, ինչպէս որ յիշեալ վեց Աւագանին իրը կը դատէ: Այսպիսի վճռոյ մը՝ դէմ բողոքն հայ իրաւանց որոշման եւ սովորութեանը համեմատ՝ պիտի ըլլայ ոչ թէ առ բարձրագոյն գերմանական ատեանն, այլ առ ինքն թագաւորն պիտի ուղղուի: Պատժական դրամն, որ հայ ատենին կը վճարուի, Վոյթն վեց Աւագանւոյն հետ,

որ իբրեւ իւր Աւագանին իրեն աթոռակից կ՚ըլլան, այնպէս պիտի բաժնէ, ինչպէս գերմանական ատենին Աւագանւոյն հետ կը բաժնէ։ Որպէս զի փոխ-հիւպատոսն, հիւպատոսք, Վոյթն եւ երդուեալք քաղաքին իրաւանց հակառակ Հայոց խնդիրներուն չխառնուին, սովորական դրամէն 200 մարք տուգանք կը սպառնացուի, որ տէրութեան արկեղ պիտի վճարուի, եթէ այս կարգադրութեան դէմ գործուի։ Բայց Հայք եթէ նեղութիւն կրեն, նախ հիւպատոսները պիտի յորդորեն՝ որ իրենց իրաւունքը չբռնաբարեն. եթէ այս յորդորն ապարդիւն ըլլայ, ամբաստանութիւնը Լեմպէրկի կուսակալին կամ անոր տեղապահին առջեւ պիտի հանուի։ Բայց Հայք ալ յիշեալ պատժոյն կ՚ենթարկուին, եթէ յիշեալ չորս դիպաց մէջ յանձն չառնուն գերմանական ատենին առջեւ պատասխան տալ եւ անոր վճռոյն անսալ։ Դարձեալ կը սահմանուի՝ որ հիւպատոսք արգելք չդնեն թագաւորական տրոց անփոյթ եղողներու եւ Վոյթէն ու վեց Աւագանիէն ըստ Հայ իրաւանց դատապարտելոց բանտարկման։ Միեւնոյն ժամանակ թագաւորն հաստատեց նաեւ Վլատիզլաւ Բի արտօնութիւնն, որ կտակաց եւ հայ Վոյթին մսավաճառանոցին կը հայէր։ Անոր վրայ անմիջապէս վէճ ծագեցաւ, թէ արդեօք Վոյթն հայ Աւագանւոյն հետ քաղաքին Աւագանւոյն աթոռներուն վրայ պիտի վարէ դատը, թէ ուրիշ տեղ մը։ Խնդիրը բաւական կարեւոր երեւցաւ, մինչեւ թագաւորական նոր որոշում մը տրուեցաւ նոյն տարին՝ Պենտեկոստէից չորեքշաբթին, որ կը սահմանէր՝ թէ Վոյթն հայ Աւագանւոյն հետ թէեւ գլխաւոր թաղին ատենին մէջ, բայց ոչ թէ քաղաքին Աւագանւոյն սովորական աթոռներուն վրայ, այլ նոյն ատենի մէջ առ այս սահմանեալ տեղ մը պիտի վարէ դատը։

Անկէ քիչ մ՚ետքը դէպք մը հանդիպեցաւ, որ ստիպեց զթագաւորն նոր եւ ազդու միջոցներ

գործադրել՝ անընդհատ ճարակող կուլիներուն վերջ մը տալու համար։ Հայ մը, Իվաշքօյ Թիխնովիչ անուամբ, քաղաքացի քրիստոնեայ կնոջ մը հետ գործած երկայնօրեայ շնութեան պատճառաւ ամբաստանուեցաւ։ Հիւպատոսաց եւ քաղաքին Աւագանւոյն ատեանը խնդիրն իւր ատեանն առաւ, երկուքն ալ սրբապղծութեան համար մահուան դատապարտեց եւ նոյն պատիժն երկուքին վրայ գործադրեց[1]։ Ասոր վրայ Լեմպէրկի հայ հասարակութիւնը թագաւորին եւ անոր ատեանին առջեւ ամբաստանութիւն հանեց ընդդէմ փոխ-հիւպատոսին, հիւպատոսաց, Վոյթին եւ Աւագանւոյն. եւ թագաւորն իրը քննելէն ետեւ՝ 1518 Օգոստ. 18ին հետեւեալ դատավճիռը տուաւ. "Որովհետեւ Հայոց տրուած արտօնութեան մէջ հիւպատոսաց եւ Աւագանւոյն Հայոց մասին ունեցած իրաւաբանութիւնը միայն հոն յայտնապէս յիշուած չորս դիպաց վրայ կը տարածուի, Իվաշքօյի դէմ գործադրուած ընթացքն ապօրինաւոր կ'երեւայ եւ նոյն արտօնութեան ոճրական բռնաբարութիւն է։ Անոր համար ամբաստանեալք՝ սպառնացեալ 200 մարքի պատժոյն տակ կ'իյնան։ Եւ որովհետեւ նաեւ Հայոց անիրաւութիւն եղաւ, անոր համար Հայոցմէ ամէն մէկուն՝ որ քաղաքին մէջ սեպհական տուն մը եւ սեպհական արուեստ ունի, Մակտեպուրկեան իրաւանց համեմատ 12 շաբաթուան միջոցին մէջ սովորական դրամի 20 կրօշն իբրեւ պատիժ կամ հատուցում տրուի"։ Դարձեալ կը վճռէ թագաւորն, որուն գործն է ըստ Մակտեպուրկեան իրաւանց՝ պաշտաման իշխանութեան զեղծմանց պատիժն որոշել, որ Իվաշքօյի գլխոյն իբրեւ տուգանք, որուն որդին կ'ապրի եւ տուգանք կը պահանջէ, փոխ-հիւպատոսն եւ հիւպատոսք բանտարկուին. որպէս զի թէ՛ ասոնք եւ թէ՛ այլք նշան

[1] Zubrzycki, l. c. 144.

մ'ունենան, թէ ինչպէս պէտք են վարուիլ իրենց պաշտամանց մէջ թագաւորական արտօնութեանց եւ այն անձանց հետ, որոնք իրենց իրաւաբանութենէն ազատ են: Բայց որպէս զի ամէն երկբայութիւն, որ այժմ այն արտօնութեան մէջ կ'երեւայ, ի բաց փարատի, թագաւորն մերձաւոր ընդհանուր ժողովոյ մէջ, իւր խորհրդականաց հետ նոյնին մեկնութիւնը պիտի տայ: Եւ որովհետեւ անոր մէջ որոշուած է նաեւ՝ որ Հայք յիշեալ չորս դէպքերէն զատ՝ ուրիշ ամէն դիպաց մէջ իրենց իրաւանց համեմատ պիտի դատուին, պէտք են այս իրաւունքն ռութեն կամ լատին լեզուաւ՝ գրով նոյն ժողովոյն բերել եւ թագաւորին ներկայացընել: Վերջապէս՝ որովհետեւ երկու կողմանն ալ թագաւորին ներկայանալու ժամանակամիջոց մը պիտի որոշուի, ջերմապէս կը յորդորուին՝ որ իրարու հետ խաղաղութեամբ վարուին:

## 2.

Լեմպէրկի Հայք յամին 1518 Աւետման նախընթաց օրն (24 Մարտ) իրենց դատաստանագիրքն Սիկիզմունտ Ա. թագաւորին ներկայացուցին ի մայրաքաղաքն Կրաքաւ՝ ի հայէ ի լատին թարգմանեալ: Թագաւորն, որ տէրութեան ուրիշ ծանրակշիռ գործոց զբաղած էր, չկրցաւ անմիջապէս նոյնը կարդալ եւ քննել, բայց խոստացաւ նոյնը կատարել ըստ կարի փութով եւ ճշդութեամբ, եւ յորդորեց Լեմպէրկի հիւպատոսներն՝ որ Հայոց հետ խաղաղութեամբ վարուին եւ անոնց իրաւանց բռնաբարութիւն մը չընեն: Հազիւ 1519ին Մարտ 5ին հայ իրաւանց դիտուած եւ խոստացուած ընթերցումն վերջացաւ եւ այս քննեալ իրաւանց թագաւորական հաստատութիւնն ելաւ: Այս առթիւ տրուած վաւերագրոյն մէջ կը ծանուցանէ թագաւորն, որ հայ իրաւանց ի լատին թարգմա-

նութիւնն իրեն կարեւոր երեւցած է, որպէս զի կարող ըլլան հասկընալ զայն քաղաքային Վոյթն եւ անոնք՝ որ Հայոց հետ իրաւաբանական խնդիրներ ունին. վասն զի վերոյիշեալ չորս դէպքերէ զատ՝ Հայոց իրաւաբանական խնդիրներուն մէջ Հայ իրաւանց համեմատ քաղաքային Վոյթն մէկ Հայ Աւագանւոյն հետ պիտի դատէր, եւ այս իրաւանց մասին Հայոց եւ քաղաքին հասարակութեան մէջ վէճեր ծագած էին։ Ներկայացուած իրաւունքը թագաւորն իւր խորհրդականաց հետ հասուն խորհրդով քննելէն եւ քանի մը յօդուածոց մէջ քիչ մը բան փոփոխելէն եւ ուղղելէն ետեւ, որոշեց զայն իւր այս թղթին յարել եւ վերստին հաստատել, այնպէս՝ իբրեւ թէ մինչեւ ցայժմ ի գործածութեան ըլլար. այսինքն՝ երբ Հայ մը իբրեւ ամբաստանող ներկայանայ՝ կը պարտաւորի ամբաստանելոյն ատեանն երթալ. իսկ եթէ Հայ մ'ամբաստանուի՝ քաղաքային Վոյթն Հայ Աւագանւոյն հետ Հայ իրաւանց համեմատ պիտի դատէ, ի բաց առեալ այն չորս դէպքերն, որոնց մէջ Հայք նաեւ իբրեւ ամբաստանեալ Մակտեպուրկեան քաղաքային իրաւանց ենթարկեալ են։

Բուն Հայ իրաւունքն թագաւորական հաստատութեան խօսքերուն մէջտեղը տեղաւորուած է, եւ ունի տասն անթուագրեալ եւ անվերնագիր գլուխներ, որոնք Հայ թագաւորաց եւ իշխանաց (Յովհաննէս, Թէոդ. եւն.) կը տրուին, եւ Կիրակին տօնելու, արդարութեան գործադրութեան, հաշտեցընելու փորձի, ամբաստանելոյն ինքզինք արդարացընելու համար երդում ընելու իրաւանց, վկայից ցուցման, կտակի, հարսնախօսութեան, օժտի, առնակնոջ եւ տղոց ժառանգելու իրաւանց վրայ են։ Ունի դարձեալ 124 թուագրեալ եւ մեծաւ մասամբ վերնագրով գլուխներ, որոնցմէ եւ ոչ մին շատ երկայն է, այլ շատերն շատ կարճ են։ Անոնց մեծ մասն առանձնական եւ պատժական

իրաւանց կը հայի, եւ առաջիններէն ի մասնաւորի պահանջելու իրաւանց վերաբերեալք համեմատաբար շատ են: Կան նաեւ դատաստանական ընթացքին եւ ոստիկանական կանոններու որոշումներ: Բայց վարչութեան եւ հպատակաց մասին՝ միայն քանի մը յիշատակութիւնք կան: Ամբողջ իրաւանց մէկ մեծ մասն Հին եւ Նոր Կտակարանէն, Առաքելոց եւ Ս. Հարց խօսքերէն եւ Աւետարանէն առնուած է. մէկ մասն յեցած է ազգային կենաց յարաբերութեանց եւ սեպհական ըմբռնման վրայ. մէկ մասը կը ցուցընէ նշանաւոր միաբանութիւն մը օտար՝ եւ՝ ի մասնաւորի գերմանական իրաւանց յօդուածներու հետ: Ամբողջին շարակարգութեան մէջ ծրագիր մը չկայ. միայն յաջորդող յուրաքանչիւր գլուխներու մէջ երբեմն կապակցութիւն մը կ'երեւայ. իսկ խմբագրողին վրայ գիտնական եւ իրաւագիտական կրթութիւն մը չ'երեւար: Սակայն ամբողջին մէջ կայ յատուկ հոգի մը, որ այս իրաւաբանական յիշատակարանին յատուկ կարեւորութիւն մը կու տայ. եւ բարեբախտաբար թէեւ Սիկիզմունտ Ա փոփոխութիւն ըրած է, անարատ է մնացած. վասն զի այս փոփոխութիւնք իբր յաւելուած՝ իւրաքանչիւր որոշման տակ դրուած են, առանց անոր ամբողջութեան վնասելու: Այս կարեւոր փոփոխութիւնք կռուան մը կ'ըլլան որոշելու այն ժամանակն, երբ դատաստանագիրքն յօրինուած է. այնու՝ որ անով անտարակուսելի եղանակաւ կը տեսնուի, որ սոյն իրաւաբանական յիշատակարանին խմբագրութիւնն յառաջ է քան զվերոյիշեալ վճիռ Լեհաց թագաւորին, որով Հայոց սեպհական իրաւաբանութիւնը կը սահմանաւորի: Բայց թէ այս վճռէն որչափ յառաջ խմբագրուած դնելու է, կարելի չէ ճշդիւ որոշել: Թուագրեալ 124 գլուխներն ներկայ վիճակին մէջ ստուգիւ Հայոց Լեհաստան (կամ Ռուսաստան) գաղթելէն ետեւ գրուած են: Զայս կը ցուցընեն ի մասնաւորի

ոչ սակաւ սլաւական բառերն, որոնք — Ազգաց իրաւանց մէջ մնած գերմաներէն բառերուն պէս, — բնագրին մէջ գրուած են լատիներէն բառերն հասկցընելու համար եւ հայ առմամբ գործածուած են. նոյնպէս կան մէջը յիշատակութիւնք՝ որ կը ցուցընեն երկրին վարչական իշխանութեան եւ իրաւաբանութեան հետ Հայոց յարաբերութիւնները։ Նաեւ գերմանական իրաւանց հետ միաբանիլն, ինչպէս յիշեցինք, կը զօրացընէ այս ենթադրութիւնը։ Յառաջընթաց 10 անթուագրեալ գլուխներն ալ իրենց արդի վիճակը շատ յառաջագոյն առած չեն, թէեւ ըստ բովանդակութեան շատ հնագոյն ժամանակներու[1] կարենան հանուիլ[2]։

Սոյն իրաւաբանական յիշատակարանն յինքեան՝ խմբագրութեան ինչպէս նաեւ իւր խմբագրին եւ խմբագրութեան եղանակին վրայ յիշատակութիւն մը չունի։ Այսչափ միայն կ'երեւայ, որ միայն առանձնականի մը գործը չէ։ Քանի մը բացատրութիւնք, զոր կը գործածեն խմբագիրք, օրէնսդիր իշխանութեան եղանակ մը կը ցուցընեն։ Այսպէս օրինակ՝ տեղ մը կ'ըսուի. “Ըստ իրաւանց կը հրամայենք ձեզի.„ ուրիշ տեղ մը՝ “Զոր եւ ոչ մենք այսպէս պահել սահմանեցինք„։ Բայց թէ ո՛վ է այս իշխանութիւնը գործադրողը՝ չի կրնար որոշ ըսուիլ։ Շատ հաւանական է, որ քահանայք գէթ արտաքոյ կարգի մեծ ազդեցութիւն մ'ունեցած են ի խմբագրութեան։

[1] Ըստ Մինասայ մինչեւ 1020 տարին, Ritter, X, 598.

[2] Վահան Ծ. Վ. Բաստամեանց Մխիթար Գօշի Դատաստանագիրք Հայոց (1880, Էջմիածին,) հրատարակութեան մէջ (Յուշընութ. էջ 28) կը դնէ Լեհահայոց եւ Մխիթարայ դատաստանագրերուն համեմատութեան հետեւութիւնը, որմէ կը տեսնուի, թէ Լեհահայք իրենց դատաստանագիրքը քաղած են լոկ Մխիթար Գօշի դատաստանագրքէն եւ իրենց յարաբերութիւններուն յարմարեցուցած։ Ուստի, ինչպէս թուագրեալ 124 գլուխներն, նոյնպէս անթուագիր 10 գլուխները չեն հնագոյն քան զդատաստանագիրքն Մխիթարայ, որ գրեց 1184 եւ 1213 տարիներու միջոցին մէջ։ Ծ. Թ.

Թէեւ ըստ ինքեան այս իրաւունքը Լեմպերկի Հայոց սահմանեալ էր, բայց չկայ պատճառ մը ենթադրելու՝ որ միայն Լեմպէրկի Հայոց համար պարտաւորիչ ըլլայ։ Քանի մը որոշմունք աւելի հակառակն ենթադրել կու տան, այնու՝ որ կ'ենթադրեն տեղական յարաբերութիւններ, որոնք Լեմպէրկի մէջ երբեք չէին կրնար հանդիպիլ։ Այսպիսի են, զոր օր. նաւաբեկութեան եւ այգեստաններու մասին որոշումներն։ Թէ առաջին տասն գլուխները միայն Լեմպէրկի Հայոց համար չեն՝ այս մասին ըսածնէս ինքնին յայտնի է։ Եւ որովհետեւ Լեմպէրկի հայ հասարակութիւնք բովանդակ Լեհաստանի եւ Կարմիր Ռուսիոյ մէջ ամենէն նշանաւորն էր, կրնայ ենթադրուիլ՝ որ գեղերու միւս հայ հասարակութեանց մէջ ալ նոյն իրաւաբանական յիշատակարանը ճոխութիւն ունէր։ Այս հասարակութիւններէն մէկուն մասին, այն է արուարձանի մէջ Ս. Յովհաննէս եկեղեցւոյն կալուածներու վրայ գաղթողներու մասին, կայ վաւերագիր մը, որ կը ցուցընէ՝ թէ Լեմպէրկի Հայոց իրաւունքն իրենց համար ալ կ'արժէր։ Այս նշանաւոր վաւերագրոյն մէջ՝ Վլատիսլաւ Բ 1415ին յիշեալ կալուածներու մէջ բնակող Հայերն Ռութեններու իրաւունքէն հանելով՝ Լեմպէրկի Հայոց իրաւանց կ'անցընէ, կու տայ իրենց ազատութիւն պաշտօնական անձանց թագաւորական իրաւաբանութենէն եւ իշխանութենէն. այնպէս որ միայն իրենց Վոյթին առջեւ ներկայանալու կը պարտաւորին. իսկ Վոյթն միայն Ս. Յովհաննու եկեղեցւոյն այն ժամանակի ռոճկապետին կամ թագաւորին առջեւ ներկայանայ; եթէ թագաւորն թագաւորական թղթով մը զինք կանչէ։ Բայց այն ատեն ալ անիկայ միայն յիշեալ հայ իրաւանց համեմատ պատասխանատու է։ Ամէն յանցանաց եւ դրամական իրաց նկատմամբ՝ այն երկիրներու մէջ լիուլի իշխանութիւն ունենայ Հայ Վոյթն Լեմպէրկի Հայոց

իրաւանց որոշման համեմատ դատելու եւ որոշելու, ուղղելու եւ պատժելու։ — Սակայն առանց մեծ ծանրակշռութիւն դնելու այս վաւերագրին վրայ, որուն միայն 1519ին ընդօրինակութիւնը կայ թագաւորական դիւանին մէջ, եւ որչափ կ'երեւայ՝ ոչ անկասկածելի վաւերագիր է, յիշեալ ենթադրութիւնը զօրացնելու համար կրնանք մտադիր ըլլալ նաեւ այն պարագային՝ որ Հայ դատաստանագրոյն ցայսօր գտնուած ձեռագիրներուն թիւն նոյնին մեծագոյն տարածումը կրնայ ենթադրել տալ[1]։

Այս դատաստանագրոյն լատին եւ լեհ ձեռագիրքն կան ցայսօր, որոնցմէ առաջինք — ինչպէս կ'երեւայ, — աւելի հաղուագիւտ եւ հնագոյն են քան վերջինք։ Լատին ձեռագիր ցայժմ երկու հատ միայն գիտեմ։ Մէկը որ 26 (կամ 13 կիսածալ) թերթ մագաղաթ է թուխ կաշւով կազմուած, ամբողջլայնութեան գրուած, լայն լուսանցքով, եւ կը գտնուի հոս (Լեմպէրկ) քաղաքային դիւանին մէջ։ Կը կրէ Լեհաստանի թագաւորութեան փոխատենապետին՝ Բշէմիշլի Պետրոս եպիսկոպոսին ստորագրութիւնն. ուստի վաւերական օրինակ է։ Թէեւ այժմ վրան կնիք մը չկայ, բայց ինչպէս կ'երեւայ՝ կար ատեն մը։ Միւսը կը գտնուի կայսրկն.-թգրկն. Համալսարանի գրատունն։ Ասիկայ մա-

---

[1] Լեմպէրկի Օսսոլինսկի մատենադարանին (Bibliot. Ossolińskich) մէջ տեսած եմ մեծահատոր (1032 էջ) ձեռագիր մը՝ № 1590, այս վերնագրով. Akta Sądu stanisławowskiego ormiańskiego z lat 1692-1702, z notatkami po brzegach pismem ormiańskiém. (Սդանիսլաւի Հայ դատարանին արձանագիրները 1692—1702, հայագիր ծանօթութիւններով լուսանցքի վրայ։) Ասիկայ Սդանիսլաւ քաղաքին (140 քիլոմ. Լեմպէրկէ հեռու) Հայ ատենին 1692—1702 ըրած դատաստաններու արձանագիրն է լեհերէն լեզուաւ։ Բնական է որ՝ այս ատեանն ալ թագաւորէն վաւերացեալ դատաստանագիրքը միայն կարող էր գործածել։ Մտադրութեան արժանի է՝ որ այս արձանագրին մէջ Հայ ատեանը կը կազմեն՝ Վոյթ մը եւ հինգ դատաւոր, եւ երբեմն երէց։ Ծ. Թ.

պաղաթապատ է, ունի 42 թուագրեալ մագաղաթեայ փոքրիկ քառածալ թերթեր, եւ նոյնպէս ամբողջ լայնութեան գրուած է։ Առաջին էջն յառաջորդ լատիններէն տիտղոսն ունի. Statuta juris Armenici per Sigismundum primum Regem Polonie pietissimum approbata et confirmata iussuque ac mandato eiusdem Regiae Majestatis ex lingua illorum nativa in latinum sermonem translata et hic fideliter ex exemplari descripta. (Դատաստանագիրք Հայ իրաւանց քննեալ եւ հաստատեալ Սիկիզմունտ Ա բարեպաշտ թագաւորէն Լեհաց եւ նորին թագաւորական Մեծվայելչութեան հրամանաւն եւ կամօք իրենց լեզուէն ի լատին թարգմանեալ եւ հաւատարմութեամբ օրինակէն ընդօրինակեալ։) Ասիկայ առաջնոյն հետ այնպէս ճշդիւ կը միաբանի, որ շատ հաւանական է, թէ անկէ ընդօրինակուած ըլլայ, միայն ասոր մէջ անոր քանի մը յայտնի տառասխալներն ուղղուած են։ Առաջին եւ երրորդ թերթին վրայ նշանակուած սա խօսքն՝ Convent Leopol. Carmelit. discalceat. (Վանատուն բոկոտն Կարմեղականաց Լեմպէրկի,) կը ցուցընէ ձեռագրին նախկին տէրը։ Այս ձեռագիրն առաջնէն շատ ետքը գրուած չէ։ Այս երկուքէն զատ՝ ուրիշ լատին ձեռագիր ինծի ծանօթ չէ եւ ոչ տեղ մը[1]։

Սիկիզմունտ Ա 1518ի վերոյիշեալ դատավճռոյն մէջ Հայոց ազատ թողած էր հայ իրաւանց լատին կամ ռութեն թարգմանութիւն մը իրեն ներկայացընել։ Ռութեններէն թարգմանութիւնք՝ որ կը գտնուին, լատին բնագրէն թարգմանուած են եւ ոչ հայ բնագրէն, որուն գոյութեան վրայ ամենեւին ծանօթութիւն չունիմ։ Ինչպէս ինծի ըսին, Գալիցիոյ տէրութեան Տաճկական դեսպանին

[1] Կայ 3դ օրինակ մը Վիեննայի Մխիթարեանց մատենադարանը։ Տես Խնճիճեան, Հնախօսութիւն, Հատ. Բ էջ 305։ Ծ. Թ.

Հարցուցած է տեղւոյս Հայ Արքեպիսկոպոսին, թէ հին Հայ իրաւանց ձեռագիր մը կը գտնուի՞. եւ անիկայ ժխտական պատասխան տուեր է, որ անշուշտ դատաստանագրոյն Հայ բնագրին գոյութեան նկատմամբ է[1]: Լեհերէն ձեռագրէն մինչեւ

---

[1] Թէ այս դատաստանագիրն Հայերէն բնագիր մ'ունէր, չի կրնար տարակուսուիլ. վասն զի ստոյգ գիտենք որ 1350էն ի վեր Հայ ատեանը գոյութիւն ունէր ի Լեհաստան, եւ այս ատեանն ունէր բնականապէս իւր օրինաց մատեանը: Անիկայ կրնար միայն Հայերէն ըլլալ. վասն զի այնչափ վերջերը եւս՝ Հազիւ Սիկիզմունտ Ա 1518ին կը պահանջէ Հայոցմէ, որ իրենց դատաստանագիրքը լատիներէն կամ ռութէներէն լեզուի թարգմանեն, որպէս զի թագաւորն եւ պաշտօնատարքը նոյնը հասկընան եւ Հայոց իրաւունքները չբռնաբարելու մտադիր ըլլան: Թող որ 1500էն յառաջ արձանագրուած Հայ դատերն Հայերէն են, որ կ'ենթադրէ նաեւ Հայերէն դատաստանագիրք: Բայց ինչպիսի՞ էր այս Հայ բնագիրն: Երկու դէպք միայն կրնանք ենթադրել՝ լատին թարգմանութիւնն այսօրս ձեռքերնիս ունենալէն ետեւ. այսինքն կամ Մխիթ. Գոշի դատաստանագիրքն էր Լեհահայոցը, որմէ յետոյ թագաւորին պահանջմանէն ստիպեալ՝ անկէ հաւաքելով. եւ յարմարեցընելով լատին թարգմանութիւն մը ներկայացուցին թագաւորին. եւ կամ արդէն ի վաղուց ունէին Գոշի դատաստանագրքէն հաւաքածոյ նոր խմբագրութիւն մը, որ Կամենիցի. Ստանիսլաւի եւ Լեմպերկի Հայ ատեաններու մէջ ի գործածութեան էր մինչեւ 1519: Վերջինն ինծի հաւանական չ'երեւար, քանի որ ցայսօր չէ գտնուած այսպիսի Հայ բնագիր մը, եւ չկայ տեղ մ'այս մասին յիշատակութիւն, եթէ ի բաց առնուս Պիշոֆի լատին հրատարակութեան յառաջաբանին մէջ տրուած վերիվերոյ տեղեկութիւնը՝ թէ "Շքեղ զարդարուած եւ նոյն իսկ Սիկիզմունտ թագաւորէն պատրաստուած բնագիրը Հայերէն եւ լատիներէն լեզուաւ կը գտնուի Տիտոս Ճալինսկի կոմսին քով, ինչպէս կը հաղորդէ ինձ Վինկենտիոս Բօլ Հռչակաւոր բանաստեղծը," զոր յառաջ կը բերեն Բասատմեանց (Յուշքն. էջ 26) եւ Եզեան (Բռնի միութիւն, Ս. Պետերբուրգ 1884, Յուշքն. էջ ԺԸ. ծան.): Սակայն "մեծահռչակ բանաստեղծին" տուած այս տեղեկութիւնը կ'երեւայ թէ հիմ չունի. վասն զի այսօրս չկայ ձյս մատեանը նոյն իշխանին մատենադարանին: Ես նամակաւ դիմեցի հանգուցեալ Տիտոս Ճալինսկի կոմսին այրուոյն՝ իշխանուհի Չարդորիսկիին ի Քռոնիքա (Բրուսիական Լեհաստան) եւ իշխանուհւոյն գրագետն գրեց ինձ, թէ Ճալինսկի իշխանին Քռոնիքայի գրատան մէջ այսպիսի մատեան չկայ, եւ թէ կարելի է որ իշխանուհւոյն Բարիզ ունեցած գրատունն ըլլայ, ուր կը բնակի ինքն այժմ: Բարիզէն նամակիս պատասխանն այն եղաւ՝ որ այս մատեանն չի գտնուիր հոն, եւ կարելի է Չարդորիսկի իշխանին, որուն

ցայժմ նոյնպէս մէկ հատ միայն ի մերձուստ ծանօթ է ինձ. բայց սոր տէրն, ֆոն Պիէլովսքի, որ նոյնն ազնուաբար ինծի գործածելու յանձնած էր, ծանոյց՝ թէ ուրիշ տասը նոյնպիսի ձեռագիր ի Գալիցիա եւ ի Ռուսական Լեհաստան տեսած է։ Այբուբենական կարգաւ թարգմանութիւն մը կը գտնուի քաղաքային դիւանին ցուցակին մէջ, բայց ես ցայժմ վայրապար փնտռեցի։ Պիելովսքիի շատ մաքուր պահուած թղթեայ օրինակն՝ բաց ի Հայ դատաստանագրքի թարգմանութենէն, որ 1601ին Հայ Աւագանւոյն հրամանաւ եղած է, ունի նաեւ ուրիշ շատ կարեւոր աղբիւրներ Հայ իրաւանց։ Այսպէս 10դ թղթին վրայ կայ Վոյթին Հայ ատենին ցուցընելու խնամոց եղանակին վրայ գրութիւն մը. դարձեալ՝ գրեթէ 20 թուղթ 1604ին տրուած եւ բնագրէն թարգմանուած որոշմունք Հայ իրաւանց դատաստանի եղանակին եւ գործադրութեան մասին, որոնք ինծի բոլորովին անծանօթ էին։ Նոյնպէս գրեթէ 30 հատ լատիներէնէ թարգմանուած թագաւորական արտօնութիւններ եւ վճիռներ Լեմպերկի Հայոց համար 1356էն — 1672 որոնցմէ ոմանք կ'երեւայ թէ քաղաքային դիւանին մէջ չկան։ Վերջին (137դ) թղթին վրայ վերջապէս կայ Թէոդորոս Դքսին 1062ին Հայոց տուած արտօնագրին լատին թարգմանութիւնն այս վերնագրով՝ ծանօթութեամբք յետնագոյն ձեռագրի մը[1]։

---

տնէն է իշխանուհին, Քրաքաւի մեծ մատենադարանին մէջ ըլլայ։ Ես, որ նոյն մատենադարանն * անձամբ հետազօտած էի, գրեցի Քրաքաւի մատենադարանապետին, որ նոյն ժխտական պատասխանը տուաւ, աւելցընելով՝ որ եթէ ըլլար՝ շատ դիւրին էր գտնելը, քանի որ մատենադարանն ունի բոլորովին նոր եւ կանոնաւոր ցուցակ։ Ուրեմն, ինչպէս չկայ այսպիսի Հայ դատաստանագրքի ընդօրինակութեան մը հետքը, չկայ նաեւ բնագիրն։ Ծ. Թ.

[1] Անշուշտ նոյն կամ շատ նման օրինակ էր իմ տեսածս ի Լեմպերկ Հայ Արքեպիսկոպոսին քով. որ նոյնպէս միածալ ամուր թղթի վրայ գրուած էր լեհերէն, եւ տակը թագաւորական արտօնագրերու լեհերէն թարգմանութիւնը կար։ Լեհերէն թարգմանութիւնն արդէն 1869ին հրատա-

Privilegium a Theodoro Duce Russiae Demetrij filio Armenis anno 1062 datum in archivo judicum Leopol. Armenorum in originale reperibile, in metrica Regni Poloniae ex Ruthenico idiomate in latinum transpositum et oblatum. Այս օրինակն չի կրնար ԺԵ դարու վերջէն շատ յառաջ լմնցած ըլլալ[1]:

Որչափ ալ յարմար ըլլան Սիկիզմունտ Թագաւորին գործադրած միջոցներն՝ Հայոց եւ քաղաքին հասարակութեան մէջ եղած մշտատեւ կռիւներուն վերջ տալու, սակայն չկրցան բնաւ՝ նոյն արդիւնքն յառաջ բերել։ Թէեւ անով Հայոց իրաւագիտական դիրքն շատ կողմանէ ճշդագոյն որոշուեցաւ եւ կռիւներու շատ առիթներ հայ իրաւանց թարգմանութեամբն եւ թագաւորական քննութեամբ եւ հաստատութեամբ բարձաւ, սակայն միւս կողմանէ՝ այնու իսկ նոր կռիւներու եւ վէճերու դուռ բացուեցաւ։ Այսպէս, Հայք այնուհետեւ յանձն չէին առնուր որ իրենց դատաստանին մէջ Ոչ-Հայն վկայ ըլլայ, եւ իրենց այս ընդդիմութեան իբրեւ հիմ՝ թագաւորէն նոր հաստատուած իրաւանց որոշումներն յառաջ կը բերէին։ Անոր համար 1521ին հրամայեց թագաւորն՝ որ այն դիպաց մէջ, որ Հայու եւ Ոչ-Հայու մէջ է խնդիրն, նաեւ Ոչ-Հայն հայ ատենին մէջ կարենայ վկայ ըլլալ։ Բայց աս ալ վէճը չվերջացաւ. մանաւանդ թէ Հայոց նոր առաջարկութիւններուն

րակած է Սադոկի Պարոնչ, հայ Դոմինիկեան մեծանուն կրօնաւորն իւր Rys Dziejów Ormiańskich (Tarnopol, 1869) հմտալից երկասիրութեան մէջ (էջ 205—261)։ Անոր մէջ թուագրեալ գլուխներն 125 են. վասն զի լատիներէն բնագրին 122դ գլխոյն վերջին մասն անջատած եւ 123 դրած է իւր լեհերէն օրինակին համեմատ։ Ինքն ալ իւր առջեւ ունեցած է երկու օրինակ լեհերէն թարգմանութեան։ Այս ծանօթութեամբ կը լրանայ Բաստամեանցի Յաւելնին 21դ. ծանօթութիւնն (էջ 27), որ հեղինակին տարաժամ մահուամբը կիսատ է մնացած։ Ծ. Թ.

[1] Տես այս արտօնութեան վրայ Bibl. naukow. zakład. Ossol. I. 70.

եւ պահանջումներուն աւելի սաստկացաւ, ինչպէս յայտնի է Սիկիզմունտ Աի 1523 Մարտ 11ին տուած մէկ վճռէն, որով կը սահմանուի թէ կաթողիկեայ եւ ռութեն վկայք հայ ատենին մէջ թոյլ պիտի տրուին, եւ թէ նաեւ Հայք քաղաքային ատենի մէջ կրնան վկայ ըլլալ, որ վկայութիւնն վերոյիշեալոց վկայութեան հաւասար զօրութիւն պիտի ունենայ, եթէ միայն վստահելի անձինք են վկայք։ Նաեւ հայ ատենի կոչուած վկայք՝ եթէ հակառակորդն ուզէ, պարտական են երդում ընել, եթէ Մակտեպուրկեան իրաւունքն այնպէս պահանջէ։ Այն խնդրոյն նկատմամբ՝ թէ ո՛ր ատենին մէջ հայ տներու վաճառումը պիտի կատարուի, կը սահմանուի՝ որ այն միայն քաղաքային ատենին մէջ կատարուի, ինչպէս նաեւ Հայոց անշարժական իրեր ժառանգելու խնդիրներն, եւ նոյներն քաղաքային ատենին դիւանագրոյն մէջ անցուի։ Հայոց անշարժական ստացուածոց տէրութիւնն ուրիշին անցընելը պիտի կատարուի քաղաքին Վոյթին եւ երկու հայ Աւագանւոյն ձեռօք, որոնք այնուհետեւ իրն հիւպատոսաց պիտի ծանուցանեն եւ քաղաքին ատենական դիւանին մէջ նշանակել պիտի տան։ Ուրիշ որոշում մը իշխանութիւն կու տայ ատենի առջեւ ներկայացուցիչ դնելու՝ որ լիուլի իշխանութիւն ունենայ. բայց ասիկայ վճարեալ փաստաբան պիտի չըլլայ։ Նաեւ ճշդիւ որոշուեցաւ այն խնդիրն, որուն վրայ ստէպ վէճ կ'ըլլար, այսինքն՝ թէ ամէն յանցանաց իրեր, ինչպէս բռնաբարութիւնք եւ ամենայն ինչ՝ որ կենաց, պատուոյ եւ բարի անուան յափշտակութեան կը հայի, եւ ամէն ամբաստանութիւն՝ որ նոյն պատճառաւ իբրեւ յանցանք կը դատուի, քաղաքային ատենին կը վերաբերի։ Բաց ասկէ՝ այս վճիռն կ'որոշէ, որ բանտարկուին այն Հայերն, որոնք գիշերները կռիւ կ'ընեն, եւ այս պատճառաւ վճարելի դրամական պատիժը կը սահմանէ։ Դարձեալ՝ կ'որոշէ Հայոց

այն իրաւունքը, զոր ունին իրենց ծառայքը քաղաքին բանտին մէջ դնելու եւ ըստ արժանւոյն պատժելու, ի բաց առեալ գլխաւոր յանցանքներն՝ որոնք քաղաքին ատեանին վերապահուած են։ Վերջապէս կը սահմանէ՝ թէ ինչպէս պատժելու է այն Հայերն, որոնք փոխ-հիւպատոսները կամ Վոյթը կը նախատեն. այս դատին հայ Աւագանին ալ պիտի կանչուի։

Սակայն կռիւը չվերջացաւ, մանաւանդ թէ հետզհետէ աւելի ճարակեցաւ. այնպէս որ գրեթէ շատ ժամանակ չանցաւ, Հայք դարձեալ թագաւորին առջեւ ամբաստանութեան եւ տրտնջմանց կոյտ մը հանեցին։ Խնդիրը մեծաւ մասամբ երկայն ատեն վիճուած եւ յաճախ որոշուած իրաց վրայ էր, եւ յաճախ նոյն իրաց վրայ տրուած թագաւորական վճիռք եւ արտօնութիւնք իրենց թէեւ ակամայ անմիաբանութեամբն՝ վիճող կողմանց կռուասիրութեան նոր առիթ կու տային՝ երկու կողման ալ պահանջումներն արժեցընելու։ Հայք կը տրտնջէին՝ թէ քաղաքին հիւպատոսներն ապօրինաւոր կերպով իրենց իրաւաբանութեան կը խառնուին, առանց գիտութեան եւ հաւանութեան Աւագանւոյն՝ Հայեր կը բանտարկեն, եւ նոյն իսկ հայ երդուեալ մը բռնութեամբ ձերբակալած են, եւ չեն թողուր որ ոստիկաններն եւ քաղաքին բանտն իրենք ալ գործածեն. եւ բաց աստի՝ անձնական իրաց եւ վիրաւորման մասին իրենց իրաւաբանութեան գործադրութիւնը կը բռնաբարեն եւ կ'արգելուն. չեն թողուր քաղաքին մէջ եւ արուարձաններն ունեցած անշարժական իրերը ծախել. թոյլ չեն տար՝ որ Հայք ժողովք ընեն. կ'արգելուն յատենի աթոռ ունեցող վեց Աւագանիէն զատ՝ ուրիշ վեց ալ ընտրելու. ապրանքով բեռնաւորեալ կառք մը առանց պատճառի կը բռնեն կը կեցընեն. եւ վերջապէս՝ թէ քաղաքային վարչութեան իշխանութիւնն անչափս կ'ընդարձակեն, եւ այս պատճառաւ

ձերբակալումներ կ'ընեն, կ'արգելուն օտար երկիրներ երթալ մոմի եւ արջառի առուտուր ընելու։

Թագաւորն իբր քննելէն ետեւ՝ 1563ին Յունուար 19ին Բեթլերհոֆի ընդհանուր ժողովոյն մէջ սահմանեց յէականս այսպէս. Այն ամէն իրաւաբանական խնդիրներն, որոնք Հայոց քաղաքին մէջ կամ յարուարձանեայս ունեցած անշարժական իրաց կը հային, երբ ատոնք քաղաքին իրաւաբանութեան տակ են, ոչ թէ Հայ Աւագանւոյն ձեռօք, այլ փոխ-հիւպատոսին, հիւպատոսաց, Վոյթին եւ քաղաքին Աւագանւոյն ձեռօք պիտի դատուին. եւ այս այնպէս՝ որ եթէ խնդիրն Հայու եւ Ոչ-հայու մէջ է, ըստ Մակտեպուրկեան իրաւանց, իսկ եթէ Հայու եւ Հայու մէջ է, ըստ Հայկական իրաւանց դատուի. վասն զի Հայ իրաւանց ժառանգելու կարգն Մակտեպուրկեաններէն կը տարբերի։ Հաստատուն ժառանգական ստացուածքներն կրնան Հայք իրենց իրաւանց համեմատ բաժնել. իսկ ստացուածքի տէրութիւնն ուրիշին անցընելը՝ նախորդ վճռոյն համեմատ՝ Վոյթին եւ երկու Հայ Աւագանւոյ ձեռօք պիտի ըլլայ, որ եւ քաղաքային ատեանին առջեւ անմիջապէս պիտի հաստատուի։ Նոյն վճռոյն համեմատ՝ անշարժական իրաց մէջ իրաւունք մ'ուրիշին անցընելն; ուրիշի մ'իրաւունքն ստանալն եւ ստացուածոց բաժանման հաստատութիւնը քաղաքային ատեանին առջեւ պիտի ըլլան։ Նոյնպէս ամէն բռնաբարութիւնք, սպանութիւնք եւ գողութիւնք այս ատեանին առջեւ պիտի ելլեն, ինչպէս նաեւ այն ամէն դէպքերն՝ որոնք Հայոց կենաց, պատուոյն եւ բարի անուան յափշտակութեան կը հային։ Իսկ վիրաւորումը փոխ-հիւպատոսն, հիւպատոսք եւ քաղաքին Վոյթն եւ Աւագանին ըստ Մակտեպուրկեան իրաւանց պիտի դատեն, եթէ նոյնին ամբաստանութիւնն իբրեւ յանցանաց իր ներկայացուի։ Եթէ վիրաւորման ամբաստանութիւնն իբր քաղաքական

ամբաստանութիւն նկատուի, այն ատեն Հայք եւ իւրաքանչիւր ի նոցանէ ազատ են իրենք զիրենք Հիւպատոսաց եւ Աւագանւոյ ատենէն ազատ կացուցանելու, եւ Վոյթին ու Հայ Աւագանւոյ ատենին ներկայանալու։ Քաղաքին վարչութեան մասին կ'որոշուի, որ Հայք այն ամէն իրաց մէջ՝ զոր քաղաքին բարեկարգութիւնը կը պահանջէ եւ որ քաղաքին պաշտպանութեան կը հայի, փոխհիւպատոսաց պիտի հնազանդին, որոնք թշնամւոյ կամ պատերազմի վտանգի ժամանակ լիուլի եւ անկոպար իշխանութիւն ունին քաղաքին վարչութեան մէջ, եւ իրենց կարգադրութեանց հակառակ գործող իւրաքանչիւր Հայն ըստ կամի կրնան պատուհասել։ Ոստիկանական կարգաւորութեան մասին, ինչպէս՝ այն ամէն իրաց մէջ, որ հրդեհի վտանգի, ժանտախտի, ուտելեաց եւ քաղաքին զարդուն ու օգտին կը հայի, Հայք կը պարտաւորին կատարել, ինչ որ հիւպատոսք քաղաքին հասարակութեան եւ Հայոց հետ կը սահմանեն. ապա թէ ոչ՝ սպառնացեալ բանտարգելութեան պատիժը կ'առնուն։ Բայց ազատ են Հայք հիւպատոսական ատենէն իրենք զիրենք ազատ կացուցանելու, եթէ խնդիրն, որուն համար այս ատենին առջեւ հանուեցան ասոր իշխանութենէն դուրս է։ Այս վճռոյն մէջ դարձեալ կը ծանուցուի, որ Հայք բաց ի վերոյիշեալ չորս կէտերէ, ուրիշ ամէն ամբաստանութեանց եւ դիպաց մէջ քաղաքին Վոյթին եւ Հայ Աւագանւոյն առջեւ հայ իրաւանց որոշման համեմատ պիտի դատուին։ Հայ երդուելոց ձերբակալութիւնը կը յանդիմանուի եւ հիւպատոսաց աւելի զգուշութիւն կը յանձնարարուի, ձերբակալութիւն մ'ընել տալէն յառաջ։ Այն կարեւոր խնդրոյ մասին, թէ Հայք քանի՞ տուն կրնան ունենալ, կը ծանուցուի՝ թէ կրնան այնչափ ստանալ, որչափ այժմ ունին, եւ կրնան այս թիւն աճեցընել, եթէ կրնան ցուցընել՝ որ յառաջագոյն

աւելի ստանալ իրենց շնորհեալ էր։ Նաեւ իրենց սովորական ժողովներն թոյլ կը տրուի իրենց․ վասն զի հաւատալի վկայութեանց համեմատ՝ այս ժողովներն ոչ թէ իրաւաբանութիւն մը գործադրելու համար, այլ կրօնի եւ ուրիշ անձնական խնդրոց համար կ՚ըլլան, եւ հիւպատոսք քանի անգամ որ պէտք ըլլայ՝ պէտք են քաղաքին գլխաւոր ատենին մէջ անոնց ժողովարան մը շնորհել։ Աւագանւոյն ընտրութեան մասին կ՚որոշուի, որ թէեւ 12 Աւագանի օրէն է միայն ընտրել, բայց անոնցմէ միայն վեցը միշտ քաղաքին Վոյթին հետ Հայ ատենին մէջ պիտի բազմի[1]։ Իւրաքանչիւր տարի ընտրեալ Աւագանին Լեմպէրկի կուսակալէն ուղարկեալ երեսփոխանաց ներկայութեամբն թագաւորին առջեւ հաւատարմութեան երդում պիտի ընեն լեհերէն լեզուաւ։ Վերջապէս հիւպատոսաց կը հրամայուի նաեւ, որ եթէ Հայ Աւագանին ոստիկան խնդրէ՝ ուղարկուի կռուող կամ չարագործ Հայ մը կամ իրենց ոչ-կաթողիկեայ ծառան ձերբակալել տալու համար, եւ այսպիսիները քաղաքին բանտին մէջ բանտարկելու թող տրուի։

Հայք 1518էն վեր քանի մը պատուական արտօնագրեր ալ ընդունեցան Լեհ թագաւորներէն։ Այսպէս Սիկիզմունտ Ա թագաւորն՝ անոնց իրաւունքը քննելէն եւ հաստատելէն քանի մ՚օր ետքն, այն է՝ 13 Մարտ 1519, Գազիմիրի 1492ին տուած արտօնութիւնն վերստին հաստատեց, ո-

[1] Լեմպէրկի Օսսոլինսկիի մատենադարանին մէջ տեսած եմ լատիներէն ձեռագիր տուար մատեան մը՝ No. 1647, որ Լեմպէրկի Հայ ատենին 1734—1736 կատարած դատերու արձանագիրն է։ Ասոր մէջ կը նշանակուի 1734 տարւոյ Հայ դատաւորաց անուանքն, որոնցմէ առաջնոյն տիտղոսն է Director, երկրորդին՝ Vice Director, իսկ յաջորդ տասնին՝ Judex N(ationis) A(rmenae) L(eopoliensis.) (Դատաւոր Հայ Ազգին Լեմպէրկի։) Ասոր մէջ զատ է 12 դատաւորներէ՝ կայ Catalogus Honoratae communitatis Nationis Armene Leopoliensis, 1734։ Այս ցուցակին մէջ կը նշանակուի 42 Պատուաւորք (Honoratae) իսկ 1735ին՝ 52։ Այս մատենին վրայ աւելին ուրիշ առթիւ։ Ծ. Թ.

րով Վլատիզլաւ Թագաւորին 1402ին տուած առեւտրական արտօնութիւնք կը հաստատուէր եւ կ'ընդարձակուէր։ 1518ին (13 Դեկտ.) ընդունեցան Սիկիզմունտ Օգոստոս Թագաւորէն հաստատութիւն մ'այն ամէն իրաւանց, ազատութեանց եւ սովորութեանց, զոր ցայնժամ ունէին։ Յաջորդ 1549 տարին (13 Յունիս) ընդունեցան արտօնագիր մը, որով իրենք ալ Լեմպէրկի ուրիշ քաղաքացեաց պէս Մեծամեծաց եւ պաշտօնէից ատենէն յայտնապէս ազատ կը կացուցուէին, բայց նաեւ անոնց պէս քաղաքին բեռը կրելու կը պարտաւորին։ Վերջապէս 1561ին (7 Յունիս) ձեռք բերին երկայն ատենէ վեր բաղձացուած այն արգելքն՝ որով կ'արգելուէր առանձնական Հայոց քաղաքին իրաւանց անցնիլ, եւ Թագաւորէն խոստում առին, որ թէ ինքն եւ թէ իր յաջորդքն առանձնական Հայոց այսպիսի ազատութիւն մը բնաւ պիտի չշնորհեն։ Յամին 1574 մեծ հրդեհ մը քաղաքին մէկ մասն աւերեց. ասիկայ առիթ եղաւ՝ որ ծերակոյտը ժողովրդեան հաւանութեամբն որոշումներ ընէ ի նպաստ Հայոց։ Որովհետեւ փայտեղէն անօթներ, խար եւ այլ այրելի նիւթեր, զոր Հայք իրենց տունն համբարած էին, հրդեհը չիջուցանելու արգելք եղան, ծերակուտի յիշեալ որոշմամբ շնորհուեցաւ՝ որ Հայք որոնք քաղաքէն դուրս պարտէզներ կամ արտեր չունէին, նոյն իրերը պահելու համար կարող ըլլան արուարձանէից մէջ պարտէզներ կամ երկիրներ գնել քաղաքին իրաւաբանութեան տակ։ Բայց իրենց արգելուեցաւ անոնց մէջ վաճառանոցներ ունենալ, կամ առանց գիտութեան քաղաքային վարչութեան ընդունիլ այնպիսի վարձակալներ՝ որ օտար իրաւաբանութեան մը տակ, կամ հիւր եւ կամ վաճառական են. Նոյնպէս արգելուեցաւ ստացուած երկիրները ծախել անոնց՝ որոնք քաղաքին իրաւաբանութեան տակ չեն, առ հասարակ առանց հաւանութեան ծե-

րակուտին եւ հիւպատոսաց ոչ ծախել զանոնք եւ ոչ բեռնաւորել: Նաեւ արուարձանէայց միւս բնակչաց պէս վարչութեան հարկ ու ծառայութիւն պիտի մատուցանեն, եւ նոյն յարաբերութեան վերաբերեալ ամէն խնդրոց մէջ քաղաքին Վոյթին եւ ատենին ենթարկեալ պիտի ըլլան: Վերջապէս նոյն տարին Հայք իրենց ամէն արտօնութեանց ուրիշ հաստատութիւն մ'ալ ընդունեցան Հենրիկոս թագաւորէն, եւ 1576ին նոյն հաստատութիւնը նաեւ Ստեփան Պաթորի թագաւորէն նորոգուեցաւ:

Այս ամէն արտօնութիւններէն աւելի նշանաւոր էր Ստեփանոս թագաւորին 1578, Յուլիս 7ին տուածն, որուն առիթ եղած էր Հայոց նոր տրտունջներն ընդդէմ քաղաքին հասարակութեան: Հայք կը տրտնջէին ընդհանրապէս, որ իրենց արտօնութեանց եւ ի վաղուց ունեցած ազատութեանց վայելումը կ'արգելուն, եւ ի մասնաւորի՝ չեն թողուր իրենց սեպհական տան մէջ ազնիւ կերպասներ ծախել, ինչպէս սովոր էին, պարապ վաճառատները վարձել, արուեստ սորվիլ եւ գործադրել, ոգելից ըմպելիքներ պատրաստել եւ մենավաճառութիւն ընել: Ամբաստանեալ քաղաքային հասարակութիւնն ուրացաւ Հայոց որեւէ մէկ արտօնութիւնը բռնաբարած ըլլալն, ըսելով՝ Հայք լեզուի եւ կրօնի տարբերութեան պատճառաւ քաղաքացեաց հետ հաւասար իրաւունք չունին, ինչպէս վարձելու եւ հիմնարկութիւն ընելու իրենց նախնական արտօնութենէն կրնայ տեսնուիլ: Ասոր կը պատասխանէին Հայք՝ թէ իրենք յառաջ քաղաքին քաղաքացեաց եւ բնակչաց պէս քաղաքին ամէն ազատութիւնն վայելելու իրաւունք ունէին, եւ թէ վարձելու կամ հիմնարկութիւն ընելու ի սկզբանէ հետէ արտօնութիւն չունէին եւ երբեք չեն ունեցած կամ չեն ծածկած: Այս վերջինն երդմամբ հաստատելէն ետեւ՝ թագաւորը սահմանեց,

թէ Հայք միւս քաղաքացեաց հետ հաւասարապէս կրնան վայելել ամէն քաղաքական իրաւունքներն եւ ազատութիւններն. սակայն ցայժմ *գործադրուած եւ ի զօրութեան եղող կարգադրութեանց եւ սովորութեանց սահմանը պիտի չանցնին. եւ քաղաքային վարչութիւնն ու կառավարութիւնն անհանգիստ պիտի չընեն: Վասն զի իրեն (Թագաւորին) ներկայացուած քաղաքային արտօնութիւններէն յայտնապէս կ'երեւայ, որ նոյներն ամէն քաղաքացւոյ հաւասարապէս տրուած է, եւ թէ Հայք քաղաքին հասարակութենէն կամ որեւէ քաղաքային ազատութենէն չեն կրնար ի բաց հանուիլ: Ասով՝ քաղաքացեաց պէս իրենց ալ ըմպելւոյ մենավաճառութիւնն ազատ թողուեցաւ, կերպասի ազնիւ տեսակներու մանրավաճառութիւնն ու արտօնացեալ վաճառատներու գործածութիւնը միւս քաղաքացեաց պէս իրենց ալ շնորհուեցաւ: Եւ վերջապէս հրաման տրուեցաւ, որ կարենան արուեստ սորվիլ եւ գործադրել:

Հայք չդանդաղեցան ձեռք բերած առաւելութիւններն որչափ կարելի է ընդարձակագոյնս գործածելու, եւ քիչ ետքը շուտով յաջողեցան քաղաքին մէջ իրենց հասարակութեան ազդեցութիւնն աճեցընել, մինչեւ որ վերջապէս քաղաքին հասարակութեան անընդհատ եւ թախանձագին աղաչանքն ու տրտունջը կրցաւ Սիկիզմունտ Գ Թագաւորէն երկու վճռագիր ձեռք բերել, որոնք ոչ միայն Հայոց աւելի յառաջանալը կ'արգելուին, այլ եւ իրենց արդէն ստացած եւ գործադրած իրաւունքներն ու առաւելութիւնները մեծապէս կը կրճատէին: Քաղաքացեաց տրտունջը գլխաւորաբար ուղղուած էր Ստեփանոս Թագաւորին վճռագրոյն եւ Հայոց՝ քաղաքին մէջ տուն ստանալուն դէմ: Կը տրտնջէին՝ թէ Հայք այժմ իրենց վաճառականութիւնն ամբողջ Թագաւորութեան մէջ, Բրուսիոյ, Լիթուանիոյ եւ Մոսկուայի մէջ տարածած

են, ուր իրենց նախնիքն միայն Արեւելքի վաճառականութեամբ գոհ կ'ըլլային: Այս վճռագրէն ի վեր իրենց վիճակն այնպէս երջանիկ եղած է, որ ծովէ ի ծով իրենց առուտուրը կը հասցընեն, առիթ չեն կորսնցըներ գեղեր եւ աւաններ վարձելու, իրենց կալուածներն ու պարտէզներն արուարձանէից մէջ կը բազմանան եւ քաղաքին գրեթէ ամէն վաճառատները ձեռք անցուցած են: Ի՞նչ կրնան այլ եւս քաղաքին կաթողիկեայ բնակիչքն յուսալ, եթէ տակաւին Հայոց թողուի՝ որ իրենց տանց եւ շուկայի մէջ կարենան ամէն տեսակ կերպասեղէն մասն մասն վաճառել, կարենան գարեջուր, մեղրաջուր, գինի եւ օղի ծախել եւ ամէն արուեստ գործադրել: Կաթողիկեայ քաղաքացւոց վիճակէն վատթարագոյնը չկայ, եւ չկայ քաղաքին Հայոց վիճակէն լաւագոյնը: Երանի՜ թէ Աստուծոյ եւ թագաւորին ժամանակաւոր օգնութիւնն պահէր զիրենք իրենց սպառնացող հերձուածական բաժանման դժբախտութենէն: Անոր համար թագաւորն հաճի այն վճիռն, որ զիրենք այսչափ կ'ընկճէ եւ կ'աղքատացընէ, ջնջել եւ կամ գէթ մեկնաբանել:

Այս առաջարկութեան մէջ քաղաքացիք կը յենուին գլխաւորաբար նորագիւտ պատճառներու վրայ, զորոնք նոյն վճռոյն տրուելու ժամանակ կարելի չէր ի մէջ բերել: Ընդ հակառակն Հայք կը ջանային ցուցընել, որ այն վճիռն քսան տարիէ աւելի նախագրաւութեամբ (praescriptio) մը ամրացեալ է եւ այսուհետեւ ոչ կրնայ ջնջուիլ եւ ոչ մեկնաբանուիլ:

Ասոր վրայ թագաւորն 1600ին Ապրիլ 7ին որոշեց, որ իւր նախորդին վճիռն չի կրնար թէեւ ջնջուիլ, սակայն որովհետեւ այնպէս չինուած է՝ որ երկու կողմանէ տարբեր կը հասկցուի, հարկաւոր է մեկնել: Ըստ այսմ կ'որոշուի, որ թէ կաթողիկեայ քաղաքացիք եւ թէ Հայք ազատ են

առուտուր ընել որեւէ ապրանքով թէ պետութեան մէջ եւ թէ դուրս, ընդ ցամաք եւ ընդ ջուր, եւ կարող են իրենց ապրանքն Էմպէրկ եւ կամ տէրութեան ուրիշ քաղաքներու եւ աւաններու մէջ վաճառել։ Սակայն յաջորդ կարգադրութիւնք պիտի պահուին. Հայք կարող են միայն երկու վաճառատանց մէջ, զորոնք կաթողիկեայ քաղաքացիներէն պիտի վարձեն, եւ կամ իրենց տանց եւ տեղեաց մէջ, զոր իրենց Աւագանին իրենց պիտի ցուցընէ, լաթ ծախել մասն մասն, եթէ որեւէ պատճառաւ մը կարող չըլլան Տաճկաստանի կամ Վալաքիոյ մէջ առուտուր ընել։ Ազնիւ կերպասուց կանգնով վաճառումն երկու կողման ալ հաւասարապէս շնորհեալ է մեծ վաճառատանց մէջ, նոյնպէս ամբողջ կտոր լաթեր կարող են վաճառել։ Իսկ սովորական լաթի տեսակներ կանգնով ծախելէ Հայք այսուհետեւ ետ պիտի կենան. մասն մասն լաթ ծախել այն ատեն միայն Հայք կարող են, երբ Տաճկաստան կամ Վալաքիա առուտուր չեն կրնար ընել։ Նաեւ գինեվաճառանոց միայն երկու տան մէջ կարող են ունենալ. իսկ տակառով գինի ծախել քաղաքացեաց պէս հրաման ունին։ Մեղրաջուր երեք տան մէջ կրնան պատրաստել եւ ծախել. գարեջուր չորս տան մէջ կրնան ծախել, սակայն նոյնը քաղաքայիններէն պիտի գնեն։ Վերջապէս սահմանուեցաւ՝ որ Հայք իրենց ազգէն եւ կրօնէն միայն երկու դերձակ, երկու կօշկակար, երկու մուշտակագործ եւ մէկ նկարիչ կարենան ունենալ. սակայն ասոնք քաղաքացի վարպետներու ընկերութեան անդամ պիտի ըլլան, եւ անոնց իրաւանց ու պարտուց պիտի մասնակցին։

Նոյն օրը տրուած երկրորդ թագաւորական վճռոյն մէջ կ'որոշուի, որ Հայք քաղաքին մէջ 73 ժառանգական տներէ աւելի պիտի չունենան. բայց այս թուէն ի բաց առնլու է իրենց եկեղեցական ժողովին սահմանեալ տունը, երկու քահանայա-

տունը, դպրոցն ու հիւանդանոցը: Նոյնպէս կրնան անկէ աւելի տներ Հրեաներէն գնել: Քաղաքին կեդրոնին՝ Ռինկբլացի[1] մէջ իրենց ունեցած տներն, որոնց արժէքն ի հարկաւորութեան երդմամբ որոշելու է, առաջարկուած դրամով մինչեւ տարւոյն վերջը կաթոլիկեայց պիտի ծախեն, եւ այսուհետեւ Ռինկբլացի մէջ տուն չեն կրնար գնել: Նոյնը կ'արժէ նաեւ այն փողոցներու տներու համար, որոնք Ռինկբլաց կը հային:

Կրնայ մտածուիլ՝ որ Հայք այս կուսոյն այսպիսի ելքէն չէին կրնար գոհ մնալ: Ի մասնաւորի այս երկու վճռոյ առաջինն, իրենց շատ խիստ էր. վասն զի քաղաքին հասարակութեան՝ Հայոց վիճակին վրայ թագաւորին ներկայացուցած նկարագրութիւնն արդեամբք չափազանց չէր: Այս կուսոյն արձանագրութիւններուն մէջ քաղաքին Արուեստաւորաց ընկերութեան գահերիցուն 1589ին տուած երդուեալ մէկ բացատրութիւնը կայ, որմէ կ'իմացուի՝ թէ Ռինկբլաց գտնուող 38 մեծ գործատներէն 8ը կաթոլիկեայց էր, 6ը Ռութեններու եւ 22ը Հայոց, իսկ միացած երկուքին համար Հայք կաթոլիկեայց հետ վէճի մէջ էին: Նոյնպէս 24 փոքր վաճառատներէն 2ը կաթոլիկեայց էր, 3ը Ռութեններու եւ 19 Հայոց: Այսպէս քաղաքին վաճառականութիւնը գրեթէ ամբողջ իրենց ձեռքն էր. անոր համար ալ արտաքոյ կարգի մեծ էր միշտ այն վնասն, զոր կը կրէին Հայք այն վճռոյն մէջ իրենց վաճառականութեան դրուած սահմանաւորմամբն: Ասոր վրայ աւելցուր նաեւ ըմպելեաց վաճառման եւ մենավաճառութեան, արուեստի եւ տուն ստանալու կարողութեան յիշեալ ամփոփումն, որոնց ճնշող բեռը թեթեւ չէր կրնար ըլլալ: Ուրեմն կար բաւական պատճառ դժգոհու-

[1] Ռինկբլաց Հայոց փողոցէն քանի մը քայլ հեռու է եւ քաղաքին գլխաւոր առեւտրական հրապարակն է:
Ծ. Թ.

թեան, եւ ոմանք կրնային իրենց պարտաւորութիւններէն իրենք զիրենք ազատ հրատարակել այս բեռան ծանրութեան պատճառաւ, քանի որ իրենց թանկագին արտօնութիւններուն ջնջումը կը հրատարակուէր: Սիկիզմունտ Գ թագաւորին 1616ին տուած մէկ հրամանագիրն կը ցուցնէ պարտաւոր հատուցումներու եւ պարտաւորութիւններու այսպիսի զլացում մը. վասն զի Հայ Աւագանւոյն իշխանութիւն կը տրուի՝ յօգուտ իրենց հասարակութեան կարգադրութիւններ ընել եւ ընդդիմացողն ըստ արժանւոյն պատուհասել, որ վախճանաւ հիւպատոսի պաշտօնն եւ քաղաքային բանտն իրենց տրամադրութեան տակ կը ձգուի: Նաեւ, ինչպէս կ'երեւայ, Հայք նոյն վճռոյն շուտով չանսային. վասն զի 1609ին Ռինկըլացի ամէն տներն, զոր ունէին, տակաւին կաթողիկեայց անցուցած չէին[1], եւ 1622ին բազմաթիւ Հայ մեղրաջրավաճառներու, որոնք ալ հրաման չունէին նոյնին, հիւպատոսարանի մեղրաջրավաճառանոցը չզլացուեցաւ: Ոմանք այս յարաբերութեանց մէջ յարմար դատեցին՝ քաղաքային հասարակութեան մէջ իբրեւ քաղաքացի գրուիլ, որուն նկատմամբ 1607ին թագաւորական որոշում մը տրուեցաւ, որ քաղաքային վարչութեան հրաման կու տար այսպիսիներն ընդունիլ, եթէ Հայ Աւագանին այս մասին յանձնարարութիւն մ'ընէ: Այլք ոմանք իրենց լաւ ծառայութեան համար թագաւորին ծառայից եւ վաճառականաց մէջ առնուեցան, վաճառականութեան ազատութիւններ առին, օտար ատեաններէ եւ նոյն իսկ քաղաքին վճարելի հարկերէն ազատ կացուցուեցան, եւ նաեւ առպետական վիճակի բարձրացան[2]:

Յանկարծ հեռու Արեւելք դէպք մը պատահեցաւ, որ Լեհաստանի Հայոց ապագայ զար-

---

[1] S. Barącz, a, a, O. 328.
[2] L. c. 70, 236, 157, 324, u. a.

դացման որոշիչ ազդեցութիւն մը պիտի ընէր։ Մելքիսեդեկ, Էջմիածնի Պատրիարքն, որ Շահ Աբաս Ա Պարսից թագաւորէն սաստիկ նեղուած՝ ստիպուեցաւ թողուլ ոչ-կաթողիկեայ Հայոց նախնի աթոռն եւ Մայր եկեղեցին, հրաժարեցաւ իւր աստիճանէն, եւ նախ Կ. Պոլիս, յետոյ 1625ին Լեմպէրկ եկաւ, եւ Մեսրոպ եպիսկոպոսին մահուամբն՝ Լեմպէրկի դատարկացեալ եպիսկոպոսական աթոռը բռնեց[1]։ Անմիջապէս քաղաքացիք նոր ամբաստանութիւններ եւ տրտունջներ յարուցին ընդդէմ Հայոց։ Կ'ամբաստանէին թէ Հայք, կասկածելի Պատրիարքն առանց գիտութեան եւ հաւանութեան թագաւորին եւ քաղաքին՝ ընդունած են եւ թէ անոր հետ գաղտնի խորհուրդներ կ'ընեն,

---

[1] Ստեփանոս Ռոշքա († 1739, Հոկտ. 31) իւր ժամանակագրութեան մէջ (տարի 1617) կը գրէ՝ թէ Մելքիսեդեկ 1617ին Զաքարիա Վ.ը Հռոմ Պօղոս Ե. Քահանայապետին ղրկած է իւր հնազանդութիւնն յայտնելու համար, երեք տարի ետքը կրկին ղրկած է նոյն վարդապետն։ 1622ին կը գրէ՝ թէ ղրկած է դարձեալ թուղթ առ Գրիգոր ԺԵ. եւ 1623ին առ Ուրբանոս Ը։ Ռոշքա կ'առնու զայս Platina անուն մէկու մը գրքէն։ Այս է Հ. Ըստկարեանի (Եկեղ. պատմ. էջ 379) եւ Հ. Փալճեանի (Պատմ. կաթուղ. վարդապտ. ի Հայս, էջ 162) հիմն զՄելքիսեդեկ կաթողիկոս կաթողիկեայ անուանելու, զոր առանց հիման անհիմն կը հրատարակէ Կ. Եզեան (Ռուսի Միութ. Ցուշըն. ԻԵ. ծ. 2)։

Եւ այս այնչափ աւելի զարմանալի է, որչափ ինքն Եզեան յառաջ կը բերէ այն բողոքագրին օրինակէն կտոր մը (Անդ, ԻԷ, ծան.), — զոր Լեմպէրկի Հայք Էջմիածնի կաթողիկոսին ուղղած են, — առանց մտադիր ըլլալու նոյն՝ բողոքագրոյն շարունակութեան։ Ասոր մէջ հանդերձ այլովք կը կարդանք. "Պէտք է վերջապէս յիշել՝ թէ որո՞նք եղան մեր այս խռովութեանց՛ պատճառ։ Առաջին եւ գլխաւորն է Սրբութեանդ բարեյիշատակ նախորդն Մելքիսեդեկ Պատրիարք եւ Կաթողիկոս։ Վասն զի նախ ասիկայ Պօղոս Ե. Հռոմայ Քահանայապետին ժամանակն արդէն իւր պատուիրակն Զաքարիա վարդապետն, որ այժմ Կոստանդնուպոլսոյ արքեպիսկոպոս է, անոր ուղարկած էր եւ Հռոմայ եկեղեցւոյ հետ բոլորովին եւ ճշմարտապէս միացած էր, զոր կրնանք ցուցընել Պատրիարքին թղթէն որ լատին գրքերու մէջ տպուած է, եւ որուն օրինակը կ'ուղարկենք։ Ասոր մէջ Հռոմայ Քահանայապետը Եկեղեցւոյ Գլուխ կը դաւանի եւ իրեն հնազանդութիւն կը խոս-

ինչ ինչ վաճառականական ճիւղեր կը շարունակեն, որոնք Թագաւորական արտօնութեանց եւ վճռոց, Հասարակ եւ սաքսոնեան իրաւանց, քրիստոնեայ կրօնի եւ ամէն բանաւոր դատողութեան հակառակ են, թէ գաղտնի եւ առանց իշխանութեան դատ կ'ընեն, պաշտօններ կ'առնուն՝ որոնց իրաւունք չունին, ինչպէս՝ քառասնապետ, կառավարիչ, նոտար, փոխ-հիւպատոս, Վոյթ եւ այլն. եւ թէ տէրութեան եւ քաղաքին պաշտօնէից, ինչպէս նաեւ իրենց պարտապանաց հետ ունեցած դաշինքները չեն պահեր, յանցանքներ ու ոճիրներ կը ծածկեն, եկեղեցւոյ եւ որբոց դրամները կը գողնան, իրենց քաղաքացիքը կը ճնշեն, Թագաւորական արտօնութիւններ (1518, 1549, 1616ին տրուածները) կը խարդախեն եւ այլն: 1626ին (Յուլ. 30) Թագաւորն փոխ-հիւպատոսին, հիւպատոսաց եւ Լեմպէրկի Վոյթին պատուիրեց Հայ Պատրիարքն եւ իրեն ընկերացող եպիսկոպոսներն աչքի առջեւ ունենալ, եւ անոնց ձեռնարկութիւններն ու դիտումները, որոնցմէ մին է Թագաւորութեան մէջ դրամաժողով ընել, քննել եւ տեղեկութիւն տալ: Արդ երբ Պատրիարքն երկայն ատեն քաղաք բնակելէն ետեւ՝ մեկնեցաւ, հիւպատոսք իրեն դէմ Թագաւորին բողոք ըրին (28 Փետր. 1627): Իսկ Մելքիսեդեկ արդէն Հայոց մեծ մասին կամաց հակառակ 23ամեայ Նիկողայոս Թորոսեանն, որդի Լեմպէրկցի Յակոբ Թորոսեան Հայոյն,

---

տանս: Երկրորդ նշան միացեալ ըլլալուն այն է, որ երբ ինքն Մելքիսեդեկ կաթողիկոս 1625ին առ մեզ Լեհաստան եկաւ (անշուշտ ի թշուառութիւն մեր,) մեզի ցուցուց թուղթ մը, զոր իրեն գրած էր Գրիգոր ԺԳ լատին լեզուաւ, որուն մէջ կը յիշէ Գրիգոր անոր խոստացած հնազանդութիւնը: ... Աստ օրինակն ալ կ'առաքենք: Երրորդ՝ մեր ականջովը լսեցինք, որ երբ հոս Լեմպէրկ եպիսկոպոսներ կ'օծէր, կը հրամայէր որ դաւանուի Հռոմայ եկեղեցւոյ դաւանութիւնը՝ յաւելցնելով թէ Հոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ կը բղխէ:„ Տես Wiadomość o Ormianach w Polszcze, Lwów, 1842, էջ 41:

եպիսկոպոսական աթոռ բարձրացուցած էր. որ եւ ընդունած աստիճանը պահելու համար՝ Հռոմայ Քահանայապետին հպատակեցաւ, եւ ասով կատարեց Լեմպէրկի Հայոց եպիսկոպոսութեան ընդ Հռովմայ միութիւնն, որուն երկայն ատենէ վեր կը ջանացուէր[1]: Սակայն Հայոց մէջ իւր կողմնակիցներն շատ քիչ էին, եւ նոյն իսկ այն ատեն ալ, երբ Սիկիզմունտ թագաւորն 1629ին անոր ընտրութիւնն հաստատեց, եւ Լեմպէրկի, Կամենիցի, Քիեւի եւ թագաւորութեան ուրիշ տեղեաց ամէն Հայոց պատուիրեց՝ ընտրեալն իբրեւ իրենց եպիսկոպոսն ընդունիլ, եւ պաշտօնէից հրամայեց որ զանիկայ իւր իրաւանց եւ ազատութեան վայելման մէջ պահեն ու պաշտպանեն: Հայոցմէ շատերն չէին ուզեր ճանչնալ ատելի եպիսկոպոսն, կը հակառակէին անոր, եւ ընդդէմ կը գործէին անոր ձեռնարկութեանցն մեծագոյն դառնութեամբ եւ յամառութեամբ: Եպիսկոպոսին կողմնակցութիւնն բռնութեամբ անոնց եկեղեցին եւ եկեղեցւոյ իրերն գրաւեց, եւ ասոնք ստիպեցան ակամայ թողուլ: Հայք Էջմիածնի Պատրիարքին, նաեւ Հռոմայ Քահանայապետին, հիւպատոսաց եւ թագաւորին յաճախ դիմեցին իրենց խնդրուածովքն եւ ամբաստանութեամբք: Կռիւը 20 տարիէ աւելի տեւեց, որուն մէջ Նիկողայոս Թորոսեան, հիւպատոսք եւ Հայք իբրեւ ամբաստանողք աշխարհական ատենի առջեւ կ'ելլէին: Եւ երբ կռիւն յետականս ի նպաստ նոր եպիսկոպոսին վճռեցաւ, Հայոցմէ շատերն իրենց հաւատքին համար, ինչպէս իրենց նախնիքն

[1] Տարակոյս չկայ թէ Լեմպէրկ առանձնական Հայեր կային, որ կաթողիկէ հաւատքն ընդունած էին: Իբրեւ հասարակութիւն միացան Հռոմայ հետ, երբ Նիկողայոս եպիսկոպոսն բոլոր եկեղեցիները գրաւեց, վասն զի տեղւոյն օրէնքն եկեղեցիներն եպիսկոպոսին սեպհական կը ճանչնար: Քիչ մ'ետքը, ինչպէս կը յիշէ Պիշոֆ, Հայք քանի մ'անգամ եւս պաշտօնապէս խոստացան թագաւորին կաթողիկէ հաւատոյ մէջ մնալ: Ծ. Թ.

յաճախ կ'ընէին, Թողուցին քաղաքն ու երկիրը, եւ մեկնեցան[1]։

Բնականապէս հոն մնացողները նոյն ժամանակի շփոթութեանց մէջ շատ կրեցին[2]։ Իրենց վիճակն վերստին հաստատելու համար Թագաւորք անոնց հին արտօնութիւնները դարձեալ նորոգեցին, եւ շատ նշանաւոր ընդարձակութիւններ շնորհեցին։ Այսպէս Վլատիզլաւ Թագաւորն, որ արդէն 1633ին ընդհանուր հաստատական արտօնութիւն մը տուած էր, 1642ին շնորհեց նաեւ Թագաւորութեան մէջ մուծուած եւ դուրս հանուած ամէն վաճառաց ու դրամոց մաքսէ ազատութիւն։ Յովհ. Գազիմիր Թագաւորէն 1651ին ընդունեցան արտօնութիւն մը ի փոխարէն բարի ծառայութեանց, զոր մատուցին երբ Թաթարներ քաղաքն ու Թագաւորը պաշարած էին, եւ ի հատուցումն կրած վնասուց։ Այս արտօնութեամբ իրենց իշխանութիւն կը տրուէր ամէն տեսակ առուտուր ընել, եւ ի մանաւորի լաթ ծախել մանր մանր կամ կանգնով շուկայի մէջ կամ իրենց տեղերն, վաճառատներ բանալ, ամէն տեսակ ըմպելիներ իրենց տան մէջ պատրաստել, մեծ կամ դոյզն քանակութեամբ գինի վաճառել, եւ բաց ասկէ ուրիշ ապրանքներ ծախել հասարակաց պիտոյից եւ գործածութեան

---

[1] Այս նշանաւոր դիպաց մասին տ. Bibl. nauk Zakładu Ossolińsk. 1842, II. 68։ Հոն նաեւ Հայոց նշանաւոր աղերսագիրն առ Պատրիարքն Էջմիածնի յառաջ կը բերուի։ — Barącz, a. a. O. 332. — Zubrzyski, a, a, O. 273. — Ritter, a. a. O. X. 615.

[2] Լեմպէրկի քաղաքային դիւանին մէջ կան բոլոր այս կրօնական խնդրոց վաւերական գրութիւնները, ինչպէս կը յիշէ Պիշոֆ։ (Urkunden, Յուշքն.) կարճատեւ միջոցին մէջ, երբ 1888ին շաբաթ մը Լեմպէրկ էի, կարելի չեղաւ ինձ կրկտել այս հետաքրքրական վաւերագիրները։ Պավինսկիի լեհերէն գործն (Նիւթք պատմութեան. Վարշաւ, 1876) շատ բան կը բովանդակէ անշուշտ, որմէ Թարգմանաբար հրատարակեց Կ. Եզեան (Բանի Միութ.) երկու յիշատակարան։ Վերջերս Բազմավէպ (1890, Թ. 2—) նոյնպէս Պավինսկիէ Թարգմանական կտորներ յառաջ կը բերէ։ Ծ. Թ.

համար։ Թէեւ Էնմպէրկի քաղաքացիք այս անգամ ալ զանց չըրին բողոքել այս արտօնութեան, ինչպէս նաեւ Ստեփանոս Թագաւորին նոյնպիսի արտօնութեան դէմ, եւ անոր ոչնչացումն պահանջել, բայց այս անգամ միայն ի վնաս իրենց։ Վասն զի այս կռուոյ վրայ 1654ին Թագաւորական վճիռ մ'ելաւ, որով Հայք աւելի քան երբեք շնորհքներ ընդունեցան։ Թագաւորն այս վճռոյն մէջ ճանչցաւ Հայոց ներկայացուցած արտօնագրոց զօրութիւնն, որոնց մէջ զարմանալի կերպով Թէոդորին՝ Դեմետրիոս ռուս իշխանին որդւոյն տուածն ալ կար, որ՝ ինչպէս կ'ըսուէր, 1062ին տրուած էր։ Թագաւորն հաստատեց նաեւ 1651ին տրուած արտօնութիւնն, եւ նկատելով որ Հայ ազգն իրեն եւ իւր նախնեաց միշտ հաւատարիմ եղած է եւ ի Լեհաստան հաստատուն բնակութիւն ունեցած, եւ այժմ Հայք ատենական ճամբով կը յայտարարեն՝ թէ սուրբ, կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ միութեան մէջ պիտի մնան. եւ վերջապէս որովհետեւ հրապարակական եւ անձնական բեռներն քաղաքացեաց հետ հաւասարապէս կը կրեն, հրաման ունենան բաց ի Սիկիզմունտի վճռոյն մէջ յիշուած 2 վաճառատներէն, ուրիշ 3 հատ ալ ունենալ, որոնց մէջ միւս քաղաքացեաց պէս ամէն տեսակ լաթ մասն մասն կամ կանգնով ծախեն։ Դարձեալ բաց ի յառաջագոյն շնորհեալ 73 տներէն՝ նաեւ 10 տուն Ռինկբլացի վրայ (Ռինկբլացի գրեթէ ամբողջ մէկ կողմն) գնեն, մեղրաջուր, գարեջուր եւ օղի իրենց ամէն տուներուն մէջ պատրաստեն, ինչպէս նաեւ ամէն տեսակ գինի ծախեն, միայն թէ այս մասին Աւագանւոյն կարգադրութեան անսան։ Վերջապէս կարենան ամէն տեսակ արուեստ սորվիլ եւ գործածել, միայն թէ իրենց ազգէն ամէն արուեստի միայն 2 վարպետ ըլլայ, որոնք Արուեստաւորաց ընկերութեան կանոնները պահեն։ Նաեւ քաղաքային վարչութեան կը հրամայուի, որ օտար

մարդիկներու՝ Տաճկայ, Սարակինոսաց, կամ օտար Հայոց, Լեմպէրկի Հայոց շնորհուած ազատութեանց, քաղաքին իրաւանց եւ ազատութեանց վայելումը չշնորհեն, բայց միայն այն Հայոց, որոնք թագաւորութեան ուրիշ մէկ քաղաքին իրաւունքները կը վայելեն եւ հայ Աւագանիէն կը յանձնարարուին։ Այս արտօնութենէն զատ՝ Հայք Յովհ. Գազիմիր թագաւորէն 1659ին՝ Վլատիսլաւի 1633ին տուած հաստատական արտօնագրոյն հաստատութիւնն ալ ընդունեցան. իսկ առանձնական Հայեր այլեւայլ շնորհումներ ալ ընդունեցան[1]: 1661ին թագաւորն Լեմպէրկ քաղաքին եւ բնակչացն, որոնց մէջ Հայք յանուանէ կը յիշուին, արտօնութիւն մը տուաւ, որով այս քաղաքն իրաւանց, ազատութեանց եւ ազնուականութեան տիտղոսներու մասին՝ Քրաքաւ եւ Վիլնա քաղաքաց հաւասար կ'ըլլուի: Հայք այս արտօնութիւնն Միքայէլ թագաւորին (1671) մանաւորապէս հաստատել տուին, երբ նոյն թագաւորն արդէն 1669ին իւր նախորդին 1659ին տուած հաստատական արտօնագիրն հաստատած էր իրենց: Նոյնն ըրին նաեւ Յովհ. Գ թագաւորն 1676ին եւ Օգոստ. Բ թագաւորն 1697ին: Այս թագաւորներն ալ քանի մը Հայեր ազնուականութեան աստիճանի բարձրացուցին[2]:

Այս միջոցին քաղաքին հասարակութեան եւ Հայոց մէջ անընդհատ վէճեր կ'ըլլային: Հայք կը տրտնջէին թէ իրենց իրաւաբանութիւնն ու արտօնութիւնները կը բռնաբարուին այնու՝ որ Արեւելքէն եկող Հայերուն վաճառականութեան եւ արուեստի հրաման կը տրուի. Յոյն վաճառականաց հրաման կը տրուի խանութ բանալու, առանց

[1] Barącz, a, a, O. 54, 354, 72. — Հոս էջ 70 պատմուածն՝ թէ Վլատիսլաւ Դ Լեմպէրկցի Հայէ մը 300.000 տուքատ փոխ առած է, կը ցուցընէ Հայոց հարստութեան վիճակը:

[2] Անդ, 396, 304:

պատճառի ձերբակալութիւնք կ'ըլլան, հարկահանք հարստահարութիւններ կ'ընեն, տրոց որոշման մէջ ապօրինաւոր իրեր կը գործուին, քաղաքին հաշուոց քննութիւնն իրենց թոյլ չի տրուիր, թիկնապահ զինուորաց մէջ Հայք չեն ընդունուիր, եւ այլն։ Իսկ քաղաքին հասարակութիւնը կ'ամբաստանէր՝ որ Հայք քաղաքային վարչութեան, պետութեան եւ քաղաքին ապահովութեան դէմ կը մեքենայեն եւ դաւաճանութիւն կը կազմեն, հրապարակական խորհուրդներն ու որոշումները կը խափանեն, “Հիւպատոս„ տիտղոսն իրենց կը յափշտակեն, պարտական եղած հարկերը կը զլանան, իրենց քաղաքացիքն օրինաց հակառակ գործելու կը դրդեն, եւն։

Արդէն կրօնական երկպառակութեանց ժամանակ այլեւայլ թագաւորական վճիռներ տրուած էին, ի մասնաւորի յանցանքի վերաբերեալ իրաց մասին, որոնք յետականս Սիկիզմունտի նոյն նիւթոց մասին տուած ծանօթ որոշումները կը հաստատէին. այսպէս Վլատիսլաւ թագաւորէն 1634, 1636 եւ 1638ին, նոյն տարին նաեւ Սիկիզմունտ Դէն, եւ 1646ին Վլատիսլաւ Դէն տրուածներն։ Վերջինս յաջորդ տարին քաղաքային վարչութեան հրամանագիր մը տուաւ, որ ասիկայ հայ Աւագանւոյ ընտրութեան մէջ այնուհետեւ մաս չունենայ։ Յովհ. Գ թագաւորն 1678ին այն հայ քաղաքացիներն, որոնք հիւպատոսի պաշտօն ունէին, իրենց բնակած տան հարկը վճարելէն ազատ կացոյց։ 1685ին քաղաքին քննիչն ամբաստանելով՝ որ Հայք քաղաքին բարօրութեան համար՝ հասարակաց աղօթք եղած ժամանակ եւ ուրիշ նոյնպիսի դիպաց մէջ բաւական թուով չեն մասնակցիր, հիւպատոսարանը վճիռ հանեց, որ ամէնքն այն ամէն հրապարակական իրաց, առ որ կը հրաւիրուին, պէտք է որ գան. ապա թէ ոչ՝ 1563ին եւ 1578ին տրուած վճռոց մէջ յիշուած պատժոց տակ կ'իյ-

նան։ Վերջապէս 1686ին (փետր. 13ին) ընդարձակ թագաւորական որոշում մը տրուեցաւ, որով Հայոց մինչեւ այն ատեն ունեցած դիրքն ոչ միայն ճանչցուեցաւ, այլ եւ ըստ մասին աւելի զարգացաւ, երբ Հայք երկրորդ անգամ հռոմէական-կաթոլիկէ հաւատքը դաւանեցան։ Նախ 12 հայ Աւագանիոյն շնորհուեցաւ այնուհետեւ (իրենց հին իրաւանց մէջ գործածուած) դատաւոր (Judex) տիտղոսն կրել, եւ իրենց իրաւանց եւ արտօնութեանց համեմատ Լեմպէրկի Հայ ազգին մեծամեծքն ըլլալ։ Սակայն ոչ եթէ 12 դատաւորներն ալ, այլ պաշտօնի մէջ եղող 6 Աւագանիին միայն իրենց տան հարկը վճարելէն ազատ ըլլան։ Թիկնապահութեան կոնսան ընտրուիլ 12 Աւագանիէն զատ՝ նաեւ ուրիշ 3 Հայ։ Ըմպելի պատրաստելու եւ մենավաճառելու, արուեստ գործադրելու իշխանութեան մասին տրուած հին արտօնութիւնք հաստատուեցան, եւ նոյնպէս կրկնուեցաւ հին կարգադրութիւնն՝ թէ քաղաքային վարչութիւնն օտարական Հայերը, նաեւ եթէ թագաւորութեան մէջ բնակին, Լեմպէրկի Հայոց իրաւանց եւ ազատութեանց մասնակից պիտի չընէ, բայց միայն երբ դատաւորք կը յանձնարարեն։ Ուրիշ որոշման մը համեմատ՝ Տասանց խորհուրդ մը պիտի կազմուի պետութեան մուտքերն, հաշիւներն եւայլն քննելու, որուն մէջ հայ դատաւոր մ՚ալ պիտի ըլլայ. իսկ տուրքերն ու հարկերը ժողվելու համար, որոյ մասին հին իրաւունքներն նոյնպէս կը հաստատուէին, դատաւորք երկու պատուաւոր հարուստ Հայեր պիտի սահմանեն։ Նաեւ քաղաքացեաց ստացուածոց գինն որոշելու համար՝ որպէս զի արտաքոյ կարգի տուրքեր համեմատաբար կարենայ պահանջուիլ, յանձնաժողովոյ անդամոց մէջ պիտի ըլլան այսուհետեւ երեք հայ դատաւոր։

Այսպէս ուրեմն Հայք 300 տարւոյ կռուով ոչ միայն պահեցին իրենց սեպհական իրաւանց (զոր

յաջորդ յօդուածներով ներկայացընել պիտի ջա-
նանք) անընդհատ՝ բայց բաւական նեղութեամբք վայելումը, այլ եւ դիրք մ'առին քաղաքին մէջ, ուր գրեթէ իրենց առաւելութիւններովը միայն քաղաքացիներէն կը զանազանուէին: Եւ այս գրից մէջ մնացին. եւ թէեւ ունեցած քանի մը վաւերագրերու վրայ յենլով այնուհետեւ ալ կռիւներ յարուցին, մինչեւ որ նոր՝ հասարակաց բարւոյն աւելի համապատասխանող կարգադրութիւնք վերջ տուին հին արտօնական տնտեսութեան, որուն մէջ մէկուն տրուած առաւելութիւնը սովորաբար միւսին վնասակար կ'ըլլար, անոր համար ալ միշտ կռուին անպակաս էր: Թէ այս նոր ժամանակի անցումն ի՞նչպէս եղած է, յորում՝ սեպհական հայ իրաւունքն՝ երկրին իրաւանց, հայ լեզուն՝ երկրին լեզուին տեղի տուաւ, ձեռքս եղած վաւերագիրներէ չի կրնար ճշդիւ որոշուիլ: Աւգոստոս Գ. թագաւորն տակաւին 1736ին հաստատեց Հայոց հին իրաւունքներն ու ազատութիւնները[1]: Այսօրս միայն փողոցներու եւ անձանց անուններն, եւ զարմանալի ճարտարութեամբ շինուած եկեղեցիք, եւ — բաւական զարմանալի — փոխատուական սենեակն միայն կը յիշեցընեն, թէ ի Լեմպերկ Հայեր կային եւ կան[2]:

## 3.

Հայ իրաւանց յաջորդ նկարագրութիւնը պիտի ընենք յիշեալ երկու լատիներէն ձեռագիր բնագիրներու վրայէն: Դատաստանագրոյն որոշումներն այնպէս ամփոփած ենք, որ կարելի է ամբողջն

---

[1] Պարոնչ վերոյիշեալ գրքին մէջ 1784էն հայ ատենի մատեաններ յառաջ կը բերէ: Ընդհանրապէս այս գրքին մէջ կան սքանչելի տեղեկութիւններ Հայոց վրայ մինչեւ նորագոյն ժամանակներ:

[2] Այս մասին տես Ոսկեքրոբեան Ս'ի հռչակեան Լեհաստան, զոր պատրաստ ունիմ ի հրատարակութիւն:

Ծ. Թ.

մէկանց նկատել. իսկ աղբիւրներու յիշատակութիւնք, նման որոշմանց հետ համեմատութիւնէն դուրս կը մնան, թերթիս էջերն չափէն աւելի չգրաւելու համար։ Որոնք որ Աստուածաշունչ գրոց տեղեակ են կը տեսնեն անմիջապէս Հայ իրաւանց Ս. Գրոց հետ ունեցած յարաբերութիւնները եւ ակնարկութիւնքն, որ կը տեսնուին թէ՛ այն իրաւանց սեպհական որոշումներուն եւ թէ՛ իրաւաբանական նախադասութիւններու մէջ։ Եւ ասիկայ Հայ իրաւանց որոշումներուն ամէն ճիւղին մէջ կ'երեւայ. այսպէս նաեւ Անձնական իրաւանց մէջ։

Աստուած զամէնքն ազատ ստեղծած է, սակայն հարկաւոր է որ մէկը միւսին ծառայէ։ Ծառայք իրենց տերանց իշխանութեան տակ են. բայց այս իշխանութիւնն անսահման չէ բնաւ։ Անձանց յարաբերութիւններն յօրինաց որոշուած է, եւ այս որոշման բռնաբարութեան պատիժ կը սպառնացուի։ Այս մասին այր եւ կնոջ, ուսեալին եւ տգիտին, քրիստոնեայ եւ հեթանոս անազատին մէջ եղած տարբերութիւնն աննշանակ չէ։ Նաեւ յարաբերութեանց յառաջ գալուն եղանակը՝ անազատից իրաւաբանական դրից վրայ ազդեցութիւն ունի։ Հայ իրաւունքն, ինչպէս կ'երեւայ, անազատութեան սովորական ծագման կերպը կը նկատէ՝ գնումը եւ ծառայութեան մտնելը։ Բայց նաեւ անոնք, որ անազատէ սերած են, ինչպէս նաեւ պատերազմի գերիներն անազատ են։ Գնմամբ ստացեալ ծառայք կամ քրիստոնեայ անազատք՝ երբ իրենց համար վճարուած գինը կը վաստըկին՝ ազատ պիտի թողուին։ Իրենց հետ նաեւ իրենց կանայքն ու տղայք ազատութիւն պիտի ստանան, եթէ անազատք իրենց կանամբքն հանդերձ գնուած են։ Բայց եթէ տէրն իւր անազատին կին մը տուած է, այն ատեն այն կինն եւ այս ամուսնութենէն ծնեալ տղայք միշտ տիրոջ ստացուածքն ու իշխանութեանը տակ պիտի մնան. բայց միայն՝ երբ տէրն

[redacted]



կնոջ փոխարէն դրամ ընդունիլ յանձն առնու, որ դէպքին՝ կինն տղոցմովն ազատ պիտի թողուի։ Եթէ անազատ մը, որ ազատութիւն ընդունած է, ուզէ տիրոջը ծառայութեան մէջ մնալ, տէրը պէտք է զինք կնոջմովն ու տղոցմովն ընդունիլ. այս մասին եկեղեցւոյ մէջ պատուաւոր անձանց առջեւ վկայութիւն պէտք է տալ եւ վաւերագիր մը շինել։ Արծաթագին հեթանոս ծառայ մը՝ եթէ ծառայութեան ժամանակ մկրտուի, ազատ պիտի թողուի, ճշդիւ այնպէս՝ իբր թէ իրեն համար տրուած գինը վաստըկած ըլլայ։ Եթէ չ'ուզեր մկրտուիլ այնպիսին, տէրը կրնայ զինք ուզած մարդուն ծախել։ Քրիստոնեայ ծառայ մ'ալ ազատ պիտի թողուի, եթէ տէրն անոր մէկ աչքը հանած է. այս դէպքին՝ հեթանոս ծառայ մը կէս գնով պիտի ծախուի։ Ծառայի մը ունենալ եւ քահանայութեան ընդունակ ըլլալն բաւական պատճառ չէ զինք տիրոջն իշխանութենէն ազատելու. բայց անոր հաւանութեամբը կրնայ եկեղեցական աստիճան ընդունիլ։ Ս. Գրոց համեմատ, թէեւ ոչ ճշդիւ միաբան, Հայ իրաւունքը կ'որոշէ՝ հօր մը կարօտութեան ժամանակ իւր աղջիկը քրիստոնէի մը ծառայութեան վաճառելու դէպքն, եւ անոր յարաբերութիւնն առ տէրն։ Այս դէպքին՝ հայրն աղջիկը մշտնջենաւոր ծառայութեան չի կրնար ծախել. իսկ տէրը չի կրնար զաղջիկն ատելուն համար ուրիշի մը ծախել՝ երբ անոր ծառայութեան վրայ գոհ չէ. այս դէպքիս հայրն իրաւունք ունի աղջիկն ետ գնել։ Նաեւ ծառայութեան որոշեալ ժամանակն անցնելէն յառաջ՝ կրնայ աղջիկը ետ գնուիլ։ Եթէ տէրն ուզէ իւր աղախինն որդւոյն կին ընել, կարող է միայն աղջկան հօրն հաւանութեամբը։ Եթէ ոչ տէրն եւ ոչ անոր որդին կ'ուզեն զինք կին առնուլ, աղջիկն իւր գինը վաստըկելէն ետեւ՝ ազատ պիտի թողուի։ Հայ իրաւունքը կը յիշէ նաեւ վարձեալ ծառաներ, բայց ասոնց իրաւաբանական դիրքն մանրամասն չ'որոշուիր։

Ինչպէս ծառայք տերանց, նոյնպէս տղաք ծնողաց իշխանութեան տակ են։ Հայրը կրնայ, — ինչպէս արդէն յիշեցինք, — իւր աղջիկը ի ծառայութիւն վաճառել. բայց այս իշխանութիւնն ալ սահմանաւորեալ է։ Բարի քրիստոնեայ ծնողք, որոնք աստուածային պատուիրանաց համեմատ կ'ապրին, ոչ միայն կրնան իրենց տղաքն իրենց ուզածին համեմատ կրթել, այլ եւ պարտական են զանոնք գիտութեան եւ արուեստի մը մէջ կրթել տալ։ Անիծից արժանի կը նկատուի տղաքն անոր համար գիտութեան չզբաղեցընելն՝ որ վանական կեանքն խիստ է եւ ճիշդ պարտաւորութիւն կը դնէ։ Նոյնպէս արժանի անիծից է անհնազանդն ծնողաց, զանոնք թշնամանողն կամ մարմնաւորապէս հարստահարողը։ Այսպիսի անգգամ տղաքը կարող են ծնողք, եթէ տղայութեան տարիքն անցած է, եկեղեցականաց եւ Աւագանւոյն առջեւ յանդիմանել, եւ եթէ չարութեան եւ անհնազանդութեան մէջ յամառին՝ ժառանգութենէ բոլորովին զրկել։ Եթէ տղան զղջալով ծնողաց դառնայ, ծնողք պարտաւոր են անոր սէր ցուցընել։ Թէեւ այս օրինաց մէջ օրինաւոր եւ ապօրինաւոր զաւակաց զանազանութիւն մը չի յիշուիր, սակայն չի կրնար տարակուսուիլ՝ որ յիշեալ որոշմունք միայն օրինաւոր զաւակաց համար են։ Ամուսնութեան կատարման մասին միայն կ'որոշուի, որ ամուսնացելոց բարեկամներն հարսանեաց պէտք են հրաւիրուիլ, երբ փեսան նախ հարսին հօրը հետ օժտի մասին դաշնադրութիւն մը պիտի ընէ։ Եթէ հայրը մեռած է, այն ատեն որդիք կը պարտաւորին իրենց ամուրի քերց օժիտ մը տալ՝ հայրենական ստացուածներն մէջերնին բաժնելէն յառաջ։ Երկրորդ ամուսնութեան մասին կ'որոշուի՝ որ երկրորդ անգամ ամուսնացողայրն պատերազմի ծառայութենէն ազատ պիտի ըլլայ, որպէս զի նոր ամուսնութիւնը կարենայ վայելել։

Անչափահաս անհայր տղոց ստացուածքները կը կառավարէն Աւագանին իբրեւ յանձանձիչ: Մանչերն մինչեւ 20ը տարին յանձանձչի տակ պիտի ըլլան. իսկ աղջկունք այնչափ ատեն՝ մինչեւ որ վաւերաբար ամուսնանան, որ դէպքին իրենց էրիկը կ՚ըլլայ յանձանձիչ: Ինչպէս էրիկը կնոջ, նոյնպէս արու ազգականք կրնան յատենի ներկայացուցիչ ըլլալ կին ազգականաց: Շատ ազգականաց մէջ առաջնութիւն ունի այն՝ որ ըստ աստիճանին՝ մերձաւորագոյն ազգականն է: Խեղին եւ առ հասարակ ինչքը վարելու անկարող եղողին ինչքերն եղբարքը պարտական են պահել, մինչեւ որ առողջանայ: Եթէ առողջութեան յոյս չկայ, եղբարքն պարտական են զինք անոր ստացուածքին մասէն կերակրել եւ կարեւորները հոգալ: Անորոշ է այն որոշումն թէ այն այրն՝ որ մեռնելով թողած է այրի մը, որմէ ամենեւին որդի չէ ունեցած, կրնայ՝ եթէ կինն ամուլ է, միայն իր եղբարքն ու ազգականները նաեւ կին ազգականն յանձանձիչ կարգել, եւ թէ այն ստացուածներն, զոր կինն հետը բերած է, եւ անոնց աճած մասերն կնոջ ետ պիտի տրուին: Նոյնը կ՚արժէ եթէ կինն էրկանէն յառաջ մեռնի: — Նաեւ իրաւանց ուրիշ մասանց մէջ ազգականութեան յարաբերութիւնն ազդեցիկ կ՚երեւայ:

Իրաց իրաւունքն այս դատաստանագրքին մէջ շատ նուազ զարգացած է: Եթէ ժառանգական ստացուածքի մասին որոշմունք չըլլային, չէր կրնար հաստատուիլ, որ հայ իրաւունքն իրաց իրաւունք կը ճանչնայ: Թէ հայ իրաւունքն օտարին իրերուն իրաւունքն, ինչպէս հռովմէական իրաւանց մէջ որոշուած է, կը ճանչնար, իւր որոշումներէն չի կրնար իմացուիլ: Այս որոշումներէն ոմանք թէեւ պտուղը վայելելու եւ անշարժ գրաւի վրայ կը խօսին. բայց այս իրաւունքներն բուն հռովմէական իմաստովը բնաւ իրաց իրաւունք չեն ըմբռնուած, կամ գէթ իբրեւ այսպիսի չեն ներկայացուած: Այս մասին որոշ-

մունքներն յէականս առնուք են. Եթէ պարտապանն իւր պարտատիրոջ կամաւորապէս անշարժ գրաւ մը կու տայ, վերջինը կը պարտաւորի ընդունիլ. բայց ոչ ոք պարտատէր իւր պարտապանէն կրնայ բռնութեամբ գրաւ մ՚առնուլ՝ չվճարելուն համար: Միայն երբ արջառն օտար արտ մը վնասած է, օրինաւոր է զայն գրաւել, բայց առանց վնասելու: Գրաւի իրաւանց առարկայ կը նկատուին՝ տուն, պարտէզ, ագարակ, այգի, արջառ եւ ոչխար, հանդերձեղէն, պտղատու ծառեր, ոսկի եւ արծաթ, եւայլն: Ձեռաց աղացք կամ աղացքի քար գրաւ առնուլ կ՚արգելուի ընդ պատժով, եւ եթէ կարօտեալ մ՚ի կարօտութենէ ստիպեալ նոյնը գրաւ դրած է, ետ պիտի տրուի եւ վիճակին համեմատ՝ վճարման ժամանակամիջոց մը պիտի շնորհուի: Այսպէս նաեւ այրիներէն ոչ հանդերձեղէն եւ ոչ ուրիշ շարժական իր կրնայ գրաւ առնուիլ, վասն զի այրեաց ողորմած ըլլալու է, ինչպէս Աստուած Հրէից յԱլքայիր կամ յԵգիպտոս ողորմածութիւն ցուցուց: Եթէ արուեստաւոր մ՚իրեն շինելու տրուած ասուին կամ ուրիշ նիւթ մը գրաւէ, կը պարտաւորի անմիջապէս նոյնն ըստ գնոյն գնել: Դրամի իրաւունքը գրաւեալ իրին ստացումը կը շնորհէ միշտ, եւ գրաւեալ իրէն կրնայ առնուիլ պարտքն ու իրին վրայ եղած ծախքերն: Անոր համար հատուցանելու ժամանակին անցնելէն եւ երեք անգամ ազդարարութիւն ընելէն ետեւ՝ գրաւեալ իրն երկու վկայից առջեւ աճրդի պիտի հանուի, եւ պարտքը մէջէն առնլէն ետեւ՝ աւելին պարտապանին պիտի դարձուի. եւ եթէ պարտատէրը գրաւեալ իրը գործածելով՝ պարտքի գումարէն աւելի շահ մ՚ըրած է, այն ալ հաշուի մէջ պիտի առնուի: Պարտատէրը նոյնպէս կը պարտաւորի հատուցանել այն վնասը, զոր գրաւեալ իրը կրած է իւր յանցանօքն կամ անհոգութեամբ, եւ հետեւաբար կը պարտաւորի գրաւեալ իրը պահպանել եւ կորսնցնելէն զգու-

շանալ։ Անոր համար գրաւող պարտատէրն կը պարտաւորի վնասուն հատուցման, եթէ գրաւած ոսկին կամ արծաթն եւ այլն գողցուի կամ որեւէ կերպով կորսուի, կամ երբ ինքն իրը ծածկէ։ Առաջին դէպքին՝ եթէ անմեղութիւնը չի կրնար ցուցընել, կը պարտաւորի հատուցման. իսկ վերջին դէպքին՝ իրին կրկին գինը վճարելու։

Գրաւման իրաւունքը կը դադրի ոչ միայն պարտապանին հատուցմամբն, այլ նաեւ եթէ պարտապանն 30 տարի իրն ետ չպահանջելով՝ պարտատէրը գրաւեալ իրին տէրութիւնն ստացած ըլլայ։ Դադարման ուրիշ եղանակներ չեն յիշատակուիր, եւ ոչ ալ օրինական գրաւի իրաւունք մը կ'որոշուի։ Կրնան նաեւ իբրեւ գրաւ նկատուիլ ըստ մասին՝ Հայ իրաւանց մէջ գործածութիւնը վայելելու կանոնաւոր որոշմունքներն։ Ասոր մէջ միայն այն դէպքը կը յիշուի, երբ մէկն ի հարկէ կարօտութեան՝ ուրիշի մը կը թողու որ իւր ագարակին գործածութիւնն ունենայ, կամ՝ ինչպէս բնագիրը կ'ըսէ, նոյնը ծախէ։ Այս դէպքիս մէջ ազգականք կրնան վճարմամբ ետ գնել. եթէ ազգական չկայ, գործածութիւնը ծախողն ալ կրնայ նոյնին որոշեալ ժամանակամիջոցը չանցած՝ ետ գնել։ Եթէ թէ՛ ինքն եւ թէ՛ մէկ ազգականն գործածութեան վաճառմանէն ետեւ եօթ տարւոյ միջոցին մէջ պարտքը չեն վճարեր, գնողը գնուած իրին ճշմարիտ տէրը կ'ըլլայ, եթէ այս մասին երկու կողմանէ ուրիշ որոշում մը չէ եղած։ Այսինքն՝ ազգականաց եւ ծախողին ետ գնելու իրաւունքն ըստ օրինի եօթը տարի ետքը կ'ոչնչանայ. եւ որովհետեւ ատով գործածութիւնն այնուհետեւ անբռնաբարելի եղանակաւ գնողին քով կը մնայ, անիկայ ըստ իմիք ագարակին տէրը կ'ըլլայ։ Կ'երեւայ թէ այս է այն ոչ բոլորովին լուսաւոր որոշման իմաստն։ Այս մեկնութիւնն այնու կը զօրանայ՝ որ ամենեւին յիշատակութիւն մը չկայ անկախ գործածութեան կամ օտա-

րին ընչից վրայ իրական իրաւանց, որով նոյներուն գործածութիւնն ու վայելումը բուն տիրոջը բոլորովին զլացուի։ Այս կարգի անձնական իրաւանց յարաբերութիւնք Հայ իրաւանց անծանօթ կ'երեւան։

Վերոյիշեալներէն զատ՝ իրաց իրաւանց որոշմունք են նաեւ պատերազմի աւարի, գիւտի եւ իրին տիրոջը լքելու մասին տրուածներն։ Ով որ պատերազմի մէջ բան մ'աւար կ'առնու, կրնայ անոր վրայ ազատ տրամադրել. վասն զի պատերազմի իրաւանց ի թագաւորաց եւ յիշխանաց առանձինն արտօնութիւններ տրուած են, եւ նոյն իսկ եկեղեցական իրաւունքը կը թողու այս ինչքերէ ողորմութիւն տալ։ Գտնուած բան մ'իր ծանօթ տիրոջը պիտի տրուի առանց մէջէն բան մ'առնլու։ Եթէ տէրն անծանօթ է, գտնողն գտածը դրացեաց պիտի ծանուցանէ եւ տանը մէջ պիտի պահէ մինչեւ որ տէրը ճանչցուի եւ ստուգուի, եւ այնուհետեւ իրը պիտի տրուի տիրոջն՝ եղած ծախքերուն հատուցումն առնլէն ետեւ։ Եթէ մէկն գանձ մը գտնէ, որուն հին թագաւորաց ըլլալը ծանօթ ըլլայ, գտնողն անոր 10դ մասը պիտի առնու եւ մնացածը թագաւորական գանձուն պիտի տայ։ Եթէ գանձն օտարին երկրին վրայ գտնուած է, նաեւ երկրին տէրը նոյնին 10դ մասը պիտի ընդունի։ Իսկ եթէ ստոյգ է՝ որ գանձուն տէրն իշխան կամ թագաւոր էր, եւ գանձուն գտնուած երկրին ժառանգը կամ օրինաւոր յաջորդը կայ, այն ատեն իրին 10դ մասը թագաւորական գանձուն, իսկ մնացածն երկրատիրոջ պիտի ըլլայ։ Վերջապէս իրի մը տէրն ըլլալու մասին կ'որոշուի, թէ գրաւող պարտատէրն գրաւեալ իրին տէրն է, եթէ գրաւեալ իրին տէրն իրարու յաջորդող 30 տարւոյ միջոցին մէջ նոյնն ետ չէ պահանջած։

Հայ իրաւունքն աւելի բան կը բովանդակէ Գոշանց, եւ ի մասնաւորի առեւտրկան դաշանց մասին։ Ձի, եզ, մեղու ծախելու համար 2 կամ 3 վկայ պիտի կոչուի, որպէս զի չըլլայ թէ գողոնի կամ

պակասաւոր իր մը ծախուի։ Ժառանգական անշարժ իրաց վաճառումն չի կրնար առանց ծախողին տղոցն, եղբարցը կամ այլ ազգականացն ըլլալ, որոնք իբրեւ ժառանգ նոյն ստացուածոց՝ իրեն պիտի յաջորդեն։ Այսպիսի վաճառման մը հաստատութիւնն հայ դատաւորաց առջեւ պիտի կատարուի, եւ իրենց կնքաւը վաւերացեալ հրաժարման եւ գնման վաւերագիրն թագաւորական վաւերագրի մը հաւասար զօրութիւն պիտի ունենայ։ Եթէ այսպիսի վաճառում մը առանց յիշեալ անձանց հաւանութեան եւ վկայութեան կատարուի, անոնք ազգականութեան իրաւամբք՝ իրաւունք ունին գնողը գնած երկիրներէն մերժել՝ եւ անոր տեղն անցնիլ։ Նոյն իրաւունքը կրնան վաճառման դաշանց կատարմանէն սկսեալ մէկ տարւոյ միջոցին մէջ՝ նոյն իսկ այն ատեն գործադրել, երբ վաճառումն իրենց հաւանութեամբ, բայց ի կարօտութենէ եղած է։ Նոյնը կ'արժէ նաեւ ի կարօտութենէ վաճառեալ տան համար, որ քաղաքին մէջն է, եւ կամ ջաղացքի համար։ Եթէ կալուածոց վայելումն կարօտութեան պատճառաւ ծախուի, վերոյիշեալք ունին ամենէն յառաջ գնելու իրաւունք, եւ նոյն իսկ վաճառման կատարուելէն սկսեալ եօթը տարի անցնելէն ետեւ ալ. նոյնպէս եթէ արուարձանեայց մէջ տներ, ագարակներ եւ պարտէզ ծախուելու ըլլայ։ Բայց ասկէ՝ ագարակաց վայելումը կարօտութեան պատճառաւ ծախողն ալ եօթը տարւոյ միջոցին մէջ ետ գնելու իրաւունք ունի. եւ անիկայ՝ որ հարստէ մը տուն գնած է, բայց աղքատութեանը պատճառաւ չի կրնար գինը վճարել, իրաւունք ունի տունը ծախողին ետ դարձնելու։

Նաեւ շարժական իրերու վաճառման դաշինքն ալ ոչինչ նուազ սահմանաւորում ընդունուած է։ Գնեալ ձի կամ եզ՝ պակասութեան պատճառաւ գնման կատարուելէն սկսեալ եօթն օրուան միջոցի մէջ. ուրիշ իրեր, — ինչպէս գինւոյ տակառ՝ որ

վնասեալ կը ճանչցուի, կամ՝ որ խոստացուածին համեմատ ամէն տարի չի ծնանիր, — Նոյն իսկ տարւոյ մը միջոցին մէջ կրնան ծախողին ետ դարձուիլ։ Եթէ ծախողն յայտնապէս ապահովցընէ, որ ապրանքն անխարդախ եւ անպակասաւոր է, ուր գիտէ թէ այնպէս չէ, գնողն առանց ժամանակամիջոցի մը կապեալ ըլլալու՝ իրաւունք ունի գնած իրն ծախողին դարձընել պակասութիւնը ցուցընելէն ետեւ, եւ վերջինս բաց ասկէ՝ կրնայ նաեւ պատժուիլ։ Նաեւ մեղու եւ պտղոյ ծառեր գնելու ժամանակ պակասութեան պատճառաւ՝ 10 մինչեւ 20 օրուան միջոցին մէջ նոյնն ետ դարձընել յայտնապէս կը շնորհուի։ Նաեւ եթէ գնումն եղած է գնոյն մէկ մասը վճարելով՝ եւ դաշինքը լուծել կ՚ուզուի կարելի է եթէ վաճառողն ընդունած գնոյն կրկինը տայ, եւ կամ գնողն վճարածէն հրաժարի։ Բայց ընդ հակառակն անիկայ՝ որ բան մը ծախած է գնոյն մէկ մասը միայն կանխաւ առնլով, չի կրնար առանց հաւանութեան գնողին իրն երրորդի մը ծախել։ Գնողին իրաւանց մասին յիշենք նաեւ զայն՝ որ ինքը կրնայ գնած անասունն, որուն գողունի ըլլալը կը հաստատեն այլք, իւր արուեստին Մեծին տանիլ, որ պարտական է անոր հոգը վրան առնուլ եւ չթողուլ որ անիկայ վնասուի։

Բաց ասկէ՝ Հայ իրաւունքն ուրիշ քանի մը դաշանց մասին ալ ինչ ինչ որոշումներ ունի։ Այսպէս ի մասնաւորի ջաղացքի մը վարձակալութեան, ի ծառայութիւն վարձելու՝ գործակալութեան, փոխառութեան, աւանդի եւ վարչութեան դաշանց վրայ։ Ջաղացքի վարձակալութեան համար հարկ է վկայից առջեւ որոշ չափ մը հաստատել, զոր վարձակալն հատուցանել կը պարտաւորի։ Եթէ աւելի վաստըկի՝ իրենն կը մնայ։ Բայց ի փոխարէն կը պարտաւորի ջաղացքի ամէն պէտք եղածն հոգալ ու կարգադրել, եւ ինչ որ սովորական եղանակաւ կը փճանայ՝ նորոգել։ Նաեւ այն վնասն, զոր ջաղացքն

կամ անոր կահուկազմածն կը կրեն իւր անհոգութեամբն, եւ ինչ որ ջաղացքէ կը գողցուի, պարտաւոր է հատուցանել։ Նոյնպէս կը պարտաւորի ջաղացքին յանցաւոր կերպով այրելուն։

Չրի աւանդապահն կը պարտաւորի հատուցանել, եթէ պահելու առած իրերէն բան մը գողցուի. բայց ոչ՝ եթէ կրնայ երդմամբ ցուցընել որ գողութեան մէջ իրօք յանցանք չունի։ Սակայն այս երդումն այն ատեն միայն ընել կը տրուի, երբ աւանդատուն բաւական վաւերագիր չունի ընդդէմ աւանդառուի. վասն զի աւանդատուն եթէ վաւերագիր ունի, կրնայ աւանդ տուած իրն աւանդառուէն պահանջել։ Ով որ օտարին ձին, եզն, ոչխարը կամ ուրիշ արջառն պահել յանձն առած է, կրնայ անոնց սպաննուելուն կամ վիրաւորուելուն կամ բռնաբար յափշտակուելուն հատուցմանէն ինք զինք ազատել, եթէ այս վնասուց պատճառն անծանօթ ըլլայ, եւ ինք երդնու՝ թէ ինք անոնց ամենեւին պատճառ չէ, եւ կամ՝ երբ վնասը վայրի գազան մ՚ըրած է, զաւանդատուն վնաս հանդիպած տեղը տանի եւ իրը ցուցընէ։ Բայց իրմէ գողցուած արջառին հատուցման պարտական է։ Եթէ մէկը վարձուած է պանդոկի մը մէջ թողուած ապրանքներու վրայ հսկել, կը պարտաւորի իրին հասած ամէն վնասուց, ինչ պատճառէ ալ ըլլայ, ի բաց առեալ զուտ պատահական վնասն։

Եթէ մէկն ուրիշին զէնք փոխ տուած է, փոխառուն նոյնին վնասուն կամ կորստեան պատասխանատու չէ, եթէ փոխատուն վնասուն կամ կորըստեան ներկայ էր։ Նոյնը կ՚արժէ նաեւ ուրիշ իրեր փոխ տալու մէջ։ Գործաւորն տիրոջը գործիքներուն վնասուն հատուցման այն ատեն կը պարտաւորի, երբ նոյնն իրեն՝ եւ ոչ տիրոջը համար կը գործածէ, եւ նոյնին գործածութիւնն իրեն ձրի թոյլ տրուած է։ Եւս աւելի, երբ գործաւորն առանց գիտութեան եւ հաւանութեան տիրոջն՝ անոր գործիքը

գործածելու ըլլայ։ Նոյնպէս արուեստաւորն որոշ գնով բան մը շինելու առած նիւթին վնասուն կամ կորստեան կը պարտաւորի միայն այն ատեն, երբ կերպով մը յանցաւոր է։ Այսպէս եթէ իրը կորսընցընէ, գինը պէտք է որ հատուցանէ. Նոյնպէս եթէ իրեն տրուած ասուին ցեց կամ մուկն ուտէ՝ պիտի հատուցանէ։ Բայց եթէ իրն քովն եղած ժամանակ՝ առանց պատճառ ըլլալու այրելու ըլլայ, վնասուն պատասխանատու չէ։ Կը պատժուի եթէ տրուած նիւթէն մաս մը գողութեամբ անձին պահէ։ Նոյնպէս՝ եթէ իրն պայմանեալ եղանակաւ չշինելով՝ տիրոջը վնաս հասնելու ըլլայ, տէրը կրնայ համեմատաբար վար առնուլ գնէն, զոր եւ անիկայ յանձն պիտի առնու, եթէ չ՚ուզեր գործոյն պակասութիւնն ուղղել։ Ընդ հակառակն՝ երբ իւր պարտաւորութիւնները կատարած է, լիուլի իրաւունք ունի սակարկեալ վարձքը պահանջելու։ Եթէ շատ գործաւորք որեւէ գործքի մը վարձեալ են, աւելի գործողներն աւելի վարձք պիտի ընդունին։ Նոյնպէս վարձուած ծառայից կամ աղախնեայց սակարկեալ վարձքը ծառայութեան ժամանակն անցնելէն ետեւ՝ չի կրնար զլացուիլ։ Գործք կամ յանձնարարութիւն մը կատարելու մասին կ՚որոշուի, որ նոյն իսկ այն ատեն, երբ ուզուած գործքը կարելի չըլլայ գործադրել, հարկ է գործքը գործադրել յանձն առնողին աշխատութեանց եւ հոգոց հատուցումն ընել։ Վերջապէս նաեւ փոխատուութեան մասին կ՚որոշուի, որ պարտատէրը չճնշէ զանիկայ՝ որ աղքատութեան պատճառաւ չի կրնար ժամանակին պարտքն հատուցանել. այլ անոր վիճակին համեմատ՝ ժամանակամիջոց մը շնորհէ։ Եւ թէ ինքն եւ թէ յաջորդն ասոր համար ամենեւին շահ պիտի չպահանջեն. եւ եթէ շահ վճարուած է, դրամագլխէն վար պիտի առնուի։

Պարտաւորիչ յարաբերութիւնք դաշինքէ զատ կրնան յառաջ գալ նաեւ այն գործքերէ,

որոնցմէ վնաս մը հասած է, եւ կամ ուրիշ եղանակաւ: Արդէն յիշեցինք շատ դէպքեր, յորս վնաս հասցընելն հատուցման կը պարտաւորէ: Հայ իրաւունքն այս հիմնական սկզբունքն ընդհանրապէս ճանչցած է. եւ թէեւ ասիկայ իրաւագրքին մէջ յայտնապէս գրուած չէ, բայց օրինաց մէջ յառաջ բերուած նոյնպիսի շատ դէպքեր ասոր վրայ տարակոյս չեն թողուր: Բայց աւելի պատշաճ է զասոնք իրաւագրքին պատժական իրաւանց որոշմանց հետ նկատել:

Պէտք ենք հոս նաեւ պարտապանին ստացուածոց տէր ըլլալն եւ նաւաբեկեալ իրերն ազատելու օգնութիւնն յիշատակել: Աղքատ պարտապանին ստացուածոց տէրն ըլլալու մասին՝ յայտնապէս կ'ըսուի, թէ պարտապանք պարտական են հատուցանել իրենց պարտքն, բայց ոչ՝ նաեւ շահն: Իսկ այն պարտքերն, զոր անչափահասք առանց հաւանութեան ծնողաց կամ ազգականաց առած են, իրենց յաջորդները պարտական չեն հատուցանել. բայց պարտատէարք կրնան անչափահասին սեպհական ստացուածքը գրաւել: Նաւաբեկեալ իրերն ազատելու մատուցուած օգնութեան մասին կ'ըսուի, թէ հայ իրաւանց համեմատ՝ այսպիսի օգնութեան փոխարէն չի կրնար պահանջուիլ. բայց ոստիկանք կրնան այսպիսի օգնութիւն մը մատուցանել, եթէ քաղաքին մօտ նաւ մը խորտակի, բայց նաւը պիտի չփճացընեն. իսկ մատուցած օգնութեան փոխարէն՝ կրնան ստացուածոյ 10դ մասը, եւ եթէ ասիկայ բաւական չերեւայ, 5դ մասն իրենց պահել, եւ մնացածը տիրոջ դարձընել:

Վերջապէս յիշենք, որ հայ իրաւանց համեմատ՝ պարտք մը պահանջելու իրաւունքը կը կորսուի, եթէ իրարու յաջորդող 30 տարւոյ մէջ չի գործադրուիր:

Հայ իրաւագրքին ժառանգութեան իրաւանց մասին տուած քանի մը որոշմանց հիմն՝ ինչպէս

կ'երեւայ, է կամաց վերջին որոշումն: Այս վերջին որոշման մասին կը հրամայուի, որ ըլլայ ներկայութեամբ եկեղեցականի, Աւագանւոյ մէջէն կտակագրին վիճակակից 2 կամ 3 անստգիւտ անձանց եւ իրեն ազգական յաջորդաց: Նախ եւ յառաջ եպիսկոպոսին, քահանայից եւ իւր եկեղեցւոյն բան մը պիտի կտակուի եւ հանգստարանը պիտի նշանակուի: Ստացուածոց մնացած մասը կտակագիրն ըստ իւր կամաց՝ ազգականաց եւ բարեկամաց կրնայ կտակել: Վերջին կամաց որոշման վկաները պիտի ծանուցանեն այս ազգականաց՝ որ կրնան նոյն որոշման ընդդիմանալ քանի որ կտակագիրը կ'ապրի. ապա թէ ոչ՝ կտակագրին մահուանէն ետեւ՝ որոշմունքն անարատ եւ ազգականաց ու յաջորդաց ընդդիմութեան հակառակ՝ պիտի գործադրուի: Կտակագիրն ազատ է ըստ կամի իւր կտակը փոխել. ի մասնաւորի ազատ է՝ արդէն օժիտ առած դուստրներէն աւելի բան որդւոցը թողուլ: Բայց կրնայ նաեւ դստերաց կտակել ուզածն, առանց իւր որդւոց կամ յաջորդաց ընդդիմութեան անսալու: Եւ նոյն իսկ կարելի է, ինչպէս յիշուեցաւ, բոլորովին անժառանգ ընել որդիքն՝ ինչ ինչ պարագայից մէջ: Եթէ եկեղեցւոյ մը՝ այգի, տուն, ջաղացք, ագարակ եւայլն կտակուած է, իսկ եկեղեցին դժբախտաբար այրած եւ անհետացած է, այն ատեն կտակեալ իրաց մուտքն եկեղեցւոյ նորոգութեան կամ նոր շինութեան պիտի գործածուի գիտութեամբ եւ հաւանութեամբ եպիսկոպոսին, եւ նոյն իսկ այն ատեն՝ երբ եկեղեցին յառաջուան տեղը չկարենայ շինուիլ, ժողովրդեան այլուր բնակութիւն հաստատած ըլլալուն համար:

Եթէ մէկը վերջին կամքը չյայտնած վախճանի, իւր որդիքն ու դստերքն հաւասարապէս եւ հաւասար բաժնով հայրական եւ մայրական ստացուածքները կը ժառանգեն: Եթէ որդի չկայ, դուստրը բոլորը կը ժառանգէ: Եթէ ոչ որդի եւ

ոչ դուստր կայ, եղբարքն եւ եղբօրորդիք, եթէ անոնք ալ չկան, քոյրք եւ քեռորդիք կը ժառանգեն։ Եթէ ոչ հօր եւ ոչ մօր կողմանէ ազգական կայ մինչեւ 4դ աստիճան, ստացուածքը թագաւորական գանձը կը ժառանգէ։ Սակայն թագաւորն ասկէ մաս մը հանգուցելոյն հոգւոյն փրկութեան պիտի նուիրէ։ Ժառանգելու յօրինաց իրաւունք ունեցող ազգականք ստացուածոց երեք մասը կը ժառանգեն՝ եթէ հանգուցելոյն կնոջ հետ միաբանին. վասն զի ասիկայ իւր բերած ստացուածքէն եւ նոյնին եկամուտէն զատ՝ ժառանգութեան չորրորդ մասն առնլու իրաւունք ունի։ Ուրիշ դիպաց մէջ այրւոյն ստացուածոց իրաւունքը չի յիշուիր։ Տղաք, որոնք համր կամ այլ նոյնպիսի բնական խեղութեամբ ծնած են, ժառանգելու իրաւունք չունին։ Եթէ եղբարք հայրենի ինչքն իրենց մէջ բաժնեն, նախ պէտք է որ իրենց կանանց ստացուածոց մուտքն մէկ դի առնուի. այնուհետեւ իրենց հօրմէն ընդունած ամենայն ինչ ի մի գումարուի եւ հաւասարապէս բաժնուի։ Թէ եղբարք հայրենի ինչից բաժանմանէն յառաջ՝ իրենց ամուրի քրոջ կանխաւ օժիտ մը տալու պարտք ունին, արդէն յիշեցինք։

Ցայսր յառաջ բերուած հայ իրաւանց շատ որոշումներուն վրայ Սիկիզմունտ թագաւորը քննութեան ժամանակ նոր յաւելուածներ ըրաւ, որով որոշմունք ըստ մասին փոխուեցան, մեկնուեցան կամ բարձան։ Այսպէս թագաւորն անազատից նկատմամբ տրուած որոշմունքներէն շատերը կը հաստատէ, որոնք թագաւորութեան մէջ մինչեւ այն ատեն եւ յետոյ անծանօթ էին։ Երկրորդ ամուսնութեան պատճառաւ պատերազմի ծառայութենէն ազատութիւնը կը սահմանաւորէ միայն այն դէպքին վրայ, երբ նոր ամուսնացեալը չունի այնպիսի ստացուածներ, որոնք պատերազմի պարտաւորութիւն յառաջ կը բերեն։ Շատ որոշումներու մասին կը նշանակուի՝ թէ այն ատեն միայն կ՚արժեն, երբ

ամբաստանեալ կողմն հայ է, կամ երբ դատն հայ ատենին ենթարկեալ է. այսպէս են որոշմունք շարժական իրաց պահպանութեան, անշարժ իրաց վաճառման կամ ագարակաց գործածութեան: Օտար անաստուն գտնելու մասին տրուած որոշմունք այն ատեն միայն զօրութիւն կ'ունենան, երբ աւանին կամ քաղաքին պաշտօնարանին ծանուցուի գիւտն: Իսկ գանձ գտնելու մասին կը սահմանուի, որ թագաւորական յանձնախումբն իրը քննէ: Աղքատ պարտապանաց մասին տրուած մեղմ որոշումներն այն ատեն միայն պիտի գործադրուին, երբ պարտապանն առանց յանցանաց չքաւոր եւ հատուցանելու անկարող եղած է: Վերջապէս այն որոշումն՝ թէ թագաւորն կամ արքունի գանձը ժառանգած անժառանգ ստացուածքէն մաս մը հանգուցելոյն հոգւոյն պիտի նուիրէ, կը բարձուի ըսելով՝ թէ թագաւորն այսպիսի ստացուածոց վրայ, զոր ծածկելն ծանր պատժոց կ'ենթարկուի, կը տրամադրէ ինչպէս իրեն հաճոյ կ'երեւայ:

## 4.

Պատժական օրէնաց մէջ ալ ի զուր է ընդհանուր սկզբունքներ փնտռել: Սակաւաթիւ որոշումներէն մին կը բովանդակէ սա նախադասութիւնը՝ թէ Ոչ ոք օտարին գործոյն համար պիտի պատուհասի, անոր համար ո՛չ ծնողք որդւոց չար գործոցն համար, եւ ո՛չ ասոնք անոնց յանցանաց համար պիտի պատուհասին: Եւ նաեւ ուրիշ պարագաներու մէջ, որ տեղւոյն պիտի յիշուին, այս նախադասութիւնը կ'երեւայ: Պատժական օրինաց երկրորդ յայտնի որոշումն է՝ թէ Զուտ պատահական վիրաւորումը չի կրնար յանցանք համարուիլ: Չար գործոյ մը պատժելի ըլլալուն վրայ ազդեցութիւն ունի ամէնէն յառաջ միտասուն կամ վիրաւորման մեծութիւնը, եւ բաց ասկէ՝ նաեւ չարագործին հասակն եւ հոգեկան վիճակը, գործելու եւ գործոյն իմա-

ցուելու ժամանակը, վնասուողին կրօնն եւ այլ բաղում ինչ, զոր նոյնպէս տեղւոյն կը յիշենք։ Սակայն պատժելի է իրաւանց ամէն բռնաբարութիւն, եթէ կամաւոր կամ գէթ կերպով մը յանցաւոր է։ Այլեւայլ պատժելի գործողութեանց մէջ՝ քաղաքական եւ յանցանաց իրաւանց բռնաբարութեան զանազանութիւնն հայ իրաւանց անծանօթ է, ինչպէս նաեւ միջինդարեան ուրիշ իրաւանց։ Թէեւ յաճախ յանցաւոր գործողութիւններ կը յիշուին, սակայն բառին իմաստն այժմու գործածութենէն կը տարբերի, եւ կը նշանակէ գլխաւորաբար՝ մահուան արժանի գործք։

Օրէնքը մահու արժանի կը ճանչնայ նախ թագաւորին կամ տիրոջ դէմ գործուած յանցանքը։ Այսպիսի յանցաւոր մը գլխապարտ է. որդիքն ու եղբարքն իւր աստիճանին չեն կրնար հասնիլ, բայց ասոր համար հայրենի ստացուածքէ չեն զրկուիր, ի բաց առեալ՝ եթէ յանցաւորին հետ միաբանած էին, որ դէպքին՝ իւրաքանչիւր իւր գործքին համեմատ պիտի պատժուի։ Նոյնպէս աւազակն եւ հասարակաց խաղաղութեան վրդովիչն գլխապարտ է։ Գողութեան ժամանակ բռնուած գողը կը կախուի. իսկ անիկայ որ թշնամութեամբ կրակ կը ձգէ ուրիշին տունը եթէ նոյն գործողութեան ժամանակ բռնուի՝ հրով պիտի այրի ինչպէս որ հրով յանցաւոր գտնուեցաւ։ Եթէ հրձգութեան ժամանակ չի բռնուիր, գլուխը պիտի կտրուի՝ երբ իբրեւ չարագործ չարակամութեամբ գործած է։ Մահապարտ է նաեւ՝ գործքի ժամանակ բռնուող գերեզմանակրկիտն. նոյնպէս անիկայ՝ որ գիշերն ուրիշին տունը կը մտնէ եւ կը գողնայ կամ բռնութիւն մը կ՚ընէ. նաեւ անիկայ՝ որ մէկուն բաները կը գողնայ եւ աւազակաբար կը հարստահարէ. անիկայ՝ որ ճամբան կուսի մը վրայ կը յարձակի եւ կը լլկէ. այն մարդասպանն՝ որ այլեւայլ դատաւորութեանց սահմաններուն վրայ մարդ մը սպանած է,

եւ սպանելոյն ազգականքն զինք ձերբակալած են, թէեւ սպանութենէն ետեւ. վերջապէս նաեւ այն՝ որ դատաւորական վճռոյ մը յանդգնութեամբ եւ լրբութեամբ հակառակիլ կը ժպրհի. վասն զի ատենի անհնազանդութիւնն Աստուծոյ անհնազանդութեան հաւասար է։ Հին օրինաց (կտակարանի) մէջ եթէ տղայք իրենց ծնողքը թշնամանեն՝ մահու արժանի կը ճանչցուին. իսկ Հայ իրաւունքն այս դէպքը ծնողաց իրական նախատման հաւասար կը դնէ, եւ իրաւունք կու տայ ծնողաց այսպիսի տղաքն Աւագանւոյն ամբաստանել, եւ եթէ չարութեան մէջ յամառեալ մնան՝ ժառանգութենէ բոլորովին զրկել։

Հայ իրաւունքը քանի մը յանցանքները փոնձոչան պատժով կը պատուհասէ։ Այսպէս ձեռքը կը կորսնցընէ կամ կը խարուի անիկայ՝ որ օտար քրիստոնեայ ծառայ մը կը գողնայ եւ ծախելէն ետեւ՝ կարող չէ նոյնն իւր առաջին տիրոջը դարձընել, թէեւ այն ծառային փոխարէն առած դրամը բուն տիրոջը տայ։ Նոյնպէս գաղտնի դրամահատութեան ձեռաց կորուստ կը սպառնացուի։ Այն կինն՝ որ երկու իրապէս կռուող արանց զօրագունին ծննդական անդամէն կը բռնէ՝ որպէս զի տկարին օգնէ, ձեռքը կը կորսնցընէ, եթէ ատեանը նոյնին փոխարէն դրամական պատիժ դնել պատշաճ չի տեսներ։

Բանտ եւ դրամական պատիժ կ՚առնու ով որ Հայ մը “հեթանոս„ կամ “անհաւատարիմ„ անուանէ. կամ ով որ ուրիշի մը կինը կամ աղջիկը կը յափշտակէ լոկ՝ առանց անոր հետ ննջելու. կամ ով որ կրակ կը ձգէ եւ գործքէն ետքը կը բռնուի՝ եթէ ասոր ուրիշ պատիժ մը չի տրուիր. վերջապէս նաեւ անոնք կը պատժուին, որոնք երեք անգամ ատենէն հրաւէր ընդունելէն ետեւ՝ որ յատենի ներկայանան, չեն ներկայանար. եւ այն ամէնքն՝ որ դատի ժամանակ խռովութիւն կը հանեն։

[redacted]



Բայց սովորական պատիժն է — ինչպէս միջինդարեան ուրիշ իրաւանց մէջ — դրամական տուգինն: Նոյն իսկ մահը կրնայ դրամով քաւուիլ: Հայ իրաւունքն յայտնապէս կը զանազանէ կամաւոր եւ ակամայ սպանութիւն: Ակամայ սպանութեան իբրեւ տեսակներ՝ քանի մը դէպքեր յառաջ կը բերէ: Այսպէս այն դէպքն՝ թէ երբ մէկն առանց դիտման քար կամ կոճղ մը նետելով՝ կամ փայտ կոտրելու ժամանակ կացինն ակամայ ելլելով՝ կամ ուսուցիչն աշակերտը ծեծելով՝ որդին հօրմէն, ծառայն կամ աղախինը տիրոջմէն, եղբայր եղբօրմէն կամ ուրիշ մը մէկէն առանց մեռցընելու դիտման սպանուելու ըլլայ. ինչպէս նաեւ երբ մէկը խրտչած անսանձ ձիէ մը սպանուի, կամ որսորդն անասնոյ մը վրայ արձակած նետով մարդ մը մեռցընէ: Ընդ հակառակն եթէ մէկն ուրիշ մը մեռցընելու դիտմամբ հալածէ եւ ասիկայ դառնալով զինք մեռցընէ. կամ մէկն հուղկահարներէ յարձակում կրէ եւ ի կարօտութեան զանոնք մեռցընէ. եւ կամ երբ մէկն իւր տնային թշնամին մեռցընէ պատերազմի ժամանակ անոր հանդիպելով. կամ երբ մէկը զուրիշը մեռցընելու դիտմամբ գիշերն անոր ճամբան ու անցքը փակէ. կամ երբ կինն էրիկը կամ զուրիշը թունաւորէ նախանձէն կամ այլազգ մեռցընէ, սպանութիւնը կամաւոր է, ճիշդ այնպէս, իբրեւ թէ սրով մեռցուցած ըլլայ: Յիշեալ կերպով ով որ զուրիշը կը մեռցընէ, գրեալ իրաւանց համեմատ՝ սպանելոյն գլխոյ գինը պիտի հատուցանէ ազգականաց: Չարագործին սեռը դրամական պատժոյ վրայ ազդեցութիւն չունի: Այս գլխոյ պատիժն (poena capitis) է 365 Փլորին: Թէեւ մարդու արիւնն անգին է, որովհետեւ մարդն ըստ պատկերի Աստուծոյ ստեղծուած է եւ Աստուծմէ զատ ոչ ոք կրնայ զմեռեալն ի կեանս կոչել, սակայն հարկ է սպանութեանց առջեւն առնլու համար պատիժ մը սպառնալ: Քան եւ 30 տենարի գինն, որ Ս. Յովսեփայ

եւ Յիսուսի Տեառն մերոյ եւ Աստուծոյ համար կը վճարուէր, ամէն մարդ իբրեւ անարժան բան պէտք է համարիլ: Անոր համար 365 փլորինի գումարը կ'որոշուի, որովհետեւ մարդկային մարմինն 365 անդամ, եւ տարին 365 օր ունի: Յիշեալ որոշումն՝ թէ կամաւոր սպանութեան համար սոյն գումարը պիտի վճարուի, առանց բացառութեան չէ: Քանի մը դիպաց մէջ սպանութեան մահու պատիժ կը սպառնացուի, ինչպէս արդէն տեսանք: Շատ դիպաց մէջ գլխոյ դրամոյն մէկ մասը կը վճարուի: Այսպէս 3դ մասը կամ կէսը կը վճարուի եթէ սպանեալը 10 տարեան չէ, կամ թէեւ 10, բայց չէ 12 տարեան, եւ սպանողն 50ը չէ անցած: Նոյնպէս կէսը կը վճարէ՝ երբ զմէկը ցորեկը գուբ կամ ջրհոր նետելով կը մեռցընէ, ուր՝ ամբողջը կը վճարուի եթէ գիշերը նետուի: Նոյնպէս գլխոյ գնոյն միայն կէսը կը վճարուի էրկան, որուն կինը կռուոյ մը մէջ բռնցի մ'առնու, որով վիժի սաղմն՝ որ տակաւին մարդկային կերպարանք չունի. իսկ եթէ արդէն մարդու կերպարանք առած է, ամբողջ պիտի վճարուի, եթէ այլազգ միաբանութիւն չէ եղած: Քանի մը դիպաց մէջ սպանութիւնը բոլորովին անպատուհաս կը մնայ: Այսպէս երբ գիշերը տան մէջ գող մը գողութեան ատեն սպանուի, պատերազմի եւ անձին պաշտպանութեան համար եղած սպանութիւնն, տան մէջ կատաղի ձիէ մը գործուած սպանութիւնն, որուն տէրը տնեցիներն եւ ուրիշներն զգուշացուցած էր անկէ: Ընդ հակառակն հոգեւոր ատենէն ապաշխարանք կը կտրուի, եթէ ձիուն տիրոջ ըսուած էր վնասակար ձին հեռացընել: Նոյնպէս հետեւեալն յայտնապէս պատժէ ազատ նշանակուած է, այսինքն՝ երբ լուացուող տղոցմէ մին առանց յանցանաց այլոց խղդուի, եւ ասոնք կարող չըլլան զինք ազատել:

Արբեցութիւնն յինքեան չ'արդարացըներ արբեցութեան ատեն գործուած սպանութեան

յանցանքէն, հապա դէպքը ճշդիւ պիտի քննուի եւ պարագայից համեմատ պիտի դատուի։

Միւս կողմանէ սպանութեան փոխարէն գլխոյ դրամը վճարելու համար հարկաւոր չէ բնաւ, որ սպանութիւնն ուղղակի դիտուած ըլլայ։ Այսպէս եզէ սպանուած մարդու մը քաւութեան համար չի բաւեր՝ որ — հին Կտակարանի որոշման համեմատ — եզն սպանուի եւ անոր մսին գինն աղքատաց մէջ բաժնուի, այլ անոր տէրը գլխոյ գինը պիտի վճարէ, եթէ ուրիշներն պահանջած են եզն հեռացընել եւ ինք չէ անսացած։ Այսպէս, անիկայ որ իւր ծառայն կամ զուրիշն — Հայոց սովորութեան համեմատ — ցորենի գետնափոր հորն իջեցընէ, առանց վնասակար օդն մէջէն կանխաւ հանելու, եւ առհասարակ անիկայ՝ որ զմէկն կը դրդռէ կամ կը ստիպէ գործ մը գործել, բժիշկն՝ որ տգիտութեամբ կամ ատելութեամբ հիւանդին սխալ դեղ կու տայ, կամ անիկայ՝ որ դիտմամբ, թէեւ կատակաւ, հեծելոյ մը ձին կը խրտչեցընէ, պատասխանատու է յառաջ եկած սպանութեանց։

Բայց այն ատեն միայն գլխոյ գին կը վճարուի, երբ մահն յառաջ եկած է։ Այսպէս, թէեւ տէրը պատասխանատու է ծառային արեան, զոր ինք մահաբեր գործեօք սպանած է. բայց ոչ՝ եթէ մահն իւր հարուածէն քիչ ժամանակ ետքն յառաջ գայ։ Նոյնպէս անիկայ՝ որ ուրիշին հետ կռուած ժամանակ զանիկայ վիրաւորէ, միայն վիրաց հատուցման կը պարտաւորի։ Ապարդիւն մնացած սպանութեան փորձին պատիժն Հայ իրաւանց անծանօթ է։

Պարզ վիրաւորումն եւ ուրիշ մարմնոյ վնասներն սովորաբար անկէ հասած վնասուն եւ բժշկութեան ծախքին հատուցմամբը կը քաւուին։ Այս դէպքիս մէջ միտ կը դրուի վիրաւորողին եւ վիրաւորուողին հասակին, վիրաւորեալ անդամոյն, վիրաւորման խաղի, կամ արբեցութեան, կամ բարկութեան մէջ

եւ կամ առանց կամաց վիրաւորողին եւ այլն եղած ըլլալուն։ Եւ նաեւ եթէ մէկուն վիրաւորման պատճառ եղած է երրորդ մը, պարագայից համեմատ՝ անիկայ պիտի քաւէ վնասն։ Այսպէս՝ երբ տղայ մը միաբանութեան մը համեմատ՝ բարձրաւանդակէ մը ցատկէ եւ անով վիրաւորուի. կամ երբ երիտասարդ մը կանխաւ միաբանեալ դժուարին գործքի մ'օգնելու կամ նոյնը կատարելու ժամանակ վիրաւորուի։ Այս դիպաց մէջ անիկայ՝ որ նոյն գործոյ կատարման համար դրամ տուած է, իբրեւ պատճառ վիրաւորման՝ վնասուն կէսն եւ բժշկութեան գինը պիտի հատուցանէ։ Նոյնպէս վնասուն միայն կէսը պիտի հատուցուի, երբ մէկը ձիէ մը վիրաւորուի, որուն տէրն իւր անասնոյն վնասակար յատկութիւնը ծանուցած է։ Այսպիսի դէպքի մէջ տէրը տնեցւոց նկատմամբ բոլորովին ազատ է։ Ամբողջ վնասուն եւ բժշկութեան գնոյն պատասխանատու է յանուանէ այն՝ որ զմէկը ցորենի հորի մէջ կ'իջեցընէ առանց նախ վնասակար օդն անկէ հանելու. կամ տէրն՝ որ իւր ծառայն անսովոր աշխատութեանց կը զբաղեցընէ, կամ անիկայ՝ որ հեծելոյ մը ձին կը խրտչեցընէ, եւ այլն։ Զարմանալի պատիժ մը կը դրուի այն դէպքին՝ երբ տէրն ծառային աչքը հանէ։ Այս դէպքիս մէջ պէտք է, ինչպէս յիշեցինք, քրիստոնեայ ծառայն ազատ թողուլ, իսկ հեթանոսը կէս գնով ծախել։

Վիրաւորման պէս կը վարուի նաեւ այն դէպքին՝ երբ մէկն ուրիշին, մանաւանդ երիտասարդ մը ծերուն մօրուքը ձգձգէ։

Նաեւ գողո–Ծի–նը դրամով կը հատուցուի, եթէ գողը գողութեան ժամանակ բռնուած եւ դատի բերուած չէ։ Դրամական պատիժն ըստ պարագայից՝ է գողունի իրին գնոյն կրկինն կամ չորեքկինը։ Արուեստաւորը չորեքկինը պիտի հատուցանէ, եթէ իրեն գործելու տրուած նիւթէն խորէ առնու. Նոյնպէս վաճառականն՝ որ մէկէն սուտ չա-

փով կամ կշռով կը գողնայ կամ անոր կը վնասէ։ Ձեռագէտը կրկին կը վճարէ, երբ իրեն յանձնուած գործքի մը մէջ գողութիւն ընէ։ Այսչափս յիշելէն ետեւ՝ աւելորդ է մտադիր ընել, որ Հայ իրաւունքը “գողութիւն„ բառն այսօրուան իմաստով չէր գործածեր։ Այսպէս գողութիւն կը համարուի նաեւ այն՝ երբ մէկն օտար ծառայ մը տիրոջմէն առնու եւ ուրիշի մը ծախէ։ Այս դէպքիս մէջ քաւութիւնն յայնմ է՝ որ գողցողը ծառայն առաջին տիրոջը, իսկ ծառային փոխարէն ընդունած դրամն գնողին պիտի դարձընէ։ Եթէ ծառան փախած է, այնպէս որ առաջին տիրոջ չէր կրնար դարձուիլ, այն ատեն առաջին տէրը վաճառման գինը կ'առնու, իսկ յանցաւորին կը տրուի, — ինչպէս յիշեցինք — տանջողական եւ անպատուող պատիժ մը։

Բայց ի գողութենէն՝ նաեւ [illegible] հասցուած վնասն կրկին գնով պիտի հատուցուի։ Այսպէս՝ աւանդառուն կամ գրաւառու պարտատէրն ընդունած իրաց վնասն, որուն պատճառ եղած ըլլալն ստութեամբ կ'երդնու, կրկին պիտի հատուցանէ, եւ ինք վնասուն մասնակից, ուստի եւ ստերդումն կը ճանչցուի։ Այսպէս անիկայ, որ անզգուշութեամբ կամ անհոգութեամբ համբարանոցի, հնձոց, անասնոց կամ զգեստեղինաց կրակ կը ձգէ, սովորաբար վնասուն կրկինը կը հատուցանէ։ Իսկ եթէ կրակն, որմէ վնաս յառաջ եկած է, այրած տեղէն շատ հեռու էր, այն ատեն վնասը միայն կէս պիտի հատուցուի։ Այսպէս նաեւ գինւոյ տակառ ծախողն կէսը պիտի հատուցանէ վնասուն, որ յառաջ կու գայ գինւոյն տակառէն վազելովն։ Նոյնպէս եզան կամ հորթին վնասուն կէսը կը հատուցանէ տէրն, որոնցմէ ուրիշ նոյնազգի անասուն մը սպաննուած է, եթէ իրեն ծանօթ չէր որ իր անասունը վնասակար յատկութիւններ ունի։ Այս դէպքիս՝ վնասակար անասունը կը ծախուի, գինն ու սատկած անասունին երկու տէրանց մէջ հաւասա-

րապէս կը բաժնուի։ Իսկ եթէ վնասակար անասնոյն տիրոջը նոյնին վնասակար յատկութիւնը ծանօթ էր, եւ դրացեաց ազդարարութենէն ետեւ ալ չէ ծախած, ամբողջ վնասուն կը պարտաւորի, բայց կրնայ սպանուած անասունն առնուլ։ Միւս դէպքերն՝ յորս վնասն մի անգամ ամբողջ պիտի հատուցուի, են՝ երբ օտար անասուն մը գուբի կամ ջրհորի մը մէջ իյնայ, որ ծածկուած չէր, եւ անկէ սատկի կամ վիրաւորի. բայց անիկայ՝ որուն կը վերաբերի գուբն կամ ջրհորն, կրնայ սատկած անասնոյն մորթն առնուլ։ Դարձեալ՝ մէկուն պահելու տրուած անասունն եթէ գողցուելու ըլլայ, կամ երբ զգեստ կամ անասուն մը, որ գրաւ դրուած ըլլան, փճանան կամ վնասին, ամբողջ պիտի հատուցուի. կամ երբ մէկն օտարին պտղատու ծառը փճացընէ, ի փոխարէն վնասուն նոյն տեղը նոյնպիսի ծառ մը պիտի տնկէ, եւ պտղոյն պակասութեամբն հասած վնասը պիտի հատուցանէ, մինչեւ որ նոր ծառն պտուղ բերէ. կամ երբ մէկն օտար ձի կամ ոչխար մեռցընէ, առանց թշնամութեամբ գործած ըլլալու, կամ երբ ջաղացք մը վարձողն իւր յանցանօքն կամ անհոգութեամբը ջաղացքին կամ անոր վերաբերեալ իրաց վնաս մը հասցընէ, կամ երբ անկէ բան մը գողցընէ, կամ երբ մէկն օտարին ցորենն իրեն համար աղայ, կամ օտար այգիէ բան մ՚առնու տանի առանց ագարակին կամ այգւոյն տիրոջ հաւանութեան, կամ երբ մէկն օտար արջառ մը, զոր իւր երկրին վրայ գտնէ, սպաննէ, կամ երբ մէկն առանց յառաջուց իմացընելու՝ ջուր մը գործածելով վնաս հասցընէ, կամ երբ վարձեալ հովուի մ՚անմտադրութեամբը հօտը վնասուի. կամ երբ ձեռագէտն իրեն գործելու տրուած նիւթն անհոգութեամբ վնասէ, կամ ծառայն առանց տիրոջ հաւանութեան իւր սեպհական անձին օգտին գործածած գործիքը փճացընէ, կամ պահելու տրուած ապրանքներուն մէկը վնաս մը հասցընէ։

Զարմանալի է այն դիպաց որոշումն, երբ մէկն իւր ագարակին մէջ անասնոյ մը հանդիպի եւ զայն զարնէ կամ վիրաւորէ, այնպէս որ անոր աչքը, ոտքը կամ եղջիւրը եւ այլն վնասուի: Այս դէպքիս մէջ վնասողն անասնոյն տիրոջ նոյնին գնոյն չորրորդ մասը պիտի տայ. բայց միտ դնելով՝ որ արդեօք տիրոջ ազդարարուած էր իւր անասունն այնպէս պահել՝ որ օտարին պտղոյն կամ հունձքին չվնասէ: Բոլորովին պատժէ ազատ կը կացուցուի, եթէ եզ մը, որուն վնասակարութիւնը տիրոջն անծանօթ էր, փոքրիկ անասուն մը սպաննէ. կամ երբ պահելու առնուած անասունն անծանօթ պատճառաւ մը, բռնութեամբ եւ կամ արջէ կամ գայլէ կամ ուրիշ գազանէ առանց յանցանաց պահողին յափշտակուի, սպանուի, կամ վիրաւորի. կամ երբ մէկն միայն ձեռօք օտար հունձքէն իրեն համար մաս մ'առնու, կամ օտար այգւոյ մէջ օտարին խաղողն ուտէ:

Բաց ի յիշեալ պատիժներէն հայ իրաւունքը կը յիշէ վատահամբաւութիւն, անէծք, կարգընկէցութիւն, բանադրանք եւ ընդհանրապէս հոգեւոր ապաշխարանք:

Վատահամբաւ կ'ըլլայ դատաւորն, եթէ ցուցուի՝ թէ անիրաւ վճիռ տուած է. նոյնպէս անիկայ՝ որ օտար քրիստոնեայ ծառայ մը կը գողնայ եւ կարող չէ նոյնն առաջին տիրոջը դարձրնել. դարձեալ՝ ստերդումը, եւ անիկայ՝ որ ստութեամբ կ'ըսէ թէ մէկու մը պահելու համար բան մը յանձնած է. եւ առ հասարակ ամէն զրպարտող, որ զմէկն յանցաւորական գործքի մը կը զրպարտէ. եւ վաճառականն՝ որ կը վնասէ մէկուն սուտ չափով կամ կշռով:

Ս. Գրքէ առնուած կամ անոր վրայէն ձեւուած շատ որոշմունք չարագործներն Աստուծմէ եւ մարդիկներէ անիծուած կը նկատէ: Այսպիսի են վերոյիշեալ դէպքերէն զատ՝ նաեւ այն դէպքն, երբ

բարձրաստիճան անձ մը կամ պալատական մը շքադրօք, թմբկահարօք, սրնգահարօք եւ կանամբք Վանք կը մտնէ հոն բնակելու համար, եւ Վանքին առաջնորդին յորդորանաց, աղաչանաց եւ պահանջմանց առանց միտ դնելու՝ միտքը դրածէն ետ չի կենար: Նաեւ Թագաւորը Թշնամանել՝ դատապարտութեան արժանի գործ կը նկատուի. եթէ եկեղեցական է՝ նուրբընկէց կ'ըլլայ. իսկ եթէ աշխարհական՝ կը խանդրուի:

Նոյնպէս գերեզմանակրկիտն քրիստոնեայ հասարակութենէն կը մերժուի, երբ գործքի ժամանակ բռնուած չէ, եւ իւր յանցանքն զղջացեալ սրտիւ խոստովանած է խոստովանահօր:

Հոգեւոր տպաշխարան+ կը յիշէ Հայ իրաւունքն ուրիշ քանի մը դիպաց մէջ: Այսպէս այն տէրն, որ ծառայն այնպէս ծեծած է, որ թէեւ ոչ անմիջապէս, բայց կարճ ժամանակ ետքը նոյն պատճառաւ կը մեռնի. կամ անիկայ՝ որ կռուոյ մէջ յղի կնոջ մ'այնպէս կը զարնէ՝ որ անկերպարան սաղմն վիժի. կամ անիկայ՝ որուն տնէն մէկը վար կ'իյնայ՝ առանց ասոր պատճառը շէնքին մէկ պակասութիւնն ըլլալու. կամ անիկայ՝ որ ի հարկաւորութեան կամ ի պատերազմի եւ կամ ըստ պատահման եւ առանց մեռցընելու դիտաւորութեան զմէկը կը մեռցընէ, կը պարտաւորի խոստովանիլ եւ ապաշխարել:

Շատ դիպաց մէջ գործք մը միայն իբրեւ ապօրինաւոր նշանակուած է, առանց պատիժն որոշելու: Այսպիսի են՝ երբ գեղացի մը՝ տիրոջն անսովոր եւ չափազանց աշխատութիւն պահանջելովը մնայուն վնաս մը կը կրէ. դարձեալ՝ երբ մէկն ստութեամբ ուրիշի մը “մարդասպան, բռնաւոր„ ըսելով՝ զինք թշնամանէ, կամ եկեղեցական մ'անարգէ, կամ սուտ վկայութիւն տայ, կամ երբ մէկը կին մ'առեւանգէ առանց անոր հետ ննջելու, կամ երբ մէկն իւր ուղեկիցները դժբախտութեան

մը ժամանակ թողու երթայ, կամ երբ կանայք արանց եւ արք կանանց զգեստ կրեն, կամ երբ մէկն իրեն յանձնուած հիւանդանոցին վարչութիւնն իւր օգտին եւ ի վնաս հիւանդանոցին եւ աղքատաց վարէ, կամ վերջապէս վաճառական մը յոռի ապրանք ծախէ կամ առ հասարակ վաճառականութեան կանոնները չպահէ, զոր թագաւորն իւր խորհրդականաց հետ դրած է։ Այս մասին կը հրամայուի, որ չափն ու կշիռն ճիշդ եւ արդար, իսկ ապրանքն ժամանակին յարաբերութեանց համապատասխանող պէտք են ըլլալ, որուն վրայ մասնաւոր հսկողներ կան։ Ոչ ոք իրաւունք ունի մաքս դնելու, բայց միայն թագաւորն իւր խորհրդականաց հետ. եւ եթէ տէր մը մաքս դրած է, այն միայն այն եղանակաւ կրնայ առնուիլ, ինչպէս իշխանին սահմանադրութեամբն որոշուած է։ Ճանապարհորդութեան ժամանակ մաքս չի կրնար պահանջուիլ, բայց միայն այն քաղաքներն ուր վաճառականք շուկայ ունին. իսկ մաքսաւորք միշտ մեղմով եւ առանց հարստահարելու մաքս պիտի առնուն։ Դարձեալ կ'որոշուի՝ որ ամէնօրեայ ուտելեաց գինը տարւոյն պտղաբերութեան համեմատ որոշուի։ Վերջապէս ապօրինաւոր ձեռնարկութիւն կը համարուի առանց հաւանութեան թագաւորին նոր գաղթականութիւն հաստատելն։ Այս մասին կ'ըսուի, որ ամէն բանէ յառաջ գաղթականաց պիտի ցուցուի եկեղեցւոյ տեղ մը, եւ այնուհետեւ բնակութեան, ագարակի եւ արտի երկիրներն ու տնային պիտոյքը պիտի բաժնուի, որպէս զի իւրաքանչիւր ոք գիտնայ ընելիքը։ Եթէ գաղթականութիւն մը կը լքուի եւ նոր տեղ մը կը հաստատուի, գաղթականք այն իրաւանց եւ սովորութեանց համեմատ պիտի հաստատուին, որոնց համեմատ յառաջագոյն նոյն գաղթականութիւնն հաստատուած էր։

Սիկիզմունտ Թագաւորն Հայ իրաւանց այս պատժական օրինաց որոշմանց վրայ կարեւոր յաւելուածներ ըրաւ, որով անոնցմէ շատերն էապէս փոխուած, ամփոփուած, եւ կամ նոյն իսկ բարձուած են։

Նախ եւ յառաջ միտ դնելու է այն նախադասութեան որ յաճախ կրկնուած է։ Հայոց իրաւաբանական յարաբերութեանց եւ դրից վերոյիշեալ զարգացմանէն յայտնի է, թէ յանցանաց իրերն, եւ յանուանէ հրձգութիւն, գողութիւն, դաղտնի դրամ կոխել ոչ ըստ Հայ իրաւանց, այլ Թագաւորութեան եւ պետութեան հասարակաց իրաւանց համեմատ պիտի դատուէին։ Նաեւ սպանութեան եւ գլխոյ դրամի որոշումներն այն ատեն միայն կրնան գործադրուիլ, երբ Հայն զՀայ սպաննէ։ Ուրիշ ընդհանուր կանոն մը շատ անգամ կըրկնեալ յաւելուածով մը հաստատուած է, որ յիշեալ որոշմունք միայն Հայոց մէջ զօրութիւն պիտի ունենան, կամ երբ դէթ ամբաստանեալն Հայ է։ Այն հիմնական նախադասութիւնն, թէ իւրաքանչիւր ոք միայն իւր յանցանաց համար պիտի պատժուի, ամփոփուեցաւ այնու՝ որ այն յանցաւորին տղաքն, որ ընդդէմ Թագաւորին կամ քաղաքին յանցանք մը գործած է, հայրենի ստացուածքէն կը զրկուէին, եւ ստացուածքը կը գրաւուէր։ Ուրիշ փոփոխութիւն մ'ալ եղաւ, այն է՝ Հայ ատենին որոշման դէմ առ Թագաւորն բողոք շնորհեցաւ։ Ասով այսպիսի որոշման մը դէմ կենալը կամ չհնազանդիլը՝ պատժոյ արժանի ըլլալէն դադրեցաւ. ինչպէս նաեւ անիրաւ վճռոյ մը համար դատաւորին վատահամբաւ ըլլալը։ Ուրիշ յաւելուած մը կ'որոշէ, որ տղաք պարտաւորեալ են ծանուցանել իրենց ծնողաց յանցանքն ընդդէմ Թագաւորին կամ պետութեան. եւ ասով ծնողաց ունեցած պարտաւորութեան հակառակ գործած չեն ըլլար, եւ անոր համար չեն կրնար պատժուիլ։ Օտար ծա-

ուայ մը ծախելու մասին տրուած որոշումներն միայն այն ատեն կ՚արժեն, երբ ծախուողն Հայ է. ապա թէ ոչ՝ իրին որոշումը թագաւորին պիտի թողուի։ Այն զարմանալի որոշման տեղ, որ վնասակար ձիէ մը մարդու մը սպաննուելուն վրայ է, որուն տէրը ձին ծախել կը պարտաւորի, պիտի արժէ եզան մը ձեռօք գործուած նոյնպիսի վնասուն պատիժն, եւ վերջապէս առեւտրական որոշումներն միայն այնչափ ատեն կրնան գործադրուիլ, ցորչափ պալատական կոմսերու իրաւանց չեն հակառակիր։

Հայ իրաւանց Դատաստանի Եղանակին մասին տուած սակաւաթիւ որոշումներն՝ կարեւոր կէտերը տարակուսական կը թողուն։ Այսպէս նախ այն խնդիրն՝ թէ արդեօք պատժական իրաց մէջ դատը դատարանն ի պաշտօնէ ինքնին պիտի բանայ։ Թերեւս այն որոշումն՝ թէ ատեանը պէտք է պատժել այն տէրն, որ իւր ծառային արիւնը կը թափէ ծեծելով, ենթադրել կու տայ՝ որ Հայ իրաւունքը կը ճանչնայ ի պաշտօնէ դատ բանալ։ Կիրակի օրերն ամենեւին դատաստանական գործ չ՚ըլլար կատարել, որպէս զի ամէն մարդ ատեն եւ ապահովութիւն ունենայ Աստուծոյ երկրպագելու։ Կայ որոշում մը՝ որ կը սահմանէ թէ օտարին դատերն ընդդէմ թշնամանողի կամ պարտապանի, չորրորդ օրը պիտի որոշուի։ Այս որոշման իմաստը բոլորովին լուսաւոր չէ եւ մեկնութեանը կռուան կը պակսի։ Դատաւորն առանձին ամենեւին դատ մը պիտի չորոշէ, այլ միշտ 12, կամ եթէ այսչափ չի կրնար գտնուիլ, գէթ 6 կամ 4 արդար մարդիկ պիտի առնու, որոնք Հայ իրաւանց տեղեակ ըլլան, եւ անոնց հետ դատը պիտի կատարուի։ Արդարութեան այս պաշտօնեայք պարտական են ամէնուն՝ աղքատին ու հարստին, այրւոյն ու որբին, քաղաքացւոյն եւ օտարին արդար դատ ընել եւ կաշառքէ զգուշանալ։ Դատաւոր մը, որոյ գործն է դատել, պէտք չէ դատի մը մէջ խորհուրդ տալ. վա-

տահամբաւ կ՚ըլլայ այն դատաւորն, որուն անիրաւ վճիռ տուած ըլլալը կը ցուցուի։ Դատէն յառաջ Վոյթին կողմանէ հրաւէր պիտի երթայ դատի կոչուողներուն։ Եթէ առաջին եւ երկրորդ հրաւիրանաց չեն անսար, ամէն մէկ անգամ 6 կրօշ պատիժ կը սպառնացուի։ Ով որ երրորդ հրաւիրէն ետքն ալ չ՚երեւար, նոյնպէս վեց կրօշ կը վճարէ, կը բանտարկուի, եւ բանտը կը մնայ մինչեւ որ քաղաքը բնակող քաղաքացի մ՚երաշխաւոր ըլլայ, թէ այսուհետեւ ատեանին եւ վճռոյն պիտի հնազանդի։ Երաշխաւորին եւ երաշխաւորելոյն անմիջապէս երեք շաբաթ միջոց կը տրուի։ Եթէ այնուհետեւ դարձեալ չ՚երեւար՝ անհնազանդն իւր դատը կը կորսնցընէ։ Դատաստանն երկու կողմանց ներկայութեամբը պիտի ըլլայ. դատաւորն ասոնց առարկութիւնքն ու պատասխանները պիտի լսէ, վկաները պիտի մտիկ ընէ, յառաջ բերուած ցուցումները պիտի քննէ, եւ եթէ երկու կողմը միաբանելու յորդորն անպտուղ մնալու ըլլայ, պատշաճ վճիռը պիտի տայ։ Իբրեւ սովորական ցուցում կը նկատուին վկայք։ Երկու կամ երեք վկայք, որոնք արդար եւ հաւատալի հայ են, կը բաւեն նոյն իսկ յանցանք մը ցուցընելու, եւ հակառակորդին չի ներուիր վկայից ցուցման դէմ առարկութիւններ ընել։ Երդումը դիւրաւ թոյլ չի տրուիր, իսկ սահմաններու վէճին մէջ՝ ամենեւին։ Եթէ հայ մը պիտի երդնու, նախ ամբաստանողն անոր ձեռքերը ջրոյ մէջ պիտի թաթխէ, եւ այնուհետեւ անիկայ պիտի երդնու առանձինն՝ առանց վկայից, եկեղեցւոյ մէջ Ս. Խաչի վրայ, ներկայութեամբ հայ Վոյթին եւ անոր՝ որ Վոյթին հետ հայ ատեանին կը նախագահէ։ Նոյն կերպը պիտի պահուի երդման ուրիշ տեսակներուն մէջ ալ։ Ցուցման մասին ընդհանրապէս կ՚արժէ սա նախադասութիւնը՝ թէ ուրացող ամբաստանեալը կը պարտաւորի ցուցում յառաջ բերել, եթէ արդէն երկու կողմանէ ալա-

պահով ցուցմունք յառաջ բերուած չեն։ Ով որ դատը քննուելէն ետեւ՝ տրուած վճռոյն գոհ չէ, կրնայ Թագաւորին բողոքել. վասն զի Հայք ոչ Թէ քաղաքներէն, այլ դքսերէ եւ իշխաններէ առած են իրենց արտօնութիւնները, եւ Թագաւորը զիրենք օտար իրաւաբանութենէ ազատ ըրած է եւ իւր իրաւաբանութեան տակ առած, զոր եւ Հայ իրաւանց համեմատ պիտի գործադրէ։ Վճռոյն գործադրութիւնը պիտի կատարուի ի ձեռն ատենին կամ պաշտօնարանի, որուն ենթարկեալ է յաղթուողն։ Գործադրութիւնը կը տարածուի բովանդակ ստացուածքին, դրամին, ապրանքին կամ ուրիշ ընչից վրայ։ Ատենի խաղաղութեան համար եւ դատի վրդովման առջեւն առնելու նպատակաւ՝ կրնայ ատեանն բանտի եւ դրամի պատիժ տալ։

Դատի կատարման մասին պէտք է միտ դնել նաեւ, որ երկու կողմանք սովորաբար անձամբ դատը կը վարեն, եւ բնաւ դրամով վարձեալ գործակատարներ չեն կրնար գնել։ Կանանց տեղ կրնան ատեան երեւալ իրենց ամուսինը կամ արեան ազգականքն, որոնք պէտք եղած իշխանութիւնն առած եւ տեղապահ դրուած են. սոնք լոկ մնասու խնդիրներու մէջ կարող են կանայքը պաշտպանել։

Սիկիզմունտ Թագաւորն յիշեալ դատաստանի եղանակի որոշումներու վրայ ինչ ինչ յաւելուածներ ըրաւ. բաց ասկէ՝ նաեւ որոշեց, որ Թագաւորական խնդրոց մէջ՝ յանցանք գործելու ժամանակ բռնուած յանցաւորն եւ վճարել չկրցող պարտապանը նաեւ կիրակի օրեր կարելի է բռնել, դատապարտել եւ այլ ատենական գործեր կատարել։

Այս որոշմանց կարեւոր ամբողջացուցումը կու տան նախորդ 1 եւ 2 հատուածներու մէջ յիշուած վաւերագիրք, բայց ի մասնաւորի՝ Հայ ատենին գործելու մասին տրուած կանոններն, որոնք

Պիեչլովսկիի յիշեալ օրինակին մէջ կը գտնուին․ բայց հոս զայս յառաջ բերել՝ գործոյս սահմանէն անդին է։

---

Հոս իբր յաւելուած Պիշոֆի յօդուածոյն՝ յառաջ կը բերենք Լեհահայոց դատաստանի մասին Սադովկ Պարոնչի գրածն (Rys dziejów ormiańskich, Tarnopol, 1869, p. 261-264.)

“Դատաստանական շէնքն՝ Դոփարքափան կ'անուանուէր, ատեանն՝ Դոփարքան, իսկ այն սենեակն՝ ուր կրօնական դատերն կ'ըլլային՝ Խոոց։ Ատեանը կը կազմէին քաղաքապետն՝ Վոյթն եւ 12 խորհրդականք՝ Աւագանին, որոնք այս պաշտօնը ցմահ կը կատարէին։ Աւագանւոյ ընտրութիւնն ամէն տարւոյ սկիզբը կ'ըլլար հանդիսական պատարագէ մ'ետեւ։ Ընտրեալ քաղաքապետն կ'երդնոյր հետեւեալ խօսքերով․ “Ես Ա․ Ա․ կ'երդնում առաջի Տեառն Աստուծոյ ամենակալի՝ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, Ամենասուրբ Կուսի՝ Աստուածածնին Մարեմայ, առաջի սրբոյ Հօրն իմոյ Գրիգորի Լուսաւորչին եւ ամենայն սրբոց Աստուծոյ, հաւատարմութեան հետ հնազանդ ըլլալ Թագաւորին, կուսակալին կամ քաղաքիս մեծին, եւ հրամանաց եպիսկոպոսին կամ տեղւոյն ժողովրդապետին։ Կը խոստանամ եւս ըլլալ հաւատարիմ եւ հասարակութիւնն յօգուտ քաղաքիս զարգացընել, քաղաքիս օրէնքներն յամբողջութեան պահել, եւ ամէն դատերն լաւ կատարելով՝ արդար վճիռ տալ խղճիս համեմատ առանց կաշառի եւ ակնածութեան։ Եւ եթէ երդուածս չպահեմ, թող պատժէ զիս արդար դատաստանն Աստուծոյ եւ անմեղ չարչարանք Քրիստոսի, յայժմ եւ ի հանդերձեալ կեանս ամէն։„

Ասոր նման կ՚երդնուին Աւագանին կամ դատաւորք: Կ՚ընտրուէր նաեւ տեղապահ մը, որ Վոյթին հիւանդութեան ատեն կարենար անոր փոխանորդ ըլլալ. նմանապէս կ՚որոշուէր ատենադպիր կամ նոտար մը հմուտ իրաւանց, որ ծունր դրած եւ երկու մատերն խաչելութեան վրայ՝ կ՚երդնոյր կրկնելով Վոյթին հետեւեալ խօսքերը. “Ես Ա. Ա. նոտար, վարչութեան իշխանութեամբ զարդարեալ, Մեծարգոյ Տեարց Աւագանւոյ կամ դատաւորաց պատուական ժողովէն, եւ մեծարգոյ ու պատուական ժողովրդենէ ազատ կամօք եւ միաշունչ ձայնիւ ընտրեալ, կ՚երդնում առաջի Աստուծոյ Ամենակալի միայնոյ յերիս անձինս, որ վարչութենէն արտօնացեալ գրագրութեան պաշտօնս հաւատարմութեամբ եւ ճշմարտութեամբ պիտի կատարեմ, Լեհաց մեծափառ, ողորմած եւ մեծ թագաւորաց ամէն իրաւունքներն ու արտօնութիւնները պիտի պահեմ, դաշնագրութիւններն եւ ամուսնական դաշինքներն առանց գիտութեան պատուական Վոյթին եւ Աւագանւոյն կամ դատաւորաց պիտի չարձանագրեմ, եւ եթէ այսպիսի դաշանց դէպք մը հանդիպի՝ նախ պատուական Տեառն Վոյթին, եւ յետոյ առաջի վարչութեան, այսինքն՝ Աւագանւոյ պատուական ժողովոյն առջեւ իրը պիտի ծանուցանեմ: Նոյնպէս կը խոստանամ գաղտնիքներն, որոնք ուխտիւ կը ծանուցուին ինձ, մէկու մը չյայտնել: Այսպէս գործելու օգնական ըլլայ ինծի Աստուած եւ իւր անմեղ չարչարանքն, ամէն:„ Այս առթիւ կ՚ընտրուէին նաեւ եկեղեցւոյ գործակատարներ, այսինքն՝ վերին գանձապետը, աւանդապահը, գանձապետը, հիւանդանոցին վարիչը, ատենի դատախազն ու ծառայն, եւ քաղաքային ծառայն: Դատաստանական վճիռք կը հաստատուէին կնքով, որուն վրայ նկարուած էր գառնուկ դրօշ ի ձեռին, եւ շուրջն հայերէն գրութիւն մ՚ալ կար: Այս կնքոյ պահպանութեան համար երկու կնքիչ

կ՚ընտրուէին։ Կար նաեւ Մասնախումբ մը 40 արանց՝ առաջնորդի կառավարութեան տակ։

Ամէն դատաստանէ յառաջ՝ Վոյթն խորհրդականներովն առաջի խաչելութեան ծունր դրած, կ՚աղօթէր առ Հոգին Սուրբ, որպէս զի իւրաքանչիւր խնդիր ճանչնալու եւ արդար վճիռ տալու լուսաւորութիւն ընդունին։ Երկշաբաթեայ դատաստանք ամէն անգամ չէին ըլլար. առաջին դատաստանը Մկրտութեան տօնէն ետեւ՝ առաջին երեքշաբթին կ՚ըլլար։ Երկրորդն՝ երեք կիրակի ետքը. եւ այսպէս միշտ ամէն երեք կիրակի ետքը կ՚ըլլար մինչեւ Բուն բարեկենդան, ուստի սկսեալ դատաստան չկար մինչեւ Նոր կիրակի. անկէ ետքն եկած երեքշաբթին՝ առաջին դատաստանը կ՚ըլլար, եւ այսպէս միշտ երեք կիրակի ետքը կ՚ըլլար՝ մինչեւ ցնախորդ կիրակի Համբարձման։ Անկէ սկսեալ մինչեւ Ա. Կիրակի յետ Պենտակոստէից դատաստան չէր ըլլար. այնուհետեւ ամէն երեք կիւրակի անգամ մը կ՚ըլլար՝ մինչեւ Ս. Մարգարիտայի տօնին Շնիկ աստեղ օրերը։ Այս օրէն սկսեալ կը դադրէր մինչեւ ցառաջին երեքշաբթի յետ տօնի Ս. Բարթողիմէոսի. այնուհետեւ ամէն երեք կիրակի անգամ մը կ՚ըլլար մինչեւ յիսնակաց Ա. Կիրակին. անկէ սկսեալ կը դադրէր ցվերջ տարւոյ։ Այս դատին կը նախագահէր Վոյթն, ունենալով քովն առ նուազն չորս Աւագանի, եւ հետեւեալ լեհերէն խօսքերն բարձրաձայն արտասանելով՝ կը բանար դատը. „Ես նախ իշխանութեամբ Ամենակալին Աստուծոյ եւ զօրութեամբ Մեծափառ Թագաւորին՝ մեր ողորմած պետին, իշխանութեամբ քաղաքապետի եւ Տեարց դատաւորաց եւ բովանդակ հայ ժողովրդեան, հայկական երկշաբաթեայ դատը բացուած կը հրատարակեմ, եւ կը հրամայեմ որ այս միջոցին ոչ ոք մերձենայ հոս եւ ոչ ոք հեռանայ, բայց միայն մեր դատաւորական հրամանաւ։ Կը հրամայեմ եւս, եւ կը հաստատեմ ընդհանուր խաղաղութիւն, եւ կա-

տարել այն ամէն գործողութիւնները, որոնք յօրինաց կը հրամայուէին: Եւ եթէ մէկն այս խաղաղութիւնն եւ օրինաւոր գործողութիւնները պահելու չըլլայ, եւ խօսքով կամ գործով օրինազանց գտնուի, պիտի պատժուի այնպէս, ինչպէս որ օրէնքն արժանի կը համարի ու կը սահմանէ:„ Դատին բացումն հրատարակելէն ետեւ՝ Վոյթն դատաւորի մը պիտի հարցընէ, թէ "Դատաստանի հրատարակութիւնն լա՞ւ էր.„ որուն անիկայ կը պատասխանէ՝ "Բարւոք հրատարակեցիք, Պատուական Տէր:„ Այնուհետեւ ուրիշ դատաւորի մը կը հարցընէ՝ թէ "Այստեղս հաստատեալ խաղաղութիւնն պիտի պահուի՞ ըստ սահմանեալ օրինաց:„ Այս դատին բացմանէն ետեւ՝ ատենի երդուեալ ծառան՝ ժողովրդեան բարձրաձայն պիտի ըսէ. "Հայկական երկշաբաթեայ դատը բացուած է, եւ եթէ մէկը այս դատին մէջ խնդիր մ'ունի, յառաջ մատչի:„ Ծանրագոյն իրողութեանց մէջ բանակռուոյ հրաման կը տրուէր, մասնաւորի հող կը տարուէր, ուր իրն չորս եկակոչութեամբ լմննար: Նոյն դատին գործողութեանց լմննալէն ետքը, Վոյթն դատաւորի մը կ'ըսէ՝ թէ "Անոնք՝ որ ներկայ գտնուեցան, ազատ պիտի ըլլան. եւ որոնք չեկան՝ պիտի դատապարտուին:„ Երբոր դատաւորն հաւանութեան պատասխան կու տայ; թէ դատն ըստ հայկական օրինաց կատարուած է, Վոյթը կ'ըսէ. "Եւ ես շնորհակալ եմ օրինաց„:

Իսկ կրօնական գործքերն ի կարեւորութեան նմանապէս Վոյթին ու քանի մի դատաւորաց առջեւ, եպիսկոպոսին եւ բարձրագոյն եկեղեցականներու ձեռօք Խուցին մէջ կը կատարուէին, սովորաբար երկուշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ: Դատաստան չէր կատարուէր Կիրակի եւ տօնի օրերը, Առաջաւորի բարեկենդանին երկուշաբթին, երրորդ օր աղուհացից (չորեքշաբթի՝ օր մոխրոց) գործոյ օրերն, որոնք սուրբ Մարգարիտայէն մինչեւ ցուրբ Բարթուղիմէոս կը տեւէին. ժանտախտի ատեն,

եպիսկոպոսին՝ իբրեւ տեղւոյ եպիսկոպոս գահակալելու օրը, անոր յուղարկաւորութեան օրը, եւ թագաւորին ծննդեան եւ թագաւոր պսակման օրը։

Սակայն այս օրէնքներն ամբողջապէս չէին պահուեր եւ նոյն իսկ կ'աշխատուէր, որ զանց առնուին։ Երբ որ մէկը քաղաքային իրաւունք կամ քաղաքացւոյ պատիւ կ'ընդունէր, երդում կ'ընէր լեհպետութեան առջեւ։ Արուեստաւորաց ընկերութեան ժողով չունէին Հայք, եւ եթէ տեղ մը կար այն, միշտ Լեհը գլուխ եւ առաջնորդ կ'ըլլար։ Նմանապէս արուեստաւորք ալ Արուեստաւորաց ժողովի լեհ կամ ռութէն առաջնորդին տակ կը գործէին։ Հայք սեպհական բանտ չունէին, եւ եթէ հարկ ըլլար մէկը բանտ դնել, պէտք էր լեհ կամ ռութէն Վոյթին դիմել։ Հայք ազգային իշխանութեան բռնաբարութիւններուն պատճառաւ կը ստիպուէին օտար օրէնքներն իրենց սեպհականել, որով իրենց խնդիրները շատ անգամ դիւրաւ կ'որոշուէին։„



# ՎՐԻՊԱԿՔ

| ԷՋ | ՏՈՂ | | ԿԱՐԴԱ | |
|---|---|---|---|---|
| 8 ծան. | 8 | արտօնա գրին | » | արտօնագրին |
| 30 | 32 | Աուագանիէն | » | Աւագանիէն |
| 41 ծան. | 6 | Քրիգոր | » | Գրիգոր |
| 42 ծան. | | | յաւել. | Ծ. Թ. |
| 42 ծան.[3] | 7 | բովանդակէ | կարդա՛ | բովանդակէ |
| 53 | 18 | միոյն | » | միայն |
| 55 | 4 | Առաոջին | » | Առաջին |
| 59 | 12 | կրայ | » | կրնայ |
| 62 | 7 | Հանպստարանը | » | Հանգստարանը |
| 64 | 18 | պտոժոց | » | պատժոց |

# ԳՈԼԷՐ

# ԻՐԱՒՈՒՆՔ ՀԱՅՈՑ[1]

## Ա.

Նուաստ ձրիւք օժտեալ Հայ ազգն, որ Հնդեւրոպական բնոյն կը վերաբերի[2], մարդկային սեռին այն ճիւղերէն է, որոնց ինքնօրէն կազմութեամբ յարատեւ եւ գործարանաւոր քաղաքական զարգացում շնորհուած չէր։ Ի մէջ Արեւելից եւ Արեւմտից՝ պատերազմներու մէջ՝ անկախութեան դարերուն կը յաջորդէին շրջանաւոր օտար իշխանութիւնք։ Պարսիկք, Հռովմայեցիք[3], Բիւզանդեանք եւ դարձեալ Պարսիկք փոխանակաւ Հայաստանի վրայ կռուեցան։ Հայաստան Խալիֆայից գաւազանին տակն էր, եւ յանկարծ նոր ինքնօրինութեան մը հասաւ Բագրատունեաց ժամանակ, — սակայն ոչ երկայնատեւ։ Սելճուգեանք եւ Մողոլք աւերեցին երկիրն անբացատրելի կերպով։ Տաճիկք եւ Պարսիկք զՀայ-

---

[1] Այս գործոյս մէջ բարեկամաբար օգնեցին ինծի Բրոֆ. Պիշոֆ ի Կրաց, եւ Հ. Սարգսեան, Մխիթարեան ի Ս. Ղազար, որուն համար կը յայտնեմ իմ խորին շնորհակալութիւնս։

[2] Թէ Հայք հնդեւրոպական են՝ ստոյգ է, բայց թէ իրենց լեզուն հնդեւրոպական լեզուաբունին շրջանին մէջ ինչ դիրք ունի, ի մասնաւորի՝ թէ արդեօք Իրանեան եւ կովկասեան լեզուաց մերձաւոր ազգականութիւն ունի, մեծ խնդրոյ նիւթ է։ Համմտ. F. Müller, Ethnographie S. 527. Hübschmann Zeitschr. f. vergl. Sprachforschung N. F. VII. S. 411, Brugmann, Grundriss der vergl. Grammatik S. 5.

[3] Համմ. Տակիտ. Տարեգր. Բ. 56: Ambigua gens ea antiquitus hominum ingeniis et situ terrarum, quoniam nostris provinciis late praetenta penitus ad Medos porrigitur; maximisque imperiis interjecti et saepius discordes sunt, adversus Romanos odio et in Parthum invidia.

տատան մէջերնին բաժնեցին եւ Սիւննիներու եւ Շիիներու պատերազմներուն մասնակից ըրին։

Հայոց նախնի կրօնական պաշտամանց մասին գիտենք որ երբեմն Անահտայ[1] եւ Որմզդի պաշտօնն ունէին՝ մինչեւ Դ դարուն այն նշանաւոր դէպքն՝ երբ Հայք Տրդատայ[2] ժամանակ ի քրիստոնէութիւն դարձան։ Յայտնի է որ Գրիգոր Լուսաւորիչ Հայոց առաքեալն է, Տրդատ 302 ին մկրտեցաւ, քրիստոնէութիւնն իւր թագաւորութեան մէջ մուծուց, եւ Էջմիածինն[3], ուր Գրիգոր տեսիլ տեսաւ, Պատրիարքաց աթոռ եղաւ։ Այն ատեն կը ծաղկէր հայ գրականութիւնն[4], որ եւ առանձինն թռիչ մ'առաւ երբ Մեսրոպ 400 ին հայկական լեզուի յատուկ առոգանութեան յարմար՝ սեպհական գիր գտաւ[5]։ Սկսան հեղինակներ ի մէջ գալ, ինչպէս ծանօթ պատմագիրն Մովսէս Խորենացի։ — Ընդհանրապէս Ե դարն հայկական գրականութեան[6] ոսկեդարն եղաւ, որ եւ յետոյ բաւական ատեն ծաղկեալ մնաց, յԷ, Ը, Թ դարերն, եւ յետոյ ԺԲ դարուն վերստին սկսաւ ծաղկիլ, սակայն ԺԴ դարուն ետ գնաց[7], յաջորդեց անկման շրջանն, մանաւանդ թէ խոր ան-

[1] Անահտայ պաշտօնն ծանօթ մէկ տեսակին հետ, որ է կոյսերն նշաւակ ընել՝ ամուսնանալէն յառաջ։ Համմտ. Ստրաբոն 14 գ. 16. Համմտ. նաեւ Bachofen, Tanaquil S. 48 f.

[2] Արդէն յառաջագոյն քրիստոնէութիւնն առանձինն կողմեր տարածուած էր, բայց ոչ ամբողջովին։ Համմտ. Hergenröther, Kirchenlexicon, v. Armenien I S. 1327. f. (v. Himpel).

[3] Էջմիածնի վրայ համմտ. Ritter, Erdkunde X S. 514 f.; Telfer, Crimea and Transcaucasia I p. 225 f.; Haxthausen, Transkaukasia I S. 255 f.

[4] Հանդերձ այսու՝ քրիստոնէութեան մուտէն յառաջ կար գրականութիւն մը. բայց անկէ դոյզն հետքեր հասած են մեզ։ Neumann, in Hermes, krit. Jahrb. 1829 S. 183 f.

[5] Համմտ. Neumann, Versuch einer Geschichte der arm. Lit. S. 30 f. Համմտ. նաեւ Մեսրոպայ վրայ, Մովսէս Խորենացի (թրգմ. Լաուէրի) էջ. 205, 215։

[6] Neumann, Versuch S. 28 f.

[7] Կիլիկեան Հայոց գրականութիւնն շատ աւելի նուազ էր քան զՄեծ Հայոցն. Համմտ. Dulaurier, Recueil des historiens des croisades, Préf. Documents Arméniens I p. V f.

կածութեան, որմէ ԺԷ եւ ԺԸ դարն վերստին ելաւ կանգնեցաւ։ 1676ին Մխիթար Սեբաստացին ծնաւ[1], հիմնադիրն Մխիթարեանց, որոնք բախտի փոփոխութիւններէ ետեւ հաստատուեցան ի Վենետիկ, Ս. Ղազար ծանօթ կղզւոյն վրայ։

Այն գրականութիւնն, զոր կը ծանօթացընէ մեզ Նոյման, թարգմանութիւններն ի բաց առնլով՝ աւելի աստուածաբանական եւ պատմական է. սակայն կը գտնենք նաեւ գրուածներ, որ իրաւագիտութեան կը հային. այսպէս կը յիշուին ճառեր բարեկարգութեան վրայ, այսպէս նաեւ (թէեւ կորուսեալ) ճառ յաղագս իրաւաբանութեան ի Ցովհաննէս Սարկաւագէ, ԺԲ. դարու[2]։

## Բ.

Հայաստանի քաղաքական անյաջողութիւնն իւր քաղաքային եւ իրաւագիտական կազմութեան հետ սերտ յարաբերութիւն ունի[3]։ Արդէն հին ժամանակներն՝ թագաւորութեան օրերն, դեռ Հայկազնեան Հարստութեան ժամանակն, որ մինչեւ առաքելական նախաժամանակն կը հասնի, կար բազմութիւն մը գրեթէ ինքնիշխան ժառանգական իշխաններու՝ նախարարաց, որոնք իրենց երկրին մէջ կատարեալ անկախ էին[4]։ Բայց թագաւորին հարկ տալու օրէնք մը կար, նաեւ պարտաւորութիւն մը պատերազմի երթալու անոր հետ. սակայն ասոր կը պակսէր ծանրագոյն նուիրականութիւն՝ աւատային ultima ratioն, կ'ուզեմ ըսել՝ եթէ մէկն զանց առնէր պարտքը, աւատը չէր կորսուաներ[5]։

---

[1] Համմտ. Neumann, Versuch S. 261 f., նաեւ Hermes, krit. Jahrb. 1829 S. 182 f.

[2] Neumann, Versuch S. 161, 162.

[3] Համմտ. յաջորդին մասին Dulaurier, Recueil des historiens des croisades, Introduction, Documents Arméniens I p. L S f.

[4] Համմտ. ասոր վրայ Մ. Խորենացի (Թրգմ. Լաուէրի) Բ. 7, էջ 62 —։

[5] Անոր համար ապստամբ նախարարի մը դէմ յի-

Արշակունեաց Հարստութեան ժամանակ մեծամեծաց յարաբերութիւնն առ թագաւորութիւնն բաւական որոշուեցաւ: Մեծամեծաց՝ եւ քանի մը հարիւր մեծամեծաց թագաւորին գահին բոլորտիքը նստելու պատուոյ իրաւունք տրուեցաւ[1]: Եւ այսպիսի յարաբերութիւնք վերջին ժամանակներ դեռ կային, նաեւ Թ դարուն, երբ Հայաստան անկախութիւն մը ստացաւ Բագրատունեաց Հարստութեան ժամանակ:

Այսպէս Հայ ազգին մէջ աւատականութեան բողբոջներ կային, եւ անոր համար զարմանալի չէ, որ Հայք փռանկեան Արեւմտից հետ շօշափուելու ժամանակ՝ խաչակրութեան ատեն, Փռանկաց աւատային կանոնագրութիւններն արեւմտեան Հայոց վրայ մեծ ազդեցութիւն ունեցան, այն Հայոց՝ որ Տաւրոսի զառիթափէն դէպ ի Կիլիկիա իջած եւ հոն նոր թագաւորութիւն մը հաստատած էին, այն է Ռուբինեանց եւ յետոյ Հեթումեանց թագաւորութիւնն[2]: Հոս արեւելեան աւատային իրաւունքն խառնեցաւ արեւմտեանին հետ. Հայ նախարարներն, որ Պարոն էին եղած, ետեւէ էին նաեւ գաղղիական պարոնութեան իրաւանց, գաղղիական Անսիզի, — եւ այս իրաւունքը գտան իրենց մօտերն — յԱնտիոք: Հայ "Գունդստապլն[3]" Սմբատ, որուն վրայ քիչ մ'ետքը կը խօսինք, Անտիոքայ Անսիզները թարգմանեց եւ իրենց մէջ մտցուց. թարգմանութիւնն եղաւ 1265էն[4] յառաջ, — եւ մենք այս իրաւանց գրքին պահպանութիւնն իրեն պարտական ենք:

---

րաւանց բարձրնկէցութիւն չկար, այլ միայն գործնական՝ ըստ իրաւանց ազգաց՝ գահընկէցութիւն: Համմտ. Մ. Խորենացւոյ Բ. 84 (էջ 143—) դէպքն:

[1] Dulaurier p. LVIII.

[2] Համմտ. ասոնց ցանկն առ Dulaurier, p. LXI.

[3] Գունդստապլի դիրքն ի Հայաստան՝ համմտ. Dulaurier p. LXXV.

[4] Assises d'Antioche, Reproduites en français, Venise, 1876, p. XIX. f.

Սակայն այս իրաւունքն մեր ստորագրութեան առարկան պիտի չըլլայ. վասն զի առիկայ երկարատեւ իրաւունք մը չէր, որ ժողովրդական կենաց հիման վրայ արմատացած ըլլայ։ Աւատային կանոնադրութեանց հետ՝ որոնց վրայ շինուած էր, անհետացաւ գնաց։ Հոս Հայոց միայն սեպհական իրաւանց վրայ պիտի խօսինք։

## Գ.

Հայ ժողովուրդն այն ազգերէն է, որոնք ոչ միայն սեպհական հայրենեաց մէջ զարգացած են, այլ եւ գունդագունդ գաղթելով, օտար երկիրներ հաստատուած՝ ցրուած վիճակի մէջ փոփոխ յարաբերութեամբ ազգաց ձուլման եւ աշխարհի հաղորդակցութեան աճման նպաստած են։ Հայաստանի սոսկալի աւերներն, մանաւանդ Սելճուգեանց եւ Մողոլաց արշաւանքէն ետեւ, հայրենի երկրին կապերը թուլացուցին, եւ Հայոց խմբեր օտար երկիր գաղթեցին։ Արեւմտեան ազգերու մէջ ցրուեցան եւ մնացին այնպէս մինչեւ ցայսօր։ Հայ ազգին մէկ մեծ մասն — մէկ միլիոնէ աւելին աշխարհիս ամէն կողմը ցրուած է։ Տաճկաստանի մէջ դրամական գործքերն իրենց ձեռքն է, ի Թրանսիլուանիա եւ ի Հունգարիա Հայք գործունեայ վաճառական են, եւ յԱւստրիա գրեթէ 20.000 են կ'ըսուի[1]։ Կաւկասի հովիւ ժողովուրդն[2] օտար քաղաքակրթեալ երկրի մէջ միանգամ ընդ միշտ համաշխարհային վաճառականութեան գործիք է եղած. ի հայրենիս՝ հովիւք, յօտար երկրի՝ վաճառականք եւ սեղանաւորք։ Ի Կալիցիա Հայք ինքնակաց հասարակութիւն կը կազմէին, որոնք իրենց սեպհական իրաւանց համեմատ կ'ապ-

[1] Համմ. Löher, Beiträge zur Geschichte und Völkerkunde I, S. 257.

[2] Արդէն Հերոդոտ Ե՜ 49 կը յիշէ Ἀρμένιοι πολυπρόβατοι. Լեմպերկի իրաւանց գրքին մէջ կը յիշուին դեռ հովիւ եւ հօտ։

րէին, եւ չկար հասարակութիւն մը՝ որ այնչափ ազդեցութիւն ունենար, որչափ Լեմպէրկինը։ Արդէն Լեմպէրկի հիմնադիրն՝ Լեւոն Յոմիլավիչ 1280ին Հայերն ի Լեմպէրկ բերած է[1]։

Այս ստոյգ է, որ Հայք հոն արդէն Գազիմիր Մեծին ժամանակ մեծ դեր կը խաղային, եւ հոն անշարժ ստացուածքներ, ագարակներ եւ տներ ունէին։ Գազիմիր իրաւունք տուաւ Հայոց Գրիգոր եպիսկոպոսին Լեմպէրկ բնակելու, եւ յետոյ իրենց իրաւունքն՝ ըստ հայկական իրաւանց եւ ատենի ապրելու՝ շատ անգամ հաստատուեցաւ[2]։ Նաեւ շատ անգամ, ինչպէս Լատիսլաւ Բ.ի ժամանակ՝ 1402ին եւ Գազիմիր Դի ժամանակ 1462ին, Լեհական պետութեան ամէն մասանց մէջ վաճառականութեան ազատութիւն շնորհուեցաւ իրենց[3]։

Լեմպէրկի այս հայ հասարակութեան եւ գերմանական իրաւանց համեմատ ապրող բնիկ քաղաքացեաց մէջ երկարատեւ վէճեր ծագեցան, որոնք գլխաւորաբար հայկական իրաւաբանութեանց գործադրութեան վրայ էին։ Ի սկզբան հայ Վոյթն հայ Պատուաւորաց կամ Աւագանւոյ հետ դատ կը կտրէր. թէ սակայն երբ փոխուեցաւ՝ չի գիտցուիր ստուգութեամբ. վասն զի Գազիմիր Բի արտօնագիրն 1356ին (Մակտեպուրկեան իրաւանց եւ Հայոց եւ այլ ազգաց վարչութեան մասին) բաւական կասկածելի է։ Հանդերձ այսու՝ այս երկբայական արտօնագիրն 1460ին Գազիմիր Դէն հաստատուեցաւ, որով եւ վճռուեցաւ՝ թէ Հայք իրենց իրաւունքն ոչ թէ իրենց Վոյթէն, այլ քաղաքին Վոյթէն կ՚ընդունին, բայց այնպէս՝ որ քաղաքին Վոյթն ոչ թէ երդուեալ դատաւորաց հետ, այլ հայ Աւագանւոյն

[1] Հմմտ. Rommel, in Ersch und Gruber, Armenien, Sect. I Th. V S. 358.

[2] Bischoff, Österreichische Blätter für Literatur und Kunst vom 11. Juli 1857 Nr. 28 S. 217 f.

[3] Bischoff, Blätter für Literatur l. c., եւ Urkunden zur Geschichte der Armenier in Lemberg, Nr. 8 եւ 15.

Հետ դատաստանի պիտի նստէր։ Սակայն ատով ալ չլմնցաւ. վէճերն յառաջ կ՚երթային, եւ քաղաքացիք կը պահանջէին Հայոց ինքնիշխան ատենի իրաւունքները նուազեցընել[1]։ Սիկիզմունտ Ա ի թագաւորութիւնն Հայ հասարակութեան պատմութեան մէջ նշանաւոր դար մ՚եղաւ։ Արդէն 1510ին[2] Սիկիզմունտ յաջորդ որոշումն ըրաւ. Հայոց խնդիրներն քաղաքին Վոյթին առջեւ պիտի հանուէին, եւ չորս դէպքի մէջ խնդիրներն գերմանական իրաւանց համեմատ եւ երդուեալ դատաւորաց հետ պիտի որոշուէին. այսինքն 1. Անշարժական իրաց խնդիրներն, 2. Բռնաբարութիւնք, 3. Սպանութիւն եւ վիրաւորումն, եւ 4. Գողութիւնք[3]։ Ուրիշ ամէն դիպաց մէջ՝ քաղաքին Վոյթն փոխանակ երդուեալ դատաւորաց՝ պիտի առնուր վեց հայ Աւագանի, եւ "ինչպէս այս վեց հայ Աւագանին ըստ իրաւանց եւ սովորութեանց Հայոց խնդիր մը որոշէին, նոյնպէս պիտի ընդունէր քաղաքին փաստաբանն„ (Bischoff, Urkunden S. 41)։ Առաջին խնդիրներուն մէջ բողոքը գերմանական օրինաց համեմատ պիտի ըլլար. իսկ Հայոց վերապահեալ խնդիրներուն մէջ բողոքն Թագաւորին պիտի ըլլար։

Այս իրաւունքները հաստատեց Սիկիզմունտ 1518ին[4], նոյն տարին[5] երկրորդ որոշում մը տա-

---

[1] Հայ հասարակութեան պնդութիւնն նաեւ անով մեծապէս տկարացաւ, որ այլեւայլ անդամք միաբանութենէ քակեցան, եւ գերմանական իրաւանց կողմն անցան։ Հմմտ. Լատախալաւի 1436ին կարգադրութիւնն առ Bischoff, Urkunden zur Geschichte der Armenier in Lemberg Nr. 7, Ասիկայ վերջէն բարձուեցաւ, ըստ կարգադրութեան Սիկիզմունտոս Աւգոստոսի, յամի 1561, անդ Nr. 85.

[2] Bischoff, Urkunden Nr. 23.

[3] Pro bonis et rebus immobilibus, puta hereditatibus, domibus, hortis et agris et aliis ejus generis; pro omnibus et singulis violenciis in civitate et extra civitatem quomodolibet commissis; pro homicidiis, vulneribus cruentis et lividis ex quacumque causa commissis; pro furtis. (Bischoff, Urkunden, S. 40, 41.)

[4] Bischoff, Urkunden Nr. 26.

[5] Bischoff Nr. 27.

լով, թէ քաղաքին Վոյթն Հայ Աւագանւոյն հետ թէեւ դատաստանարանի մէջ, բայց ոչ երդուեալ դատաւորաց աթոռոց վրայ դատաստանի պիտի նստէր։ Վերջապէս[1] 1518ին ուրիշ վճռով մը կ'որոշէ, թէ "Հայք իրենց իրաւունքն ռութէն կամ լատին լեզուաւ ընդհանուր ժողովքի բերեն եւ իր առջեւ հանեն" (էջ 50)։ Այս եղաւ սկիզբն ծանօթ լատիններէն իրաւանց գրքին, որ է՝ Իրաւունք Լեմպերկի Հայոց լատին լեզուաւ։ 1519ին Թագաւորն հաստատեց զայն, սակայն ոչ բացարձակ կերպով, այլ բազմադիմի եղանակաւորմամբ. բայց որովհետեւ այս եղանակաւորմունք իբրեւ ուղղելիք իրաւանց գրքին յօդուածներուն վերջն աւելցուեցան, (էջ 7, 10, գ. 1, 2, 3, 4, 9, 11, 16, 20, 21, 22, 25, 32, 33, 37, 38, 39, 40, 41, 42, 45, 46, 55, 59, 60, 63, 69, 80, 88, 104, 105, 117,) իրաւանց գիրքն ամբողջապէս մնաց անարատ։

Իսկ համաշխարհային դատաստանական խնդիրներու համար որոշուեցաւ, որ Հայն զՈչ-Հայն երդուեալ դատաւորաց առջեւ, իսկ Ոչ-Հայն զՀայն Հայոց ատեանն քաղաքին Վոյթին առջեւ կրնար յատեան կոչել, վերջին դէպքին մէջ ի բաց առնլով վերոյիշեալ չորս կէտերն, որոնց մասին Հայն երդուեալ դատաւորաց ատենին ենթարկեալ էր։

Իրաւանց գիրքն բաղկացեալ է տասն Վճիռներէ, որ առանց թուոյ են, եւ 124 թուեալ Գլուխներէ։ Հետաքրքրական են բազմաթիւ ցիրուցան մեկնողական սլաւ բացատրութիւններն, որոնք տեսակ մը Մալպերկեան Մեկնութիւն լատին բնագրին կը կազմեն, եւ կը ցուցընեն թէ այս կարգի մուծուած մասեր (interpolation) ինչպէս յառաջ կու գան. այսպէս՝ c. 19: parentes debent istud obtegere *alias ogarnacz;* c. 48: quod non esset ptisicus *alias*

---

[1] Bischoff Nr. 28.

*dijchawicznij aut nossathij*; c. 61: quod ipse est homicidia tirannicus hominum *alias zabijacz*[1].

Այս իրաւունքն ոչ միայն ի Լեմպերկ, այլ եւ ուրիշ Լեհական Հայոց մէջ ի գործածութեան էր, եւ այլեւայլ տեղեր ընդօրինակութիւնք գտնուած են[2]:

Լեմպերկի քաղաքական դիւանին լատին ձեռագրին վրայէն Պիշոֆ աքանչելի հրատարակութիւն մ'ըրած է այս անուամբ՝ Das alte Recht der Armenier in Lemberg, Wien, 1862. Իրեն պարտական ենք, — որովհետեւ Հաքսդհաւզէնի հաղորդածներն պակասաւոր են, — համեմատական իրաւագիտութեան համար այս անգին յիշատակարանն. յիշատակարան մը՝ որ մեր աչաց առջեւ լուսաւոր կը դնէ, թէ ինչպէս հայ իրաւանց ձեռօք արեւելեան բան մը յԱրեւմուտս զօրացաւ, արեւելեան բան մը՝ որ դարաւոր երկար պատերազմներէ ետեւ արեւմտեան իրաւանց տեղի տուաւ:

Լատին բնագիրն 1601ին լեհերէն թարգմանեցաւ, եւ այս լեհերէն թարգմանութեան ձեռագիրներն ի Կալիցիա եւ ի Ռուսական Լեհաստան տարածուած են[3]:

Այս ամենայն կը ցուցընէ իրաւանց գրքին մեծ նշանակութիւնը[4], որ անկէ ի վեր պէտք էր առաւել եւս իրաւագիտական նկատողութեան նիւթ եղած ըլլալ:

Նաեւ այլ յետնագոյն վճիռք լեհ թագաւ-

---

[1] Հմմտ. Նաեւ գ. 34, 64. Նոյնպէս լեհական կարգադրութեանց մէջ, ինչպէս 1686ին՝ ratione vulnerum lethalium alias smiertelnych razow. Bischoff, Urkunden Nr. 65 (p. 143).

[2] Bischoff, das alte Recht der Armenier, S. 5.

[3] Անդ, S. 6, եւ Österreich. Blättern f. Literat. 1857. Nr. 33 S. 257.

[4] Նոյնը կ'ամբողջանայ դատաստանի եւ գործադրութեան վրայ տրուած որոշումներով, որ լեհ թարգմանութեան մը մէջ կը գտնուին, Bischoff, Östereich. Blätter, S. 258.

որաց զբաղեցան Հայոց իրաւաբանութեամբ. այսպէս ի մանաւորի Սիկիզմունտ Օգոստոսի 1563ին[1] տուած պատասխանն: "Ուրիշ ամէն գործոց եւ խնդրոց մէջ՝ բաց ի յիշեալ չորս կէտերէ[2], Հայք առաջին փաստաբանի քաղաքին եւ Աւագանւոյն Հայոց պարտական են երեւալ, եւ ամէն ամբաստանողք Հայոց իրաւանց բանից եւ տրամադրութեանց համեմատ պիտի արդարանան եւ պիտի պարտաւորին" (Bischoff p. 7): Յամին 1616 կարգադրութիւն մը հրատարակուեցաւ[3], որով Հայ Աւագանւոյն Հայ հասարակութեան վրայ ունեցած հրապարակագրական իրաւունքներն հաստատուեցան: Լատիզլաւ Դ.ին 1634ին[4] տուած վճիռն Հայ իրաւաբանութիւնն հաստատեց, նոյնպէս նաեւ Յովհաննէս Գ.ի որոշումներն 1686ին եւ 1692ին[5]: 1686ին վճռոյն մէջ կ'ըսուէր, թէ Հայոց ատեանն "ըստ իրաւանց եւ ըստ Հայ յօդուածոց դատուի": (Bischoff, p. 144.)

Սակայն Հայ հասարակութեան մէջ ալ ծանր վէճեր ծագած էին, եւ Հայ եպիսկոպոսին վրայ եղած կռիւն ԺԷ դարուն առաջին կիսուն՝ երկիւղալի սկսաւ երեւալ[6]: Հայ հասարակութիւնն վերստին շունչ առաւ, եւ Օգոստոս Գ. 1736ին հաստատեց իրենց ազատութիւններն[7], — մինչեւ որ նոր կարգադրութիւն մը իրաւանց անձնականութեան եւ Հայոց առանձնաշնորհութեան հետ իրն ալ վերցուց մէջտեղէն, որով նաեւ Լեմպէրկի իրաւունքն պատմութեան անցաւ:

Սակայն Լեմպէրկի իրաւունքն ԺԶ դարու

---

[1] Bischoff, Urkunden Nr. 36.

[2] Այս չորս կէտերն հոս առանձինն կը բացատրուին եւ վաւերական մեկնութեամբ կը մեկնուին:

[3] Bischoff, Urkunden Nr. 51.

[4] Bischoff, Urkunden Nr. 55.

[5] Bischoff, Urkunden Nr. 65 (p. 143 f.), Nr. 67.

[6] Bischoff, Österreich. Blätter S. 259.

[7] Bischoff, Österreich. Blätter S. 530.

ծնունդը չէր, եւ ոչ դիւտ Լեհահայոց: Ասոնք իրենց հայրենիքէն բերած էին զայն. 1184 ին գրուած հայկական իրաւանց գրքէն հանուած էր, այն է՝ Մխիթարայ Գօշի Դատաստանագրքէն:

## Դ.

Ամենեւին տարակոյս չկայ որ Հայ ազգն ի սկզբան անդ կաւկասեան կազմութիւն ունէր, օրէնսդրութիւն ունեցող ազգ մըն էր, որպիսի են նաեւ ցայսօր Վիրք եւ աւելի Օսերն[1]: Ազգ մը՝ որուն ցեղական խնամութիւնն արիական է, որուն ցեղական կազմակերպութիւնն կողմնական-այրական գծէն կ'առնուի, որ ցեղական ստացուածք ունի, որուն մէջ կայ՝ ցեղական թշնամութիւն, ցեղական երաշխաւորութիւն, կանանց առեւանգութիւն եւ վաճառումն, վրէժխնդրութիւն արեան, ինքնօգնութիւն, մէկուն անմեղութեան կամ յանցաւորութեան փորձ (ordalium) եւ երդմնակցութիւն: Ասոր կը վկայէ ոչ միայն այն Կաւկասեանց օրինակն, որոնք արտաքին քաղաքակրթութենէն փոքր ի շատէ ազատ մնացած են, այլ եւ այն ամենայն՝ ինչ որ հին Հայոց վրայ կը լսենք: Թէ Հայոց քով կար արեան վրէժխնդրութիւնն՝ ինչպէս ամէն հնդեւրոպական ազգաց քով, կը ցուցընէ Եւսեբեայ նշանաւոր վկայութիւնն[2] (ի Բար-

---

[1] Բայց թէ հայերէնն օսերէնի շատ մօտաւոր ազգականութիւն ունենայ, ինչպէս առ հասարակ կը կարծուէր, շատ տարակուսական է: Համմ. Հիւպշման, Zeitschrift für vergl. Sprachforschung N, F. IV S. 396, 411. եւ նոյնին՝ Ethymologie und Lautlehre der orsetischen Sprache, 1887: Բայց հին Հայոց վրայ մեր գիտցածն զմեզ կ'ապահովցընէ՝ թէ իրենց իրաւաբանական սովորութիւններն յառաջագոյն միւս Կաւկասեան ազգաց հետ համացեղ էին. Հանդերձ այսու՝ Հայոց արիական ծագումն միշտ կը տեսնուի, եւ իրենց կենցաղն զարգացած է միեւնոյն պարագաներով՝ որ միւս Կաւկասեանց վրայ կ'երեւայ:

[2] Համմ. յաջորդի մասին նաեւ Dareste, Journal des Savants, 1887, p. 165. f.

դեծանէ) Պատր. Աւետրնի[1], որ կ'ըսէ. «Պարթեւաց եւ Հայոց քով մարդասպանները կը սպաննուին երբեմն դատաւորներու եւ երբեմն սպանելոց ազգականացը ձեռօք։ Եւ եթէ մէկն իւր կինը կամ անորդի եղբայրը կամ ամուրի քոյրը կամ զորդին եւ կամ զդուստրն սպաննէ, ոչ ոք զինք ի դատ կը կոչէ. վասն զի այսպիսի է այն երկիրներու օրէնքն[2]։» Եւ թէ երաշխաւորութիւնը՝ բովանդակ ցեղը պարտաւորիչ երաշխաւորութիւն էր, ուրիշ վկայութիւններէ յայտնի է[3]։

Հայոց՝ արիական ցեղից օրէնքն ունենալուն վկայ, եւ անդիմադրելի վկայ ունինք Յուստինիանոսի երկու կարգադրութիւններն, Հրովարտակ Գ. յամի 535, եւ ի Մատենի Նորոց, ԻԱ յամի 536[4], զոր եւ Տարեստէ կը յիշատակէ։ Անկէ կ'երեւայ՝ որ Հայք այն ատեն իրենց կանայքը կը վաճառէին[5], կանայք ամենեւին օժիտ չէին ընդունէր եւ ժառանգական յաջորդութենէ, գէթ ի մասին ժառանգական ստացուածոց, զրկուած էին։ Ծանօթ պաճուճաբանութեամբ, որ իրաւանց զարգացման համար շատ քիչ նշանակութիւն ունի, ազնուական Բիւզանդացին իւր զայրոյթը կ'անցընէ, եւ կը հրամայէ որ այսպիսի սովորութիւնք՝ — իբր թէ կանայք

---

1 Praepar. Evangel. VI 10 12.

2 Ըստ ամենայնի արեան առանձնական վրէժխնդրութեան օրինաց համեմատ։ Դեռ Վախթանգի Վրաց Օրինաց մէջ 78, 79 (Haxthausen, Transkaukasia II S. 205) կը կարդանք. «Հօրն ու որդւոյն մարդասպանութիւնը կը վերաբերի բոլորովին Աստուծոյ դատաստանին»։

3 Համմ. Dareste, p. 165,

4 Հայկական վարչութեան նոր կազմակերպութիւնն ի ձեռն Յուստինիանոսի նոյն տարին կատարուեցաւ. (Մատեան Նորոց, ԼԱ։)

5 Թէ յառաջագոյն կանանց վաճառումն տիրող էր, կը ցուցընէ նաեւ Օսեթրու օրինակն։ Վաճառման գինն՝ ասոնց եւ այլոց քով, կնոջ օժիտը կ'ըլլար, անով որ գինն ընդունողն ամբողջն կամ մէկ մասն կնոջ կու տար։ Համմ. Dareste, Journal des Savants 1887, p, 283. Օսեթրու քով մինչեւ ցայսօր կայ կանանց առեւանգութիւնն եւ առեւանգութեան արարողութիւններն։

այնպէս անարգ եւ արհամարհ արարածներ ըլլային, — իւր պետութեան մէջ այլ եւս չգործադրուին։ Կանայք եւ արք, ուստերք եւ դստերք, հայր եւ մայր եւայլն հաւասարապէս պէտք է որ ժառանգեն, եւ կանայք առանց օժտի պիտի չկարգուին "եւ պիտի չգնուին անոնցմէ, որոնք հանդերձեալ են անակից ըլլալ":

Ասով Յուստինիանոս նպատակին հասաւ։ Ինչպէս պիտի տեսնենք, Հայոց իրաւունքը՝ հնդկական օրինաց համեմատութեամբ շատ յառաջ երթալով, կը հրամայէ որ որդիք եւ դստերք հաւասար ժառանգական իրաւունք ունենան. Թէեւ եղբարց եւ քերց կարգին մէջ հին հնդեւրոպական ազդեցութիւնը դեռ կ'երեւայ։

Միւս ամէն կէտերու մէջ ալ Հայոց իրաւունքն արմատաքի փոփոխուած է[1], ոչ թէ նոր օրէնսդրութեամբ, այլ իրաւանց սովորութեամբ, — որուն խորագոյն արմատներն կրօնական տարերաց մէջ են։ Վասն զի քրիստոնէութեան հետ հետզհետէ մովսիսական եւ քրիստոնէական իրաւունքն մուտ գտաւ. Մովսիսական օրէնքը մտաւ այնպիսի սաստկութեամբ մը, որ ուրիշ ազգի մը քով չ'երեւար. եւ ոչ միայն իրաւանց նոր կազմութեան գրդիչ եղաւ, այլ ինքն ալ իրապէս իբրեւ օրէնք ընդունուեցաւ եւ իրաւանց կենացն հիմն եղաւ։ Ուստի մովսիսական իրաւունքն ալ օտարամուտ իրաւունք մըն է. վասն զի մուտ գտնելն զարմանալի բան մը չէ, ամէն կողմն իրաւունք մ'առաւել կամ նուազ մուտ կը գտնէ, ուր բարձրագոյն կամ խոնարհագոյն քաղաքակրթութեան կը հանդիպի. եւ ինչպէս մեր

[1] Այսպէս ի մասնաւորի՝ նաեւ պարտապանին երաշխաւորութեան մասին։ Թէ ի սկզբան անդ պարտատէրն կրնար պարտապանին անձն իսկ գրաւել, կը ցուցընէ Օսերու օրինակն։ Հմմտ. Dareste, Journ. des Savants 1887 p. 282 (ըստ Գոփալէվսքիի)։ Իսկ անմեղութեան կամ յանցաւորութեան փորձի եւ երդմնակցութեան մասին յետոյ պիտի խօսինք։

քօմն Եկեղեցին, որ ըստ Հռովմէական իրաւանց կ՚ապրէր, օտարամուտ օրինաց մուտ գտնելուն էապէս նպաստած է, նոյնպէս Հայոց քով՝ կղերն, որ Հին եւ Նոր կտակարանի խորամուխ եղած էր: Ցեղերու այրական-կողմնական գծերու կազմակերպութիւնն մէկ դի ձգուեցաւ, ցեղական ստացուածոց դրութիւնն դադրեցաւ, դաշնադրութեան իրաւունքն կենդանացաւ, ցեղական թշնամութիւնք բարձան, արեան վրէժխնդրութիւնք բաղադրեալ իրաւանց մէջ միայն տակաւին կեանք կրցաւ ունենալ, ինքնօգնութիւնք տեղի տուաւ մովսիսական արգելման, անմեղութեան կամ յանցաւորութեան փորձն եւ երդմնակիցք անհետացան, եւ միայն երդումն կրցաւ մնալ՝ յէականս մովսիսական-դալմուտական կերպով: Թէ յայսմ մասին քրիստոնէութիւնն ինչպէս մեղմացուցիչ ազդեցութիւն ունեցաւ, եւ նոյն իսկ մահմետականութիւնն, քիչ մ՚ետքը պիտի տեսնենք:

Ահա մեր առջեւն ազգ մը՝ որ կաւկասեան անկախութենէ քաղաքակրթեալ իրաւանց վիճակի անցաւ, երբ վերջին աստիճանի զարգացեալ կրօն մ՚ընդունեցաւ հանդերձ իրաւամբք՝ որ անոր մէջ կային: Չափազանց չենք խօսիր, եթէ ըսենք, թէ միայն այս իրաւանց մուտ գտնելովն Հայը կրցաւ՝ օտար աշխարհի մէջ՝ իբր սեպհական քաղաքակրթութիւն ունեցող՝ աշխարհի դեր կատարել: Կաւկասեան լերանց այս ազգն, որ այլ դրից մէջ Վրաց պէս միշտ ի մանկութեան պիտի ապրէր, աճեցաւ եւ զարգացաւ եւ իւր դրամատեարքն ու վաճառականքն Արեւելից առեւտրական հանգամանքն բարձրագոյն աստիճանի մ՚ամբարձին. Արեւելքը ծովակ ըլլալէն եւ պարփակեալ փոքրոգութենէ մեծապէս պահեցին:

Անոր համար, այս օտար օրինաց մուտ գտնելուն ծանօթութիւնն էական է Արեւելից քաղաքակրթութեան մուծանողներն ճանչնալու համար,

եւ ոչ ոք պիտի կարենայ լուծել այն առեղծուածն՝ զոր այս լեռնաբնակ ազգին քաղաքակրթիչ ոգին մեր առջեւ կը դնէ, եթէ իւր մտադրութիւնն չ'ուղղեր նաեւ այն մէկ բանին վրայ ալ՝ բարձրագոյն քաղաքակրթիչ իրաւանց մուտ գտնելուն վրայ, որ ազգային աւանդութեանց կապն խզեց, անհատին հզօր մղում մ'անձին զարգացման տուաւ, ղազգն ցեղական աւերիչ թշնամութիւններէ պահպանեց, եւ ստացուածքն ու վարկն վերացուց[1]:

Օտար իրաւանց այսպէս մուտ գտնելն՝ էապէս սովորութեան օրինօք եղաւ: Հայ թագաւորաց հին իրաւունքներէն մեզի բան մը չէ հասած, — բաց ի մէկ կարգադրութենէն Յովհաննէս թագաւորի, որ Բագրատունեաց Հարստութենէն էր, որուն վրայ քիչ մ'եւոքը պիտի խօսինք: Շատ ժամանակ անցաւ մինչեւ որ Հայոց իրաւունքն գրի առնուեցաւ. այս գրաւոր օրէնքն եղաւ ԺԲ դարուն:

Այսինքն 1184ին երկու ժողովածոյք եղան, մին ի Կիլիկիա, միւսն ի Մեծ Հայաստան[2]: Առաջնոյն հեղինակն է Ներսէս Լամբրոնացի Տարսոնի Եպիսկոպոսն. այս ժողովածոյքն բիւզանդեան իրաւունքներէ լոկ քաղուած մըն էր:

Մեծագոյն նշանակութիւն ունէր ժողովածոյքն Մխիթարայ Գօշի՝ ի մեծ Հայաստան Կուր գետին քով, զոր կազմած էր հոն տեղւոյ մէկ իշխանին համար, ժողովածոյք մը՝ որ Հայոց իրաւանց պատմութեան մէջ դարագլուխ կը կազմէ, եւ թէեւ իրաւանց գիրքն փոքր իշխանի մը համար կազմուած էր, սակայն նոյն իսկ Հայոց իրաւագիրքն եղաւ:

Այս իրաւանց գրքին՝ Դատաստանագրոց հրատարակութիւնն եղաւ 1880ին յէջմիածին, ի

---

[1] Հոս ալ կ'արժէ այն նախադասութիւնն զոր ուրիշ տեղ ըսած եմ՝ թէ "իրաւանց զարգացմամբն կը նետուին քուէներն, որոնք ազգին քաղաքակրթական կոչման որոշումը կու տան": Տես Recht als Lebenselement der Völker, S. 25.

[2] Assises d'Antioche p. XVIII.

Վահան Վ. է Բաստամեանց, ընտրելագոյն ձեռագրաց վրայէն, ինչպէս հաղորդեց ինծի Հ. Սարգսեան[1], ընդարձակ պատմական Նախաշաւղով: Շատ ցանկալի էր որ Ս. Ղազարու ուսումնական Մխիթարեանք Դատաստանագրոց այս հրատարակութեան գէթ մէկ մասին թարգմանութիւնը հրատարակէին: Առ այժմ ստիպուած ենք գոհ ըլլալ անով, զոր ուրիշ կողմանէ այս Դատաստանագրոց վրայ գիտենք: Սակայն այս ալ քիչ չէ. վասն զի Դատաստանագիրքն ունի իւր նշանակալից պատմութիւնը: Ասիկայ Հայոց աշխարհակալութեանց ետեւէն գնաց, — ընկերացաւ իրենց մինչեւ ի հեռաստան՝ ուր որ իրենց վաճառականութեան ոգին մղեց զիրենք, եւ դրացի ազգաց մէջ ալ իրեն ճանապարհ հորդեց:

Կիլիկեցւոց թագաւորութեան մէջ՝ յԱրեւմտեան Հայաստան, մտցուց վերոյիշեալ մեծ հայն Սմբատ, Կոստանդին Գունդստապլին որդին, Հեթում թագաւորին եղբայրն, եւ յաջորդ Լեւոն Գ. թագաւորին հօրեղբայրն, իւր ժամանակին ծանօթ Տարեգրոց հեղինակն, եւ Անտիոքայ Անսիզներուն համբաւաւոր թարգմանիչն: Այս Սմբատն Գօշի Դատաստանագիրքն Կիլիկեցւոց բարբառոյն վերածեց եւ ասով հոն գործադրութեան պատճառ եղաւ, 1265ին[2]: Բայց որ աւելին է, Թաթար Խաներն նոյնը թաթարերէնի թարգմանեցին, — եւ նոյն իսկ ռուսերէն թարգմանութիւն մ'ալ գտնուեցաւ, զոր թարգմանել տուած է Կատարինէ Կայսրուհին Խրիմի Հայոց համար[3]:

Դատաստանագիրքն գլխաւորաբար Վրաստան մուտ գտաւ, ուր ԺԵ դարուն (1676 Յ. Ք.) Վախ-

---

[1] Հմմտ. նաեւ Dareste, Journal des Savants 1887 p. 167.

[2] Assises d'Antioche p. XIX.

[3] Տեղեկութիւնք Հ. Սարգսեանց, որ առ այս ի մէջ կը բերէ Tschupanof, Grusinskaya Chrestomatia I, Յառաջաբան ԺԲ. եւ Alexieffի մէկ գործքն:

թանգ իշխանէն թարգմանուեցաւ։ Այս իշխանը նոյնը թարգմանեց եւ ուրիշ իրաւանց հետ մեծ ժողովածոյք մը կազմեց, զոր ԺԸ դարուն, երբ թագաւոր եղաւ, հրատարակեց[1]։ Բայց Վախթանգի Դատաստանագրոց մէջ հայ կանոններն առաջին տեղը չեն գրաւեր. այս ժողովածոյքը կը կազմուի Վախթանգի տուած սեպհական օրէնքներէն, զորոնք ինք մեծաւ մասամբ Վրաց սովորութեան օրէնքներէն քաղած էր (267 Յօդուած), եւ յաջորդ 6 մասունքներէ[2]։

1. Մովսիսական օրէնք (52 Յօդուած.)
2. Յունական օրէնք (318, ըստ այլոց՝ 420 Յօդ.)
3. Հայկական օրէնք (431 Յօդ.)
4. Օրէնք Կաթողիկոսի (23 Յօդ.)
5. Օրէնք Գէորգայ[3] (46 Յօդ.)
6. Օրէնք Ախպուխայի[4] (178 Յօդ.)

Իբր 3դ յառաջ բերուած հայկական օրէնքն ուրիշ բան չէ՝ եթէ ոչ Գոշի Դատաստանագիրքն. առաւ աւելի ծանօթացաւ այս Դատաստանագիրքն. վասն զի 1813ին եւ 1823ին Ռուսական պետութիւնը Վախթանգի ժողովածոյքին ռուս թարգմանութիւնը հրատարակեց, եւ անկէ քաղուածոյքներ ըրաւ Հաքստհաուզէն, Բ. էջ 194—266։ Վրաց ժողովածոյքին նոր մէկ թարգմանութիւնը հրատարակեց Frankl, ի հանդիսի Kauk. Revue, 1886[5]։

Հիմայ Գոշի դատաստանագիրքն ի մերձուստ նկատենք։ Ըստ Հուպէի[6] Դատաստանագիրքն 6 մասէ կազմուած է, որոնց մէջ են՝

---

[1] Հմմտ. Brosset, Nouveau Journal asiatique III (1829) p. 177 f. Haxthausen, Transkaukasia II. S. 195 f. 278 f. v. Hube, Zeitschr. der Savignystiftung, Rom. Th. III. S. 19. Dareste, Journal des Savants 1887 p. 168.

[2] Brosset p. 181 f. Haxthausen II. S. 278 f.

[3] Գէորգ Ե 1318—1346. Հմմտ. Haxthausen II. S. 280, Dareste, p. 170.

[4] ԺԴ. եւ ԺԵ. դարէն։

[5] Ըստ Darestei Journal des Savants 1887 p. 169.

[6] Ztschr. d. Savignystiftung, Rom. Abth. III. S. 18.

1. Եկեղեցական օրէնք, 125 Յօդ.[1].
2. Աշխարհական օրէնք, 130 Յօդ.
3. Մովսիսական օրէնք, 67 Յօդ.
4. Հռովմէական օրէնք, 152 Յօդ.
5. Կանոնք օրինաց, 85 Յօդ.
6. Յունական օրէնք, ԺԹ Գլուխ[2]։

Այս վեց մասերէն[3] մին երկար տարիներէ վեր ուսումնասիրութեան նիւթ եղած է, այսինքն չորրորդ մասն, որ Հռովմէական օրէնքը կը բովանդակէ. վասն զի այս մասն ուրիշ բան չէ՝ եթէ ոչ հայերէն թարգմանութիւն ասորական-հռովմէական դատաստանագրոց, որոնց ամէնէն էական որոշումներն Սախաուի թարգմանութենէն յառաջ պէտք էին Գերմանիա ալ ծանօթացած ըլլալ։ Վասն զի հայերէն դատաստանագրոց հետ Գոշին երկասիրութեան այս մասն Վախթանգայ դատաստանագրոց անցած է, անոր հետ ռուսերէն թարգմանուած է, եւ ասկէ Հաքստհաուզէն (Բ. էջ 239—) բաւական քաղուածոյ յառաջ բերած է։

Շատ հետաքրքրական է Հաքստհաուզէնի յառաջ բերած այս թարգմանութիւնն, որ վրացերէնի եւ ռուսերէնի մէջէն անցած է, Սախաուի հայ բնագրէն ըրած թարգմանութեան հետ համեմատելն։ Այս համեմատութիւնը կը ցուցընէ՝ որ վրացի դա-

[1] Բաստամեանց՝ Մխիթարայ Գոշի Դատաստանագիրք Հայոց, Էջմիածին 1880 էջ 293, կը դնէ միայն 124 յօդուած։
Ծ. Թ.

[2] Վերջին 3, 4, 5, 6 թուերու առջեւ յիշուած օրէնքները Բաստամեանց իբրեւ Գոշի գործը չ'ընդունիր, այլ անկէ ետեւ աւելցուած, եւ այն պատճառաւ ինքն Դատաստանագրոց հրատարակութեան մէջէն դուրս թողած է յիշեալ օրէնքները։ Անդ, Յառաջ. էջ 121։ Տես նաեւ Հեղինակիս տուած անմիջապէս յաջորդ ծանօթութիւնը։
Ծ. Թ.

[3] Կ'երեւայ թէ քանի մը հրատարակութեանց մէջ առաջին եւ երկրորդ մասը միայն կայ, որոնք առանձինն ամբողջ մը կը կազմեն։ Ասկէ՝ Անտիոքայ Անախիզներու Մխիթարեանց յառաջաբանին մէջ՝ էջ Ը. դատաստանագրոց իբր 251 յօդուած կը տրուի, որոնք ինչ ինչ ձեռագրաց մէջ մինչեւ 177 կ'իջնեն։

դատաստանագիրքն, վերոյիշեալ չորրորդ մասին կողմանէ, կը հետեւի Հայ-Հռովմէական օրինաց ժողովածոյին՝ ներածութենէն սկսեալ յօդուած առ յօդուած[1]։ Ի մասնաւորի կրնայ § 57էն (Բ. էջ 244 առ Հաքսդհաւզէնի) հարմնախօսութեան համբուրին նշանակութիւնն իմացուիլ։ Արդէն առ Հաքսդհաւզէնի (Բ. էջ 244) կ'ըսուի. "Եթէ հարս մը հարսանեաց պարգեւ մը՝ ոսկի, արծաթ եւ նոյնպիսի ընդունի, եւ փեսան հարսանիքէն յառաջ մեռնի, այն ատեն եթէ հարսնացուք զիրար տեսած են, զուարճացած եւ համբուրած, հարսանեաց պարգեւին կէսն հարսին պիտի մնայ, իսկ միւս կէսն փեսին տունը պիտի խաւրուի։„

Հայ դատաստանագրոց այս մասին մեկնութիւնը կը թողունք, — ոչ թէ որովհետեւ իրաւանց այս մասին Պրունի դրածին լիովին հաւան ենք[2], — այլ որովհետեւ ամէն պարագայք կը ցուցընեն, որ այս հռոմէական իրաւանց որոշումներն միայն դոյզն մասամբ հայ իրաւագիտական կենաց մէջ մտած են[3], ուր դատաստանագրոց միւս որոշումներն հայ

---

[1] Սակայն քանի մը փոփոխութիւնք կ'երեւան. այսպէս Վախթանգի § 3ը կը համապատասխանէ հայ դատաստանագրքին § 4ին. Վախթանգին § 4ը, հայուն §§ 2 եւ 3ին. Վախթանգի § 69ը հայուն § 68ին, Վախթանգին § 87ը հայուն § 86ին, § 109ը § 108ին, § 124ը § 123ին։

[2] Կատարեալ մեկնութիւնը կրնայ միայն այն ատեն տրուիլ, երբ Արեւելից՝ ազդեցիկ իրաւանց գաղափարներն ալ օգնութեան առնուին, ինչպէս նաեւ usus modernus pandectarumի մեկնութիւնը միայն գերմ. իրաւանց օգնութեամբը կրնայ տրուիլ. այսինքն ուղիղ մեկնութիւնը կրնայ տրուիլ միայն իրաւագիտութեան համեմատական ոճով։

[3] Այս ժողովածոյքներն ու հրատարակութիւններն պէտք չէ այսօրուան օրինաց գրոց պէս ենթադրել. աւելի ակամայ հակասութիւնք եւ հակառակ նախադասութիւնք են. ատոնք այնպէս չէին նկատուեր իբր թէ դատաւորը կապող կանոն մ'ըլլան, այլ ուսուցանող նիւթեր, որոնցմէ դատաւորն լաւագոյնը պիտի ընտրէ։ Եւ եթէ դատաւորն լաւագոյն քան զայն գիտէր, նոյնը պիտի գործադրէր։ Ասիկայ յայտնապէս կ'ըսուի Վախթանգի ժողովածոյքին յառաջաբանին եւ վերջաբանին մէջ, նոյնը կը տեսնուի նաեւ հայ դատաստանագրոց յառաջաբանին մէջ։ Հաքսդհաւզէն Բ. 197, 216, 240։

ազգին իբր նեցուկն էին եւ Հայ ազգին ընկերացան օտար աշխարհքներ։ Ասիկայ յայտնապէս կ'երեւայ Լեմպէրկէ դատաստանագրքէն, որուն վրայ հիմայ պիտի խօսինք. վասն զի այս Լեմպէրկի դատաստանագիրքն, ինչպէս Հաքսդհաւզէնի քաղուածոյքին հետ համեմատութիւնը կը ցուցընէ, մեծաւ մասամբ Գօշի ժողովածոյքէն առնուած է։ Իրաւանց այս կարեւոր յիշատակարանին վրայ պիտի յենուն յաջորդ մեկնութիւնք, ուր եւ նոյն տեղերն Հաքսդհաւզէնի հետ՝ ծանօթութեան մէջ պիտի նշանակուին։ Սակայն նախ պէտք է անոր յարաբերութիւնն առ ժողովածոյս Գօշի, եւ օրինացն որոշման նկարագիրն հոս տեսնել։

## Ե.

Լեմպէրկի իրաւունքն իբրեւ Հայ թագաւորներէ բղխած մեր առջեւ կը ներկայանայ։ Սակայն արդեամբք միայն Դ· երեան նշանակուած Յովհաննէս թագաւորին որոշումներն՝ Կիրակին սուրբ պահելու վրայ՝ վաւերական թագաւորական-օրէնք են։ Ասիկայ կը կարծուի թէ ըլլայ Յովհաննէս Սմբատ Բագրատունեաց տնէն (1020—1042)[1]։

Մնացեալ որոշմունք Թէոդոս անուն թագաւորի մը եւ այլ թագաւորաց եւ կաթողիկէ իշխանաց կը տրուին[2]։ Սակայն Թէոդոս անուն Հայ թագաւոր չկայ[3], անշուշտ Թէոդոս թագաւորը շինուած է Թէոդոս կայսրմէ[4], որուն կը տրուի Կոստանդնի եւ Լեւոնի հետ՝ ասորական-հռոմէական դատաստանագիրքն։ Հայք իրենց յիշատակին մէջ անկէ շինած են հին Հայ թագաւոր մը։

---

[1] Assises d'Antioche p. XVII.
[2] Bischoff, Das alte Recht, p. 8.
[3] Տեղեկութիւնք Հ. Սարգսեանց։
[4] Բնագրին մէջ սուտ Թէոդոսը կը գրուի Theodus, իսկ Թէոդոս կայսրը Theodos. Մենք իրարմէ որոշելու համար “թագաւոր„ եւ “կայսր„ բառերն աւելցուցինք։

Ծ. Թ.

Լեմպէրկի դատաստանագիրքն աւելի Գօշի Ժողովածոյքէն հանուած է. դատաստանագրոց գլուխներ ունեցող մասին 124 գլխէն (Bischoff, էջ 10—) 4ը Գօշի Ներածութենէն են, 4ը առաջին մասէն եւ 108ը երկրորդ մասէն[1]։

Ասկէ կ'երեւայ որ Հայ Ժողովածոյքին հռոմէական մասն (4դ մասը) Լեմպէրկի դատաստանագրոց չէ անցած, — սակայն ամբողջապէս ալ դուրս ձգուած չէ։ Դատաստանագրոց 110 Գլ.ն ասորական-հռոմէական դատաստանագրոց Հայ թարգմանութեան § 27, Ց7էն առնուած է, ինչպէս նաեւ 108ը § 53էն, 111ը § 130էն, 113ը § 145էն, 114ը § 149 եւ 150էն, 116ը § 1 եւ § 142էն[2]։

Իսկ այս որոշմանց բովանդակութիւնը նկատելով, որ Գօշի Ժողովածոյքէն Լեմպէրկի Ժողովածոյքն անցած է, կը տեսնուի մովսիսական իրաւանց եկամուտն. կը տեսնուի յայտնապէս որ Հայք իրենց օրէնքը մեծաւ մասամբ Հին Կտակարանի վճիռներէն առած են այն չափաւորութեամբ, զոր դրած են անոր թէ՛ քրիստոնէութիւնը եւ թէ՛ ազգային ցեղական սովորութիւնք։ Նաեւ Հայ իրաւանց մէջ ոչ միայն մովսիսական իրաւունքն Ս. Գրքէն առնուած է՝ այլ եւ շատ կէտերու մէջ՝ ի մասնաւորի դատերու մասին, թալմուտականաց ազդեցութիւնն ալ կը նշմարուի։ Ուր որ մովսիսական օրէնքն Նոր Կտակարանի մէջ փոփոխուած է, նոյնպէս Հայ իրաւունքն անփոփոխ չէ մնացած. համեմատէ միայն գերեաց մասին տրուած վճիռներն, առանձնական վրէժ-

---

[1] Տեղեկութիւնք Հ. Սարգսեանց։ Ըստ այսմ պէտք է 8 Գլուխ ալ ըլլալ։

[2] Անոր համար այս 6 Գլուխներն (108, 110, 111, 113, 114, 116) կը վերաբերին այն 8 Գլուխներուն, որոնք ինչպէս ըսինք՝ Գօշի սկզբնագրին առաջին եւ երկրորդ մասին չէն կրնար վերածուիլ։ Ըստ այսմ թուեալ Գլուխներէն 2 Գլուխ կը մնայ տակաւին, որոնց աղբիւրը չենք գիտեր։ Թէ այս փոխառութեանց ժամանակ չափաւորումն ալ կ'ըլլար, յայտնի է ինքնին՝ արեւելեայց իրաւագիտութեան բովանդակ ոճէն։

խնդրութիւնն արեան եւ զայլս[1]: Նաեւ եկեղեցական աղբիւրներէ շատ բան առնուած է, ինչպէս այն կանոնն՝ թէ գերի մը չի կրնար եկեղեցական ըլլալ, եւ ապաշխարութեան մասին որոշումներն:

Այս օտար օրինաց մտին դէմ միւս կողմանէ կը կռուէր ընդաբոյս օրէնքն, եւ կէտի մը մէջ որոշակի յաղթանակ է կանգնած, այսինքն արեան գնոյ եւ դրամական հատուցման (composition) մասին. արեան հատուցման հնարաւորութիւնը կաւկասեան ազգաց օրէնքն է[2], օրէնք մը՝ որ այնպէս ատոնց երակաց մէջ մտած է, որ օտար ազդեցութեան միշտ դիմադրած է: Իսկ յանցաւորութեան փորձն եկամուտ օրինաց տեղի տուած է, եւ ասիկայ վաճառական Հայոց քով այնչափ աւելի դիւրաւ կրնար ըլլալ, որչափ վաճառականութիւնն ալ այս ցուցման ձեւական եղանակին սաստիկ ատելութիւն մ'ունի:

Ինչ ինչ մասերու մէջ, որպիսի են սպանութեան պէսպէս եղանակներուն մանրամասն դիպաց վճիռներն, կը տեսնուի նորաբոյս մահմետական իրաւագիտութիւնն[3]:

Այս է Հայոց իրաւունքն, գէթ Հայոց մէկ մասին՝ Կալիցիայի Հայոց իրաւունքը, իրաւունք մը՝ զոր երկայն դարեր կռուելով ընդդէմ գերմանական օրինաց՝ հաստատուն պահել ջանացին Հայք. իրաւունք մը՝ մեծագործ քաղաքակրթական ազգին, որուն սակայն չէր շնորհուած խաղաղ քաղաքական զարգացմամբ յառաջադէմ ըլլալ, որ մանաւանդ իբրեւ խմոր մը Արեւելից ազգերուն մէջ թափանցելով, եւ չափազանց զարգացընելով՝ ազգաց յարաբերութեան զօդ պիտի ըլլար եւ ազգայնութեանց անջատիչ որմը պիտի բառնար:

---

[1] Համտ. § 213 Հայ օրինաց առ Հաքսդհաւզէնի Բ. էջ 255. "Յառաջագոյն ակն ընդ ական էր, ատամն ընդ ատաման եւ այլն. բայց այս օրէնքն Աստուծոյ շնորհօք եւ Աւետարանի վարդապետութեամբ բարձուած է:"

[2] Այսպէս Վրաց օրէնքն, Համտ. Հաքսդհ. Բ. 201, եւ իմ գործքս՝ Ueber die Blutrache S. 12.

[3] Համ. իմ գործքս Ueber die Blutrache, S. 23.

# Զ.

## Լուծումն Դատաստանագրոց Լեմպերկի[1]:

### 1. Անձնական իրաւունք:

Հայ օրէնքն՝ ինչպէս նաեւ մովսիսականը, գերութեան մասին կը զանազանէ հաւատակից եւ ոչ-հաւատակից։ Վերջին տեսակ գերիներն կատարեալ ստրուկ են եւ կրնան ըստ կամի ծախուիլ (Գլ. 18), իսկ ընդհակառակն առաջինք կէս գերի են միայն: Ասոնց նկատմամբ յայտնի է թէ մովսիսական իրաւունքն հետեւեալ վճիռները կու տայ. Հաւատակից մ'աւելի իբր ծառայ պիտի նկատուի՝ քան գերի, եւ վեց տարիէն ազատ պիտի թողուի (Ելք. ԻԱ. 2—, Ղեւտ. ԻԵ. 39—, Երկրդ. Օրինաց. ԺԵ. 1, եւ 12, Երեմ. ԼԴ. 14), եւ առանձինն որոշումներ կը տրուին՝ եթէ հայր մ'իւր դուստրը վաճառէ (Ելք. ԻԱ. 7—)։ Սակայն ծառան կրնայ վեց տարի ետքն ազատութենէն հրաժարիլ, եւ այնուհետեւ կը մնայ ընդ միշտ ծառայ, եւ հերիւնով անոր ականջը կը ծակուի (Ելք. ԻԱ. 5—, Երկր. Օրինաց ԺԵ. 16—)։ Այս վճիռներն հայ իրաւանց մէջ քրիստոնէական հոգւոյն համեմատ մեղմացած են։ Ծառայն ազատ պիտի թողուի՝ երբ ծառայութեամբ վաստկի այնչափ դրամ՝ որչափի ծախուած է, եւ եթէ ծառայն նաեւ հրապարակաւ հրաժարի իւր ազատութեան այս իրաւունքէն, նոյն իրաւունքը չի կորսնցըներ. բաց աստի՝ հայրը միշտ պիտի կարենայ իւր աղջիկն ետ գնել (Գլ. 16 եւ 17)։ Հեթանոս արծաթագին գերի մը՝ մկրտուելէն ետեւ քրիստոնէի իրաւունքները կը ստանայ (Գլ. 18)[2]։

---

[1] Դատաստանագրոց բովանդակութեան մասին համեմատէ նաեւ Bischoff, Österr. Blätter für Literatur und Kunst 1857, Nr. 37 und 39.

[2] Բնագիրն ունի՝ tunc tali modo hujusmodi servi debent esse liberi servitute, tamquam pecunias pro eis datas emererentur. Ասիկայ կրնայ նշանակել. Անմիջապէս

Գերին արեան թեթեւ իրաւունք ունի։ Տէրն, որ զինք կը զարնէ, արեան գինը պիտի վճարէ դատաստանին՝ միայն այն ատեն, երբ հարուածին հետեւութեամբն անմիջապէս մեռնի անիկայ. ուրիշ դիպաց մէջ արեան գին չի վճարեր, վասն զի գերին իւր ստացուածքն է։ (Գլ. 24։ Հմմտ. Ելք, ԻԱ. 20—) Վերջին դիպաց մէջ միայն ապաշխարանք պիտի կատարէ։

Եթէ տէրն գերւոյն մէկ աչքը հանէ հարուածով, գերին ազատ պիտի թողուի՝ (Գլ. 27։ Հմմտ. Ելք. ԻԱ. 26.) եթէ հաւատակից է. իսկ եթէ չէ՝ տէրը պարտական է զինք կէս գնով ծախել (Գլ. 27)։

Գերի մը չի կրնար եկեղեցական ըլլալ. պէտք է որ նախ ազատ թողուած ըլլայ, եւ կամ գէթ տէրն իւր հաւանութիւնը պիտի տայ (Գլ. 15). ըստ ամենայնի կանոնական իրաւանց համեմատ[1]։

Ծառայք հաւանութեամբ տերանց՝ կրնան իրենց ագարակը թողուլ եւ ուրիշ տիրոջ քով մտնել. եւ կ'երեւայ թէ տէրն միայն ազատ թողելոց նկատմամբ իրաւունք ունի զլանալու՝ այնպէս որ ընդդէմ իւր կամացն անվաւեր ըլլայ. բայց ոչ ազատ թողելոց տղոց նկատմամբ, որոնք յազատութեան ծնած ըլլան (Գլ. 2)։

Չափահաս կը համարուի 20 տարեկանն[2] (Գլ. 115). արուք մինչեւ չափահասութիւն յան-

---

ազատ կ'ըլլան, այնու որ մկրտութիւնն այն զօրութիւնն ունի՝ ինչ որ ետ գնելը։ Բայց կրնայ նշանակել նաեւ՝ Այնուհետեւ ազատ կ'ըլլան, երբ վաստկին իրենց արժեդինը։ Առաջին իմաստը կու տայ Bischoff, Österr. Blätter für Literatur und Kunst 1857, Nr. 37, S. 289. Վերջինն ինծի յարմարագոյն կ'երեւայ։

[1] Decret. Grat. c. 2, 7, 12, 21 dist. LIV; c. 3, 6 X de serv. non ordin, 1, 18. Այս մասին մատենագրական ցուցակը տես իմ գործս՝ Գերմանական անձնական իրաւանց պատմութիւնը Ա. էջ 15, Թ. 2։ Յայտնի է որ յիշեալ որոշումն այն վճիռներէն առնուած է, որ մինչեւ Ե դար կ'ելլեն։

[2] Թէ պատիժ ընդունելու ո՞վ ընդունակ է, տես վարը։

ձանձչութեան տակ են[1], իսկ եզք մշտնջենաւոր յանձանձչութեան, այն է իրենց ազգականաց՝ հօրն, եղբօրը յանձանձչութեան տակ, մինչեւ որ ամուսնանան (Համա. էջ 9, եւ Գլ. 115, 123), իսկ ամուսնութենէն ետքն՝ իրենց ամուսնոյն (Գլ. 115)։ Եթէ այրն անորդի մեռնի՝ կրնայ իւր ազգականներն յանձանձիչ կարգել (էջ 10)։ Անչափահասից ստացուածներն վարձու պիտի տրուին. կինն հաւանութեամբ ամուսնոյն կրնայ զանոնք օտարացընել (Գլ. 115)։ Տկարամիտն ու խեղն իրենց ազգականաց յանձանձչութեան տակ են (Գլ. 81)։

Ամուսնութեան մասին այսչափ միայն գիտենք՝ որ ազգականաց ներկայութեամբ պիտի ըլլայ (amicorum invitacio), եւ թէ ամուսնութենէ յառաջ օժտին վրայ իրարու հետ պիտի միաբանին (էջ 9.)։ Օժիտն կնոջ սեպհական կը մնայ, բայց ամուսնոյն մատակարարութեան տակ (էջ 9— եւ Գլ. 89)։

Կ'երեւայ թէ էրիկն ալ սովորաբար օժտին վրայ իւր կողմանէ բան մը պիտի յաւելու (էջ 9, 10)[2]։

Նոր պսակելոց պատերազմի չերթալն, մովսիսական օրինաց ծանօթ որոշման համեմատ է (Գլ. 69. Համա. Երկրդ. Օրինաց ԻԴ. 5)[3]։

Ամուսնանալու հասակին, ամուսնալուծութեան եւ նոյնպիսեաց վրայ Հայ իրաւանց մէջ կան որոշումներ §156. առ Հաքսդհաուզէնի Բ. էջ 253—։ Երեք Տուբիական գիշերներու մասին, որ առ Հայս սովորութիւն է, տես Telfer, Crimea and Transcaucasia III. Ա. էջ 255—։

[1] Յանձանձչութիւնն ընտանակա՞ն է թէ վարչական։ Ի Գլ. 115 Աւագանի կը յիշատակուի։ Ձեռագրի մը մէջ կայ՝ Աւագանի այսինքն յանձանձիչք։

[2] Ասոր հետ համեմատէ ասորական-հռովմէական դատաստանագրոց Հայ թարգմանութիւնը § 45, որուն համեմատ, ինչպէս յայտնի է, փեսան օժտին կէսն իբրեւ հարսանեաց պարգեւ վրան կ'աւելցընէր։

[3] Համա. Հայ իրաւանց § 273ն առ Հաքսդ. Բ. էջ 258։ Սիկիզմունտ թագաւորն այս նոր պսակելոց օրէնքն միայն չափաւորելով ընդունեցաւ։

Տղոց իրենց ծնողաց հնազանդելու պարտքը ջերմապէս կը յանձնուի (Գլ. 78). սակայն Մովսիսական օրինաց խիստ որոշումներն մեղմացուած են[1]։ Բայց ընդհակառակն ծնողաց ալ առանձնապէս կը յանձնուի տղոց կրթութեան եւ դաստիարակութեան հոգ տանիլ (Գլ. 77)։ Բայց թէ հայրն ի կարօտութեան կրնայ իւր աղջիկն ծախել, գէթ իբրեւ վարձու տուեալ դերի ծախել՝ մինչեւ որ արժեգինն ետ դարձրնէ եւ առնու աղջիկն, յայտնի է 17 Գլխէն։

## 2. Իրաց իրաւունք:

Յայտնի է որ Մովսիսական օրէնքն նախնական հասարակաց ստացուածոց օրէնքներէն մեծ կտորներ յառաջ կը բերէ, որոնց վրայ ուրիշ տեղ մը կրնանք խօսիլ։ Հոս կը յիշենք միայն մէկ կտորն։ Մովսիսական օրինաց համեմատ ամէն մարդ կրնայ օտարին այգւոյն մէջ խաղող ուտել, միայն թէ անօթի մը մէջ հետն առնուլ տանիլ չի կրնար. նոյնպէս օտարին արտին վրայ ձեռօք կրնայ հասկ ժողովուիլ, բայց ոչ մանգաղաւ[2], (Երկրդ. Օրինաց ԻԳ. 24, 28)[3]։ Այս որոշումն հայ իրաւանց ալ անցած է (Գլ. 67, 68)։

Պատերազմի աւարն՝ աւարառուինն է (Գլ. 107)[4]։

Գտնուած բան մը տիրոջը պիտի դարձուի՝ վրան եղած ծախքն առնլէն ետեւ։ (Գլ. 63։ Համմտ.

---

[1] Համմտ. վարն։

[2] Գերմանական իրաւունքն ալ ունի նոյնպիսի կտորներ. "երեքն ազատ է", երեք ողկոյզ, երեք պտուղ կրնար անցորդն առնուլ իրեն։ Համմտ. ասոր վրայ Chon, Deutsches Recht im Munde des Volkes, S. 8.

[3] Համմտ. Նաեւ Երկրդ. Օրինաց ԻԴ. 19—21։

[4] Համմտ. Նաեւ Հայ իրաւունքն առ. Հաքսդհաւզէնի Բ. 251, 266։ Աւարը բաժանելու Մովսիսական օրինաց մասին Համմտ. Թիւք, ԼԱ, 26—. Յեսու ԻԲ. 8. Ա. Թագաւորաց Լ. 23—։ Ռաբբունական իրաւունքն տեղական իրաւանց միտ դնել կը հրամայէ, տ. Fassel, Mosaisch-rabbinisches Civilrecht I. S. 202.

Երկրդ. Օրինաց ԻԲ. 1—։) Ծովեզերք գտնուած իրերն նոյնպէս իւր բուն տիրոջ պիտի դարձուին (Գլ. 86)[1]։

Գանձի նկատմամբ տրուած որոշումներն (Գլ. 9) Հրէական իրաւանց հետ կը նոյնանան[2]։ Հրէական իրաւունքը կ'որոշէ՝ թէ երբ գանձը պահելու ժամանակ երկիրն ընտանեաց մը կը վերաբերէր եւ նոյն ընտանեաց մէջ միշտ մնացած է, գտնուած գանձն ներկայ տիրոջն է, վասն զի կ'ենթադրուի որ իւր նախնիքն թաղած են[3]։ Նոյնն է նաեւ Հայ իրաւանց որոշումն, միայն թէ $^1/_{10}$ քաղաքային գանձատան պիտի տրուի։ Բայց եթէ որեւէ նշանէ մը տեսնուի, թէ գանձն հին թագաւոր մը թաղած է, այն ատեն գանձը քաղաքային գանձատան է, եւ պիտի տրուի միայն $^1/_{10}$ կալուածատիրոջ՝ ուր գանձը թաղուած էր, եւ $^1/_{10}$ գտնողին[4]։

Անշարժ ստացուածները ծախելու համար, պէտք է որ դատաւորին ծանուցուի, եւ դաշնագիրը դատաւորական կնիք պիտի ունենայ (Գլ. 88)[5]։

Վարձատուութեան իրաւանց վրայ յաջորդին մէջ կը խօսինք։

### 3. Պարտաւորութիւնք եւ անշարժ գրաւի իրաւունք:

Իրաւանց զարգացման ծիգն է՝ երկու դաշնագիրներն դաշնագրութեան կատարուելէն ետեւ

---

[1] Ռաքբունական իրաւունքը ծովեզերք գտնուածը գտնողին կու տայ, ենթադրելով որ տեղական օրինաց հակառակ չէ. Fassel, a. a. O. I. S. 195. Օգնողներու եւ ընկղմեալ նաւերու կարասին հանելու աշխատողաց վարձուն վրայ քիչ մ'ետքը։

[2] Ինչ ինչ մասին կը տարբերի Հայ իրաւանց § 182էն տս. Հաքսդ. Բ. 255։

[3] Fassel, a. a. O. I. S. 201.

[4] Հրէական իրաւունքը գտնողին եւ կալուածատիրոջ ամենեւին մաս չի տար, եթէ գանձն անյիշատակ ժամանակներէ չէ, եւ գանձը թաղողին հետքը կրնայ գտնուիլ. Fassel, I. S. 200.

[5] Վերջէն վէճ ծագեցաւ՝ թէ արդեօք ծանուցումն Հայ թէ գերմանացի դատաւորին պիտի ըլլայ։ Սիկիզմունտ 1523ին վերջնոյն կողմը վճռեց (Bischoff, Urkunde Nr. 32), նոյնպէս Սիկիզմունտ Օգոստոս 1563ին (Անդ. Թ. 36, էջ 69)։

բոլորովին պարտաւորել. սակայն հոս կը հանդի յաճախ երկայն ատեն զարգանալէն ետեւ: Զարգացման այս վերջին աստիճանէն յառաջ՝ կայ նշանաւոր աստիճան մը, այս է՝ դաշինքն այն ատեն կը պարտաւորէ, երբ ամբողջ կամ ըստ մասին փոխանակաւ գործադրուի, այնպէս որ՝ ոչ թէ խօսքն, այլ իրը՝ դաշանց գործադրութիւնը պարտաւորիչ զօրութիւն կ'ունենայ:

Ասիկայ է հայ իրաւանց դաշնադրութեանց աստիճանն ալ: Սակայն հոս նաեւ ըստ մասին գործադրելէն ետքն ալ պարտաւորութիւնը դեռ անկատար է, այնպէս որ եթէ գինն ըստ մասին վճարուած է՝ երկու կողմն ալ իրաւունք ունի ետ կենալու եւ դաշինքը լուծելու, բայց կորստով. այսինքն եթէ գնողը լուծէ՝ կը կորսնցընէ վճարած մասն, իսկ եթէ ծախողը՝ ընդունած դրամին կրկինը պիտի վճարէ (Գլ. 109, 110)[1]: Իսկ եթէ տակաւին ամենեւին բան մը չէ վճարուած, այն ատեն գնողն առանց բան մը կորսնցընելու կրնայ ետ կենալ. դէթ ծախողն դէմ պիտի չդնէ դաշանց այսպէս լուծման, եթէ գնողն գինը չի կրնար վճարել (Գլ. 46)[2]:

Ասիկայ նախնական-հայական, նախնական-կաւկասեան իրաւունք է. նոյնը կը գտնենք Օսսերու քով ալ՝ թէ որպէս զի դաշինքը պարտաւորիչ ըլլայ, հարկ է որ դէթ ըստ մասին վճարուած ըլլայ[3]:

Բայց այս իրաւունքն կը փոխուի, երբ դաշինքն ապագայ պտղոյ մասին է: Բնականապէս հոս ետ կենալու իրաւունքն սահմանաւորել պէտք էր, ապա թէ ոչ՝ միշտ ետ կենալու իրաւունք ունե-

---

[1] Հմմտ. ասորական-հռոմէական դատաստանագիրքն, Հայ Թարգմ. § 27, 97. Ես կը կարծեմ թէ այս որոշումն շատ հաւանականագոյնս ընդոծին ըլլայ, քան թէ հռոմէական-բիւզանդական իրաւունքէ փոխառութիւն: Նախադասութիւնն վերջին աստիճանի ընդհանրական է:

[2] Սիկիզմունտ թագաւորն կը հրամայէ, որ Հայք կալուած գնելու մէջ տեղական օրինաց ենթարկեալ ըլլան:

[3] Dareste, Journal des Savants 1887, p. 281 (Նաեւ Kovalewski).

ցողը կը շահէր։ Անոր համար կ'որոշուի, որ գնողն տասն օրուան միջոցին կրնայ ետ կենալ, բայց ոչ այնուհետեւ (Գլ. 53)։ Ետ կենալու հին իրաւանց մնացորդներէն մին ալ է հետեւեալը։ Հայ իրաւունքն, ինչպէս նաեւ շատ ազգաց իրաւունքները, կը ճանչնան ժառանգութեան յետս կոչումն։ Անիկայ չի կրնար ըլլալ, եթէ յետս կոչելու իրաւունք ունեցողներն՝ օտարացուելուն հաւանած են։ Եթէ օտարացուցումն ի կարօտութեան ըլլայ՝ ի հարկէ չքաւորութեան, այն ատեն յետս կոչումն տարուան մը միջոց վաւեր է (Գլ. 88)[1]։

Պարտքը հատուցանել պարտական է միայն պարտապանն եւ իւր ժառանգը, բայց ոչ ընտանիքն (Գլ. 113)[2]։

Առեւտրի մէջ հաւատարմութեան եւ վստահութեան մեծ արժանաւորութիւն կը տրուի։ Այն վաճառականն՝ որ իւր յաճախորդներն վաճառքի մասին կը խաբէ, ոչ միայն ետ դարձուած վաճառքը պիտի ընդունի, այլ եւ ըստ կամի պիտի պատժուի (Գլ. 82)։ Ձեռագէտն, որ իրեն յանձնուած նիւթէն կը գողնայ, կրկին (Գլ. 80) կամ նաեւ չորեքկին (Գլ. 105) հատուցանել կը պարտաւորի[3]. վաճառականն՝ որ իւր յաճախորդներն սուտ չափերով կը խաբէ, չորեքպատիկը կը պարտաւորի հատուցանել եւ վատահամբաւ կ'ըլլայ (Գլ. 104)[4]. աւանդապահն՝ որ աւանդը կը փճացընէ՝ կրկինը հատուցանել կը պարտաւորի (Գլ. 37), նոյնպէս պարտատէրն՝ որ գրաւած անշարժ իրերը կը փճացընէ։

Դաշանց իրաւանց մէջ յանցաւորութիւնն ալ

---

[1] Հմմտ. այս մասին Ղեւտականք ԻԵ. 25։

[2] Այսպէս նաեւ ասորական-հռոմէական դատաստանագիրքն, Հայ Թարգմանութիւն § 145։

[3] Յայտնի է որ իրեն յանձնուածն եթէ գրաւ դրած է, պարտական է անմիջապէս հատուցանել (Գլ. 105)։

[4] Սիկկիզմունտ Թագաւորն 104 եւ 105 գլխոց մասին կը վճռէ, թէ մակտեպուրկեան իրաւանց պատիժներն հոս պէտք է որ գործադրուին։

իւր որոշումներն ունի։ Աւանդապահն եւ անվաշխ փոխառուն եթէ յանցաւոր կերպով աւանդին մնասէ, կը պարտաւորի հատուցանել. կրնայ ազատիլ եթէ իւր անմեղութիւնն երդմամբ հաստատէ (Գլ. 37, 38, 114)[1]. ինքն ազատ կ՚ըլլայ եթէ աւանդատուն եւ փոխատուն ըլլան յանցաւոր. ինչպէս ի մասնաւորի, եթէ անիկայ ներկայ ըլլայ եւ դժբախտութեան հանդիպած ժամանակ նոյնին սպասէ (Գլ. 39)[2]։ Նոյնը կ՚արժէ նաեւ պարտատիրոջ համար՝ որ անշարժ իրերը գրաւած է. ասիկայ ալ անմեղութիւնն երդմամբ ցուցընելով՝ կրնայ ինք զինք ազատել. օրէնքը կ՚ըսէ "յիրաւանց հոգացուած է որ պարտաւորիչ իրն այնպէս պահուի, որ չկորսուի„ (Գլ. 41)։ Նոյնպէս հովիւն իւր անմտադրութեամբն կամ անկարողութեամբն յառաջ բերած վնասուց հատուցման կը պարտաւորի (Գլ. 102)։ Թէ նաեւ վարձառուն իւր վարձած իրաց պատասխանատու է, եւ եթէ յանցաւոր գտնուի՝ կը պարտաւորի, ինքնին յայտնի է (Գլ. 54 եւ 39)։

Նոյն բանն է եւ ձեռագիտաց համար, որ գործիք մը ստակով փոխ կ՚առնուն. եթէ պատահմամբ վնասուի՝ պարտական չեն (Գլ. 106). իսկ եթէ յանցանօք՝ կը պարտաւորին։ Նոյնպէս եթէ ձեռագէտն իրեն յանձնուած նիւթէն կորանցընէ, կորսուածին հատուցման կը պարտաւորի. բայց ոչ՝ եթէ թշնամի մը կրակ ձգէ եւ նիւթն ասով փճանայ (Գլ. 105)։

Իրն ետ դարձընելու ժամանակն անցընելն իբր յանցանք կը նկատուի. եթէ ձեռագէտ մը բան

---

[1] Մովսիսական իրաւանց համեմատ է. Ելք. ԻԲ. 10—։ Մանաւանդ Գլ. 38 գրեթէ ամբողջ Ելք. ԻԲ. 10—13էն առնուած է. վասն զի հոս ալ կ՚երեւայ՝ (Ելք. ԻԲ. 12ի նման) որ գողցուած իրին համար անպայման պարտաւորութիւն յառաջ կու գայ (Գլ. 41ն այլազգ կ՚որոշէ)։ Հմմտ. նաեւ ասորկն.-հռոմկն. դատաստանագիրքն, Հայ թարգմ. § 148։

[2] Այս որոշումն ալ մովսիսական իրաւունքէն առնուած է, հմմտ. Ելք. ԻԲ. 14, 15։

մ'երկայն ատեն քովը պահէ, կը պարտաւորի մնասուն՝ որ ցեցահարութենէ կամ մկնակերութենէ յառաջ եկած է (Գլ. 105): Նոյնպէս կը պարտաւորի՝ եթէ տիրոջմէ գաղտնի գործածելու ժամանակ մնասուի (Գլ. 106):

Իբր վճարումն տրուած պարգեւն հաւասար է վճարման, ինչպէս հին իրաւանց շատերուն մէջ (Գլ. 122)[1]:

Պարտաւորութիւնք կրնան երեսուն տարուան մէջ նախագրաւուիլ, բայց այս երեսուն տարին ընդհատուած կ'ըլլայ, եթէ պարտաւորութիւնն յիշեցընէ պարտատէրն (Գլ. 108)[2]:

Ինչպէս որ մովսիսական[3], մահմետական[4] եւ քրիստոնէական-կանոնական իրաւանց մէջ, նոյնպէս հոս շահառութիւնն կը պատժուի[5]. եթէ շահ վճարուած է, նոյնը դրամագլխոյն վրայ պիտի հաշուուի եւ կամ ետ պիտի դարձուի (Գլ. 40, 41): Սակայն Հայք, ինչպէս նաեւ Հրեայք[6] այս կանոնն միայն իրենց մէջ կը պահէին, բայց ոչ օտարին նկատմամբ. վասն զի յայտնի է որ Հայք Արեւելից դրամատեարքն են, եւ յանուանէ ի Կոստանդնուպոլիս[7]:

---

[1] Համմտ. իմ Beiträge zur germanischen Privatsrechtgeschichte, I. S. 11.

[2] Համմտ. ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ թարգմ. § 53:

[3] Ելք. ԻԲ. 25. Ղեւտ. ԻԵ. 36—. Երկրդ. Օրինաց, ԻԳ. 19: Այսպէս նաեւ ատեն մը բիւզանդեան իրաւունքն, Zachariä, Geschichte des griech.-röm. Rechts, S. 290.

[4] Կուրան Բ. 276—, Գ. 125.

[5] Վախթանգի օրէնքն Վրաց մասին (առ Հաքսդ. Բ. 207—) պարագայից յարմարելու կը նայի. 12% կամ 18% հոս այնչափ շատ չ'երեւար: Գէորգայ օրէնքն Վրաց մասին (ԺԴ. դար) § 46 (առ Հաքսդ. Բ. 227) կը հրամայէ՝ որ մէկն բոլոր իւր ընդունած շահերն ի միասին առնլով 20%էն աւելի չառնու:

[6] Համմտ. Երկրդ. Օրինաց, ԻԳ. 20: Իսլամական իրաւանց մէջ խնդրական է՝ թէ արդեօք վաշխառութիւնն օտարաց նկատմամբ օրինաւոր է՝ թէ ոչ: Համմտ. իմ յօդուածս ի Zeitschrift für vergl. Rechtswissenschaft, Դ. էջ 216:

[7] Նոյն կերպով Սիկիզմունտ Թագաւորը կը յաւելու. "Այս կարգագրութիւնն Հայոց քով պահուի եւ հաս-

Գրաւն իբրեւ յանձնարարեալ գրաւ սկսած է, եւ յետոյ զարգացած, եւ այսպէս՝ էր գրաւ մը՝ որուն արդիւնքը կրնար վայելել գրաւառուն եւ ի հարկին նաեւ օտարացընել։ Բայց վայելելի գրաւն ըստ ինքեան միշտ այնպիսի գրաւ է՝ որ կրնայ սպառիլ, ուր ընդ հակառակն մեռեալ-գրաւն (mortgage) շահառութեան բացարձակ արգելման դէմ է[1]։ Եւ սակայն գտած էին միջոց մը, մեռեալ-գրաւի արգելից առջեւն առնլու, ինչպէս հիմայ պիտի տեսնենք։

Գրաւառու պարտատէրն կը պարտաւորի ամէն յանցաւոր վնասուց, բայց ոչ պատահական վնասուց (Գլ. 41)։ Եթէ կարեւոր ծախք մ՚ըրած է իրին վրայ, իրեն պիտի հատուցուի (Գլ. 41)։

Գրաւը կրնայ օտարացուելի ըլլալ։ Երբ՝ օր որոշուած է պարտքը վճարելու եւ գրաւն ետ առնլու, եւ չի վճարուիր, գրաւառուն պարտական է պարտապանին երեք անգամ ազդարարել. եւ երբ ազդարարութիւնն ի դերեւ կ՚ելլէ, երկու վկայից առջեւ կրնայ գրաւն ծախել։ Եթէ իրն աւելի արժէ՝ քան որչափ կը պարտէր իրին տէրն, այս աւելին պարտապանին պիտի տրուի (Գլ. 111)։ Հոս յայտնապէս կ՚երեւայ հռոմէական օրէնքն՝ որ լաւ չէ հասկցուած, կամ ըսենք լաւ եւս՝ հռոմէական-ռամկական օրէնքն[2]։

Ասիկայ եւս առաւել կ՚արժէ ուրիշ կարգադրութեան մը համար։ Ինչպէս յիշատակեցինք, պարտաւորութիւնք կրնան երեսուն տարուան մէջ նախագրաւուիլ։ Բայց եթէ պարտաւորութեան

---

կցուի այսպէս, երբ պարտապանն ըստ պատահման եւ ոչ իւր յանցանօքը կամ չարութեամբ աղքատանայ, այնպէս որ պարտատեարց չկարենայ հատուցանել պարտքը։„

[1] Գլ. 41ը կը համապատասխանէ § 233ի Հայ իրաւանց առ Հաքսդ. Բ. 255—։ Ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ Թարգմ. § 133, գրաւին արդիւնքը վայելելն օրինաւոր կը նկատէ։

[2] Այսպէս նաեւ ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ. Թարգմ. § 130։

փոխարէն բան մ'իբր գրաւ տրուի, եւ պարտաւորութիւնը նախագրաւուի, այն ատեն գրաւն գրաւառուին ստացուածքը կ'ըլլայ (Գլ. 108)[1]: Յայտնապէս այս դէպքիս մէջ սա գաղափարէ կ'առաջնորդուի, որ գրաւադրութիւնն ալ կրնայ նախագրաւուիլ, որով գրաւառու պարտատէրն գրաւն

---

[1] Այս որոշումն յեցած է ասորական-հռոմէական իրաւագրոց Հայ թարգմանութեան վրայ (§ 53), թէեւ հիմնական փոփոխութեամբ: Այս օրինակն ընդհանրապէս կը ցուցընէ մեզի՝ թէ կարգադրութիւն մը յԱրեւելս ինչպիսի փոփոխութիւն կրնայ առնուլ: Նախապէս ասորական-հռոմէական իրաւագրոց որոշումն կը յիշեցընէ Թէոդոսեան օրինաց այն ծանօթ բացատրութիւնն երեսնամեայ նախագրաւութեան մասին, թէ գրաւառուին համար ընդդէմ պարտապանին չկայ նախագրաւութիւն: Նոյնը կը տեսնենք նաեւ ասորական հաւաքածոյին մէջ § 107, (Sachau, S. 32) վասն զի հոս կ'ըսուի. "Այսպէս կրնայ գրաւատուն, թէեւ իւր թուղթն 30 տարիէ յառաջ ըլլայ, իւր պարտուց փոխարէն անոր տուած գրաւն առնուլ": (Հմմտ. նաեւ Բարիզի ձեռագիրն § 76 ա:) Այլազգ կը տրամադրէ արաբական բնագիրն § 45. "Բայց եթէ ամբողջովին տուն մ'իբր գրաւ առած է — — եւ եթէ անիկայ չի ծախեր — —" եւ այլազգ կը տրամադրէ Հայ բնագիրն § 53. "Այսպէս կրնայ տոմսին տէրն նաեւ 30 տարի անցնելէն ետեւ իւր ստացուածքը պահանջել": Ուստի խնդիրն գրաւառուին գրաւառական գործոյն վրայ չէ, այլ սեպհական տիրոջն ետ առնելու գործոյն վրայ, եւ անիկայ կրնայ ըլլալ նաեւ 30 տարի ետքը, ցորչափ որ իրն պարտատիրոջ ձեռքն է դեռ, եւ երրորդի մը ձեռքը չէ անցած, եւ ցորչափ որ գրաւառու պարտատէրն երկրորդ անգամ չէ գրաւած, կամ ծախած չէ: Ասիկէ յօրինուած է Լեմպէրկի իրաւանց 108 Գլ.ը, թէեւ ի հակառակն փոխելով. եւ թէ ասիկէ փոխ առնուած է՝ կը ցուցընէ միջանկեալ կարեւոր պարբերութիւն մը որ հոս իմաստ չունի այսուհետեւ. այսինքն կ'ըսուի. "Այն ատեն այնպիսի գրաւն՝ եթէ առաջին պարտատէր ըլլայ, ստացողին ժառանգութիւն եւ ստացուած կ'ըլլայ": Այս խօսքն "թէեւ առաջին պարտատէր ըլլայ," կրնայ այն ատեն միայն հոս իմաստ ունենալ, երբ իբրեւ անգիտութեամբ Հայ իրաւունքէն փոխառեալ նկատուի, իբր թէ երրորդ մը նոյնը գրաւելու ըլլայ՝ կը դադրի աննախագրաւելի ըլլալէն: Լեմպէրկի իրաւագիրքն իրն այնպէս կը կերպարանափոխէ, որ աննախագրաւելիութիւնն միշտ դադրի, եւ կը դադրի՝ թէեւ իրն դեռ գրաւառուին ձեռքն ըլլայ, եւ այս որոշումն բացատրելու ժամանակ կը յաւելու՝ թէ կը դադրի նաեւ եթէ իրն "առաջին պարտատէր ըլլայ": Ինչ որ բացատրութիւն էր, հոս կանոնին օրինակ եղած է. Օրէնքներն ալ իրենց բախտն ունին: "Թէեւ"ը մէջտեղ մուծանելն զայս յառաջ կը բերէ:

իրեն կը սեպհականէ. տեսութիւն մը՝ որ նաեւ հասարակաց իրաւանց մէջ ալ կ'երեւայ[1]:

Հանդերձ այսու՝ կար նաեւ դրաւի այն տեսակն, որ որոշեալ ժամանակ մ'անցնելէն ետեւ՝ կը դադրի պարտաւորելէն[2]. վասն զի Գլ. 45ին մէջ "պտուղը վայելելու իրերն ծախելու վրայ" դրուածը՝ նոյն իսկ այս տեսակ դրաւ է: Պտուղը վայելելու իրաւունքը գնողին համար կ'ըսուի, թէ վճարած դրամին փոխարէն իրաւունք ունի առ ժամանակ մի պտուղը վայելել, բայց այս իրաւունքը կրնայ ետ գնուիլ. իսկ եթէ որոշեալ ժամանակն անցնելէն ետեւ՝ ետ չի գնուիր, գնողին ստացուածքը կ'ըլլայ: Ետ գնելու եւ իրաւանց դադրելուն ժամանակն սովորաբար եօթը տարի է, բայց կրնայ ըստ կամի երկնցուիլ: Ասկէ կը տեսնուի նաեւ, որ մեռեալ-դրաւն թէեւ ոչ կերպապէս, բայց նիւթապէս ընդունուած էր: Իրի մ'արդիւնքը դրաւելու իրաւանց տեղ (Antichrese) ընդունուած էր վայելք պտղոց, զոր կարելի էր ետ գնել. ասով պարտատէրը կ'ունենայ արդիւնքը վայելելու իրաւունք մը, առանց իւր դրամադլուխն նուազեցընելու, եւ սակայն պարտապանն ալ կրնայ իւր իրն ետ գնել. եւ ասիկայ կատարեալ այն դրութեան տեղ կը բռնէ, որով կարելի չէ դրաւն ժամանակաւ սպառել եւ ջնջել:

Պարտատէրն որբէ մը չի կրնար երբեք զգեստ կամ ուրիշ որ եւ է կարեւոր իրեր դրաւ առնուլ[3], եւ այսպիսի դրաւ մը եթէ նոյն իսկ աղքատը տալ ուզէ, եւ ոչ գիշեր մը պիտի կարող ըլլայ մնալ պարտատիրոջ տունն (Գլ. 71, 73), — որ յայտնապէս մովսիսական օրինաց կրկնութիւն մըն է (Ելք. ԻԲ. 26—, Երկրդ. Օրինաց, ԻԴ. 12—, 17): Ասիկայ

---

[1] Հմմտ. վկայութիւններն առ Glück, Pandecten XIV. S. 175.

[2] Առ Վիրս սոր դէմ կասկածներ կը յարուցուին, Հմմտ. Հաքսդհ. Բ. 233:

[3] Նոյնպէս Հայ իրաւանց § 279ն առ Հաքսդհ. Բ. 259:

կ'երեւայ նաեւ բացայայտ Գլ. 73ի յաւելուածէն. "վասն զի Աստուծոյ պատուիրանին համեմատ ողորմած պէտք է ըլլալ որբերու, ինչպէս Աստուած Հրէից յԱլքաիր կամ յԵգիպտոս ողորմածութիւն ցուցուց," որինքնին կը յիշեցընէ Երկրդ. Օրին. ԻԴ. 18 եւ ԻԴ. 22: Այսպէս նաեւ Գլ. 72. "ոչ ոք կարօտին վարձքը պիտի զլանայ," գրեթէ ամբողջ Երկրդ. Օրինաց, ԻԴ. 14, 15 գեղեցիկ խօսքերէն առնուած է[1]: Նոյնպէս մովսիսական օրէնքէն յառաջ եկած է այն կարգադրութիւնն՝ թէ ապօրինաւոր է ձեռաց աղացքի մը վերին կամ ստորին վէմը գրաւել վասն զի անիկայ աղքատին հացն է (Գլ. 70: Հմմտ. Երկրդ. Օրինաց, ԻԴ. 6)[2]:

Նաեւ պարտքը պահանջելու եղանակին մէջ մովսիսական իրաւանց ուղղակի ազդեցութիւնը կայ ապահովապէս: Իրաւանց 71 Գլ.ը կը կրկնէ Երկրդ. Օրինաց, ԻԴ. 10ն, անձամբ գրաւելուն արգելքը: Պարտատէրը չի կրնար պարտապանին տունը մտնել եւ ըստ կամի գրաւ մ'առնուլ երթալ[3], որոշում մը՝ որ նաեւ թալմուտական իրաւանց մէջ ամենայն սաստկութեամբ կը պատուիրուի[4]: Սակայն Հայք իրաւունք կու տան կալուածատիրոջ՝ իւր ագարակն մտնող օտար արջառը գրաւելու (Գլ. 95)[5]:

Թէ պարտքը խնդրելն անչափահասութեան պատճառաւ՝ մինչեւ չափահասութիւն պիտի յապաղուի, (Գլ. 115) յօդուածիս վերջերը պիտի տեսնենք:

Առեւտրի դաշնագրութեան մէջ մտադրու-

---

[1] Հմմ. Հայ իրաւանց § 276ն առ Հաքսդհ. Բ. 250:

[2] Նման Հայ իրաւանց § 274ին առ Հաքսդհ. Բ. 258:

[3] Նման Հայ իրաւանց § 275ին առ Հաքսդհ. Բ. 258—: Հմմտ. նաեւ ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ թարգմ. § 131, եւ Վախթանգի օրէնք § 173, 174 առ Հաքսդհ. Բ. 212:

[4] Bloch, Civilprocessordnung nach mosaisch-talmud. Rechte S. 95.

[5] Բայց ոչ սպաննելու իրաւունք, ինչպէս վերջէն կը տեսնենք:

թեան արժանի է՝ նիւթական պակասութեան հատուցումն, եւ երաշխաւորութիւնն։ Իրին պակասութիւնն իրաւունք կու տայ, որ իրն ետ դարձուի, ինչպէս շատ իրաւանց մէջ. բայց՝ միայն ետ տալու, եւ ոչ գինը նուազեցընելու։ Եթէ ծախողին խաբէութիւնն երեւայ, առանց որեւէ սահմանաւորման կրնայ ետ դարձուիլ վաճառքն (Գլ. 82). ուրիշ դիպաց մէջ որոշեալ ժամանակի մը մէջ կրնայ ետ տրուիլ, որ իւրաքանչիւր վաճառքի համար սովորութենէ առնլով որոշուած է. ձի եւ եզն եօթն օրուան միջոցին մէջ կրնան ետ տրուիլ, կով մը՝ որուն յղանալ կրնալուն երաշխաւորութիւն տրուած է, մէկ տարուան միջոցին մէջ, մեղուք՝ քսան օրուան միջոցին մէջ, ծախուած կարաս[1] մը մէկ տարւոյ միջոցին մէջ (Գլ. 48—52) կրնան ետ դարձուիլ։ Ժամանակի այս որոշման վախճանը կրկին է, մէյ մը՝ որոշեալ միջոցին մէջ իրին պակասութիւնը պիտի տեսնուի, եւ երկրորդ՝ որ գնուած իրն որոշեալ միջոցի մը մէջ ետ ընդունիլ պահանջուի. եթէ որոշեալ միջոցէն ետեւ պակասութիւնը կ'երեւայ, ալ ետ դարձընել չ'ըլլար։ Զարմանալի է այն որոշումն որ եթէ խեցեղէն կարասէն գինին վազէ երթայ՝ խեցեղինին մէկ պակասութեանը պատճառաւ, վնասն երկուքը կէսիկէս պիտի կրեն (Գլ. 52), որ շատ հետաքրքրական է. վասն զի յայտնի է որ կ'ենթադրուի թէ ծախողն յանցանք չունի, եւ անիրաւ կ'երեւայ այս դէպքիս մէջ բոլոր վնասը ծախողին հատուցանել տալ, բայց միանգամայն անիրաւ կ'երեւայ բոլոր վնասն գնողին ձգելն։ Ուստի ծախողն դէթ վնասուն աւիթ տուած կ'ենթադրուի[2]։

Բան մը հրապարակաւ եւ վկայի առջեւ պիտի ծախուի (Գլ. 48, 49, 51). Եթէ իրին որ՛ուն ստացուածքն ըլլալուն վրայ խնդիր կայ, գնողն իւր

---

[1] Իբրեւ գինւոյ անօթ, վերնագիր 52 Գլխոյ։

[2] Այս կերպով կը խորհուի Հայ իրաւանց մէջ շատ անգամ, հմմտ. յօդուածոյս վերջերը։

երաշխաւորին կը դիմէ, եւ ասիկայ գնողին տեղ կ'անցնի եւ անոր ամբողջովին պիտի հատուցանէ (Գլ. 48, 49)։ Եթէ գողցուած մարդ մը ծախուի, ծախողն՝ անոր գինը պարտական է ետ դարձընել, եւ եթէ ծախուողն մեռած է՝ գինն անոր պիտի տրուի, որուն քովէն գողցուած է մարդը (Գլ. 21)։

Նոյնպէս վարձատուութեան համար՝ (Գլ. 115) ըլլայ անասնոց, (Գլ. 39) ըլլայ գործեաց (Գլ. 106) ըլլայ ջաղացքի, վարձատուն պարտական է պէտք եղած նորոգութիւններն ընել, ի բաց առեալ՝ եթէ վնասն վարձակալին յանցանօքը չէ եղած[1]։ Վարձակալն վարձագինը պիտի վճարէ, իսկ վարձուած իրէն շահածն իրեն կը մնայ, եւ վարձատուն մասնակից չէ այս շահուն (Գլ. 54)։

Աշխատելու դաշնադրութեան այլեւայլ դէպքերը կը յիշատակուին, այսպէս ծառայի (Գլ. 72), հովուի (Գլ. 38, 102) ձեռագիտի (Գլ. 80, 105, 106) մասին որոշումներ կը տրուին։ Վերջնոյն նկատմամբ կ'որոշուի, որ եթէ յանձնուած գործքը դաշնադրութեան համեմատ չի կատարեր, պարտական է նոյնն առանց նոր վարձուց՝ դարձեալ կատարել (Գլ. 105)։

Ընկերութեան յարաբերութեանց գաղափարներն ալ զարգացած են. եթէ շատերն ընդհանուր վարձքով մ'աշխատին, վարձքն իւրաքանչիւրին աշխատութեան աստիճանին համեմատ պիտի բաժնուի (Գլ. 101, 105)[2]։

---

[1] Որովհետեւ բնագրին arendare (վարձել) բառը թէ վարձուորին եւ թէ վարձատուին կրնայ ըսուիլ, անոր համար կրնայ ասիկայ այսպէս ալ մեկնուիլ, որ վարձուորը պիտի ընէ նորոգութիւնները։ Հմմտ. Bisch., Oest. Bl., S. 290. Ես կը կարծեմ թէ պարտքը վարձատուին է. վասն զի ասոր դիմաց վարձուորէն կը պահանջուի՝ որ նորոգէ ինչ որ "յանհոգութենէ վարձուորին" վնասուած է։

[2] Հանդերձ այսու ընկերական դաշինքն Հայք մովսիսական օրէնքն ընդունելէն յառաջ կը ճանչնային։ Օսսերու քով ալ կը գտնուի ընկերական ձեռնարկութիւնք, ինչպէս որսի, աւարի, որոնց վաստակը կը բաժնուի մէջերնին։ Dareste, Journal des Savants 1887. p. 282

Ով որ յանձնարարական գործք մը կատարէ, պայմանեալ վարձքը կրնայ պահանջել, եւ եթէ չկարենայ գործքն ի գլուխ հանել, կրնայ իւր աշխատութեանց հատուցում պահանջել (Գլ. 112)։

Բան մը գտնողն, որ գտնելու համար աշխատած է, կրնայ հատուցում ուզել (Գլ. 63)։

Բայց ընդ հակառակն ամենեւին խօսք չկայ բան մը գտնելու վարձուց մասին, ինչպէս նաեւ հրէական օրինաց մէջ[1]։ Այս երկուքին ալ հիմն է մարդկան օգնելու ընդհանուր պարտքն. գտնողն պարտական է մէկալին օգնել, ինչպէս նաեւ միւսն պարտական է մարդկան իրենց դժբախտութեանց մէջ օգնութեան ձեռք կարկառել, երբ օրինակի համար, ձին կամ կառքն տեղ մը կործանած ըլլայ[2]։ Մարդկան օգնելն հոս ոչ միայն լոկ բարոյական պարտաւորութիւն է, այլ յիրաւանց պարտաւորութիւն[3]։

Կենաց յարաբերութիւնք ունին բացառութիւն մը նաւաբեկութիւն կրողներուն օգնելու եւ հիւրընկալելու մասին։ Նաւաբեկելոց իրերն յափշտակել՝ յայտնապէս կ'արգելուի։ Օգնողներն անոր տեղ կը պահանջեն նաւաբեկութենէ ազատած բանին 1/10, կամ եթէ իրենց բաւական չ'երեւար ասիկայ, 1/5 իբրեւ վարձք[4]. սակայն այս սովորութեան չի հաւանիր դատաստանագիրքն. “շատ անգամ նաւաբեկութիւնք կ'ըլլան ի ծով, այլ ըստ հայ իրաւանց պահուի այն՝ թէ այս օգնութեան փոխարէն բան մը պիտի չառնուի„ (Գլ. 86)։

---

[1] Fassel I. S. 197.

[2] Նման հայ իրաւանց § 263ին առ. Հաքսդհ. Բ. 257։

[3] Հմմտ. Գլ. 63, 64 եւ Ելք. ԻԳ. 4—, Երկրդ. Օրինաց, ԻԲ. 1—. Նոյնպէս Fassel I. S. 197, Bloch, mosaisch-talmudisches Polizeirecht S. 16. Հմմտ. նաեւ իմ գործս՝ Menschenrecht im Privatrecht, Iherings Jahrbücher XXV. S. 1—. Նաեւ հին եգիպտացւոց մէջ կար օգնելու ընդհանուր պարտաւորութիւն մը, Diodor I. 77..

[4] Նաւաբեկութենէ վաճառք ազատելու վարձուց սկզբնաւորութեան վրայ տես իմս Menschenhilfe S. 131—.

Փոխ տալն կը յիշուի ի Գլ. 39. փոխառուին պարտաւորութեան մասին կ'արժէ վերն ըսուածն։ Նոյնպէս աւանդապահին նկատմամբ նոյն տեղն խօսեցանք։ Տեղ մը կը խօսուի պանդոկապետին բան մ'ի պահեստ առնլուն վրայ, եւ կ'երեւայ թէ խիստ պարտաւորութիւն կը դրուի վրան (Գլ. 114)։ Այս որոշման աղբիւրն է ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ Թրգմ. § 149, 150։

### 4. Ժառանգութեան իրաւունք:

Վերն ըսինք, որ Հայոց ժառանգութեան իրաւունքն նախապէս կողմնական-այրական էր, եւ Յուստինիանոս իւր իշխանութեան ատեն ամենայն կերպով կը ջանար կանանց հաւասարութիւնն հաստատել։ Ասիկայ յաջողեցաւ զաւակաց մասին, եւ ասորական-հռոմէական իրաւանց § 1ն՝ որ ուստերաց եւ դստերաց ժառանգելու հաւասար իրաւանց վրայ կը խօսի, անցաւ Հայ իրաւանց։ Լեմպէրկի դատաստանագրոց Գլ. 116ը կը հրամայէ "Հաւասար բաժանումն — պէտք է որ ըլլայ եւ տրուի թէ՛ ուստերաց եւ թէ՛ դստերաց հաւասար ժառանգութեամբ եւ յաջորդութեամբ[1]"։ Սակայն այս որոշմամբ ալ գործածութիւնը կրցաւ ժառանգութեան հաւասար բաժանումը զանց առնել, ինչպէս հիմայ պիտի տեսնենք, եւ եղբարց եւ քերց կարգին մէջ Յուստինիանոսի սկզբունքն ընդհանրապէս տիրող չեղաւ։ Վասն զի երբ մէկն անորդի մեռնի, կը ժառանգեն նախ եղբարք եւ եղբօրորդիք, իսկ եթէ ասոնք չկան, այն ատեն միայն՝ քորք եւ քեռորդիք (Գլ. 116)[2]։ Եթէ եղբարք եւ քորք եւ ասոնց որդիք ալ չկան, այն ատեն կողմնական ազգականք կը ժառանգեն մինչեւ չորրորդ աստիճան (Գլ. 116, հմմտ. էջ 10), ուստի հօրեղբայր,

---

[1] Հմմտ. նաեւ Լեմպէրկի իրաւագիրք էջ 9։

[2] Հմմտ. նաեւ ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ Թարգմ. § 142։

հօրաքրոյր եւ տոհմից որդիքն։ Ուրեմն հոս ալ մէկ րնոյ բովանդակ ազգականաց կ'ելլուի։ Կողմնական ամէն ազգականներն վախճանելոյն այրւոյն պիտի թողուն ժառանգութենէն ¼ (էջ 9 եւ 10)։ Չորրորդ աստիճանաւ կը փակուի ազգականութեան կարգն, եւ այնուհետեւ տէրութիւնն իբր ժառանգ ի մէջ կու գայ (Գլ. 10)։

Ինչպէս հնդկական եւ գերմանական իրաւանց մէջ, նոյնպէս հոս մեծամեծ խեղութեամբ ծնեալք ժառանգութեան իրաւունքէ կը զրկուին, բայց ոչ անիկայ՝ որ ծննդենէն ետեւ խեղ կ'ըլլայ (Գլ. 81)։ Թագաւորին կենաց դաւաճաններուն տղաքն ու ազգականք ժառանգելու իրաւունք ունին, եթէ դաւաճանութեան մասնակցութիւն չեն ունեցած. եթէ մասնակցած են՝ կը զրկուին ժառանգութենէ (Գլ. 1)[1]։

Եթէ որդիքն բազմաթիւ են՝ բաժանումն հաւասար պիտի ըլլայ, բայց կարելի է հայրենական պարգեւ տալ (Գլ. 89)։ Իսկ արդէն օժիտ առնող դստերքը այնպէս կը նկատուին՝ իբր թէ չկան, վասն զի իրենց օժիտն ժառանգութեան հաւասար է (Գլ. 9)։ Հոս կ'երեւայ հին իրաւունքն։ Բայց այս կանոնն կրնայ հօրը կամօքն զանց առնուիլ, որ եւ զմեզ կ'առաջնորդէ կտակ շինելու իրաւանց։

Կտակն եկեղեցականի առջեւ պիտի շինուի, եւ երկու կամ երեք Աւագանւոյ՝ իբր վկայի ներկայութեամբ[2]։ Այն ժառանգներն՝ որ յօրինաց իրաւունք ունին ժառանգութիւն առնլու, ներկայ պիտի ըլլան կտակի շինութեան, եւ կտակագրին վերջին կամքը պիտի իմանան, եւ իրաւունք ունին՝ մինչդեռ կտակագիրը կենդանի է՝ անոր կամաց ընդ-

---

[1] Սիկիզմունտ թագաւորն այս վճիռն այսպէս կը փոփոխէ, որ թագաւորին կենաց դաւաճաններու որդիքն հայրենի ժառանգութիւնը պահանջելու իրաւունքը կորսընցընեն, վասն զի այս ժառանգութիւններն յարքունիս կը գրաւուին։

[2] Հմմտ. Նաեւ ասորական-հռոմէական իրաւագիրք, Հայ Թարգմ. § 95։

դիմանալու. իսկ մահուընէն ետեւ իրաւունք չեն ունենար (էջ 9)[1]: Բայց թէ ընդդիմանալու այս իրաւունքն մինչեւ ուր կ՚երթայ՝ չի նշանակուիր դատաստանագրոց մէջ. միայն այսչափ գիտենք՝ որ արդէն օժիտն ընդունած դուստր մը հօրն՝ կրնայ ժառանգութեան մէկ մասն տալ անոր, թէեւ որդիք ընդդիմանալ ուզեն (էջ 9): Կ՚երեւայ թէ վճիռ տալ կտակի մը վրայ, որուն դէմ օրինաւոր ժառանգներն ընդդիմութիւն հանած են, հայ ատենին կամայական կարծեաց ձեռքն էր, որ կտակի որոշումներն պատշաճ կամ անպատշաճ տեսնելով՝ կրնար որոշում տալ. եւ այսպէս յօրինաց ժառանգելու միայն նիւթական իրաւունք մը կը կազմուէր: Հանդերձ այսու՝ անշարժ ստացուածքներն օրինաւոր ժառանգաց ընդդիմանալու իրաւանց առարկայ էին, մանաւանդ թէ իրաւունք ունէին զանոնք ժառանգելու:

Ծնողք իրաւունք ունէին զրկել ժառանգութենէ այն որդիքն, որոնք իրենց կը զարնեն, զիրենք կը թշնամանեն, կամ յամառութեամբ հնազանդութիւն կը զլանան իրենց (Գլ. 19, 22, 59)[2]:

Բնականապէս հայ իրաւանց մէջ ալ եկեղեցական հաստատութեանց ժառանգութիւն կամ յիշատակ թողլու կանոն կար: Ամէն կտակի մէջ պիտի ըլլար "յիշատակ հոգւոյ" (Գլ. 9), եւ եթէ նաեւ կտակի մէջ չնշանակուէր՝ տէրութիւնն, եթէ ինքն ըլլայ ժառանգ, պարտական էր բան մը "վասն հոգւոյ" հանգուցելոյն տալ (Գլ. 10)[3]: Նաեւ ե-

---

[1] Այս կտակելու իրաւունքն Լեմպերկի Հայոց համար շատ անգամ հաստատուեցաւ թագաւորներէ, այսպէս՝ յամին 1434, 1440, 1461, 1509: (Bischoff, Urkunden, Nr. 6, 9, 12, 22.)

[2] Ըստ հայ իրաւանց առ Հաքսդհ. Բ. էջ 242, եւ ըստ ասորական-հռոմէական իրաւագրոց, հայ թարգմ. § 6, տղուն դէթ մէկ մաս մը ժառանգութիւն պիտի թողուի:

[3] Թէեւ Սիկիզմունտ կը յաւելու, թէ լեհ թագաւորն ասոր պարտաւորեալ չէ (էջ 10):

կեղեցեայ դրամագլուխ հաստատել կը յիշատակուի, եւ կը տեսնենք որ կայ սա սկզբունքն՝ որ եթէ դրամագլուխ պարգեւելու որոշումն չի կրնար ամբողջովին ինչպէս որ է գործադրուիլ, կրնայ նոյնը պարագայից համեմատ եղանակաւորուիլ, որուն Եպիսկոպոսն ալ ներկայ պիտի ըլլայ (Գլ. 103)։

Կտակը կտակագրին կամօքը միայն՝ կրնայ փոխուիլ (էջ 9), եւ անոր համար այս կամքն կտակելու որոշման նկարագիրն ունի, ըստ ամենայնի նման հռոմէական եւ ռաբունական իրաւանց[1]։

Ժառանգութիւնն առաջին անգամ գնելու իրաւունքը՝ լիուլի զօրութիւն ունէր անշարժ իրաց համար[2]։ Առաջին անգամ գնելու իրաւունք ունին հրիտակի ներկայ գտնուող ժառանգներն. (Գլ. 46, 88, Հմմտ. 45) եւ ասիկայ ջաղացքի մասին եւ քաղաքի մէջ գտնուող երկիրներուն համար՝ մէկ տարւոյ միջոցին մէջ կատարուած պիտի ըլլայ. (Գլ. 46, 47) իսկ գիւղական երկիրներուն՝ եօթ տարուան միջոցի մէջ (Գլ. 46)։ Ժառանգն եթէ անշարժ իրին ծախուելուն հաւանութիւնը տուած է, զրկուած է առաջին անգամ գնելու իրաւունքէն (Գլ. 88), — սակայն բացառութեամբ մը զոր էջ 29 յիշեցինք։ Եթէ գրաւ մը ջնջուելու իրաւանց ենթարկեալ է, իրաւանց երկու իրական փոփոխու-

[1] Հմմտ. Fassel, mosaisch-rabbinisches Recht, I. S. 287—.

[2] Նաեւ վրացի սովորութեան իրաւանց համեմատ. Հմմտ. Հաքսդհ. Բ. 233։ Մովսիսական իրաւանց մէջ ալ կար ժառանգութիւնն առաջին անգամ գնելու իրաւունք, ինչպէս յայտնի է Ղեւտ. ԻԵ. 25. Հռութ Դ. 2—. Երեմ. ԼԲ. 7—։ Կալուածն նախ եւ յառաջ այն ժառանգաց պիտի առաջարկուէր, որոնք ազգականութեան մօտաւորութեան կարգաւն ամէնէն յառաջ գնելու իրաւունք ունէին. իսկ եթէ չառաջարկուէր, այն ատեն կրնային իրենք ամէնէն յառաջ գնել։ Ռաբունական իրաւունքն (ինչպէս նաեւ իսլամականն) կալուածատիրոջ ընկերակիցին եւ դրացւոյն՝ նախ գնելու իրաւունքը կը ճանչնայ։ Fassel, mosaisch-rabbinisches Civilrecht II. S. 132 f.

թիւն յառաջ կու գայ, այսինքն՝ դաշնադրութեամբ գրաւի իրաւանց ինչ զինք պարտաւորելը, եւ գրաւին ջնջուելովն իրին տէրութեան ուրիշին անցնիլը: Այս երկու դիպաց ժամանակ կրնայ գրաւն առաջին անգամ գնելու իրաւունքը գործադրուիլ, ժառանգը կրնայ իրն իբր գրաւի դրուած իր՝ ետ գնել, իսկ եթէ ջնջուած է գրաւն՝ իբր սեպհական ստացուածք կրնայ ետ առնուլ (Գլ. 45): Միայն թէ (գիւղական երկիրներու համար) ետ գնելու երկու անգամ եօթը տարւոյ շրջան որոշեալ չէ, այլ մի անգամ միայն: Ետ գնելը կրնայ ըլլալ միայն ջնջուելու ժամանակ, եւ այն միջոցին մէջ՝ որ ջնջուելէն յառաջ սահմանուած է՝ այն է եօթը տարւոյ միջոցի մէջ, եթէ գրաւառու պարտատէրն աւելի չ՚երկարեր ժամանակը:

Ժառանգն իր կարողութենէն աւելի պարտքերը վճարելու պարտական չէ, այլ միայն այնչափ՝ որչափ ժառանգութիւնն է (Գլ. 113. Համմտ. նաեւ Գլ. 40):

5. Յանցաւորութեան իրաւունք:

Յանցաւորութեան իրաւանց մէջ օտարամուտ իրաւանց բարոյականացուցիչ խորին ազդեցութիւնը կ՚երեւայ. որչափ աւելի սաստիկ պիտի երեւայ այս ազդեցութիւնն, եթէ ուրիշ կաւկասեան ազգաց բարոյական՝ իրաւանց ալ մօտ դնենք, որոնց քով սպանութիւնն տարի մ՚ամբողջ վրէժխնդրութեան պատերազմ կը յարուցանէ, ինչպէս Օսսերու քով[1], — մինչեւ որ կրցան խորհուրդ մը ծնանիլ՝ թէ յանցանքը կրնայ քաւուիլ հատուցմամբ, եւ դարձեալ թէ՝ յանցաւորը միայն պարտապան է, եւ ոչ թէ անոր ընտանիքն ալ:

Այս նախադասութիւնն՝ թէ միայն յանցաւորը պարտապան է, յայտնի է որ մովսիսական

[1] Dareste, Journal des Savants 1887 p. 286.

իրաւանց հիմնական նախադասութիւններէն մէկն է. այսպէս Երկ. Օր. ԻԴ, 16. Համմտ. Բ. Թգր. ԺԴ, 6. նոյնպէս Լեմպէրկի իրաւագիրքն Գլ. 20, 60[1]: Հանդերձ այսու՝ Գօշի դատաստանագրոց մէջ, — ինչպէս յառաջ կը բերէ Հաքսդհաւզէն, — կայ տակաւին ցեղական պարտաւորութեան հետք մը. վասն զի երբ որ մարդասպանը չի կրնար արեան գինը տալ, իւր ընտանեօքն հանդերձ կը վաճառուի:

Ուստի քրիստոնէական իրաւունքէն սա նախադասութիւնն առնուած է՝ որ արեան վրէժխնդրութիւնն՝ իբրեւ առանձնական վրէժխնդրութիւն արժանի է պատժոց: Գլ. 61 կ'ըսուի. “Մեր իրաւունքը չ'ընդունիր՝ որ կարելի ըլլայ սպաննել գողն կամ բռնակալ մարդասպանն եւ զայլ ոք արժանի մահու, բայց միայն եթէ նախ յիրաւանց եւ բաւական վկայութեամբք հաստատուի.„ — ասկէ լուսաւորուին անոնք՝ որ իրաւանց զարգացման անտեղեակ, ժամանակագրական սխալ համարեցան երբ ես հաստատեցի՝ թէ Շէքսպիր արեան վրէժխնդրութիւնը բառնալու իղձն իւր հոգւոյն մէջ ունէր: Հարցուր Լեմպէրկի Հայոց՝ յամին 1519:

Սակայն դեռ կը մնայ հին իրաւունքէ մնացորդ մը, երբ սպանելոյն ազգականաց կը յանձնուի մարդասպանը գտնել. (Գ. 58; վերջը.) իսկ եթէ սպանելոյ մը դիակը գտնուի՝ ի պաշտօնէ վարչական քննութիւն կ'ըլլուի, (Գլ. 58)[2] որուն հին կտակարանի ծանօթ մէկ խօսքն առիթ տուած է, այն է՝ Երկ. Օր. ԻԱ. 1 —:

Կէտ մը մէջ ընդածին աւանդութիւնը մնացած է, այն է՝ ընտանեաց պարտաւորութեան մէջ: Առանձնական վրէժխնդրութիւնը կը վերցուի, բայց արեան գինն առնլու եղանակը կը մնայ, այն է՝

---

[1] Համմտ. Նաեւ Հայ իրաւանց § 152ն առ Հաքսդհ. Բ. 249:

[2] Համմտ. Հայ իրաւանց § 259ն առ Հաքսդհ. Բ. 256:

մահուան պատիժը կրնայ արծաթով ջնջուիլ (Գլ. 97)[1]։ Թէեւ ըստ ինքեան կեանքն անգին ըլլայ, սակայն եւ այնպէս կ'որոշուի արեան գին մը, այն է՝ 365 փիորին, որովհետեւ տարին 365 օր եւ մարդս 365 անդամ ունի. ուստի հնագոյն գաղափարներու համեմատ, որով մարդուս ամէն մէկ մասին գին կը կտրուի, եւ այս մասանց արժէքին գումարը կ'ըլլայ արեան գին (Գլ. 117)[2]։ Արեան գինը պիտի տրուի ընտանեաց, անշուշտ մերձաւորագոյն ժառանգներուն, (Գլ. 3, 96) եւ եթէ ամենեւին արեանառու ազգական չկայ, հայ ատենին պիտի տրուի (Գլ. 24)[3]։ Եթէ արեան գինը չի վճարեր մարդասպանն՝ գլուխը կը կտրուի (Գլ. 58)[4]։

Արեան գինը պիտի վճարուի՝ սպանութիւնն ըլլայ ուղղակի կամ անուղղակի։ Ճիշդ իսլամական իրաւանց պէս՝ հայ իրաւունքն ալ կարգ մը դիպուածական զանազանութիւններ կը շարէ։ Այսպէս՝ արեան գինը պիտի վճարուի՝ եթէ բժիշկն սխալ դեղով հիւանդը մեռցընէ. ընդհակառակն անմեղ է՝ երբ հիւանդն իւր հրամանները չգործադրելով՝ մեռնելու ըլլայ (Գլ. 99)[5]։ Նոյնպէս արեան գինը պիտի վճարէ ով որ ուրիշին ձին դիտմամբ կը խրտչեցընէ, այնպէս որ հեծեալը վար իյնայ եւ մեռնի (Գլ. 96). Նոյնպէս եթէ մէկն փոս մը բանայ եւ ըստ պատշաճի չհսկէ անոր՝ այնպէս

---

[1] Սիկիզմունտ Թագաւորին հրամանին համեմատ՝ ասիկայ այն ատեն կ'արժէ, երբ Հայն զՀայ սպաննէ (Գլ. 117, նաեւ Գլ. 3)։

[2] Հմմտ. նաեւ Հայ իրաւանց § 152, 213 առ Հաքսդհ. Բ. 249—, 255։

[3] Վրաց քով արեան գնոյ մասին ըստ օրինաց Վախթանգի հմմտ. Հաքսդհ. Բ. 201—, եւ իմ գործս՝ Zur Lehre v. d. Blutrache, էջ 12։ Վրաց քով կայ նաեւ մանրամասն աստիճանաւորութիւն արեան գնոյն, ըստ վիճակաց անձանց։

[4] Ըստ իրաւանց Հայոց § 152, 416 առ Հաքսդհ. Բ. 250, 265, այն մարդասպանն՝ որ չի կրնար վճարել, պիտի ծախուի եւ արժէքը սպանեալոյն ազգականաց պիտի տրուի։

[5] Իսլամական իրաւանց մասին հմմտ. իմ գործս՝ Über die Blutrache, 24.

որ մէկն մէջն իյնայ եւ մեռնի (Գլ. 30)․ բայց հոս սա զանազանութիւնը կը դրուի՝ որ եթէ դժբախտութիւնն ցորեկն հանդիպի՝ արեան գնոյն կէսը միայն պիտի վճարէ, յայտնի է թէ անոր համար՝ որ յանցանքին մէկ մասն ալ մէջն իյնողին է։ Նոյնպէս եթէ մէկն վնասակար ձիէ մը վիրաւորուի, եւ եթէ տէրն ձիուն վնասակար յատկութիւնն վիրաւորուողին յառաջուց իմացուցած էր (այնպէս որ անիկայ կրնար զգուշանալ,) վնասուն միայն կէսն կը տուժէ (Գլ. 32)․ Նոյն բանն է՝ երբ տղայ մ'ուրիշը գրգռէ տեղէ մը ցատքել՝ որուն վտանգաւոր ըլլալն անիկայ տեսնէ․ եթէ այսպէս տեսնելով ցատքէ եւ վնասուի, միւսն վնասուն կէս գինը միայն պիտի վճարէ (Գլ. 6)[1]։

Նոյնպէս արեան գինը պիտի հատուցանէ ով որ վնասակար եզ մ'ունի եւ դրացեաց ազդարարութեանց հակառակ մէջտեղաց չի բառնար, — երբ եզն մէկը մեռցընէ (Գլ. 26, Հմմտ. Ելք ԻԱ, 59—)[2]։ Նոյնպէս տէրը պարտական է հատուցման, երբ տրուած ազդարարութեանց հակառակ իւր ծառան վտանգաւոր ճամբէ մը տեղ մը կ'ուղարկէ, եւ անիկայ ճամբան կը մեռնի (Գլ. 92, 94)․ կամ երբ ծառան առանց կարեւոր պատրաստութեանց եւ միջոցներու հոր մը կ'իջեցընէ[3], որ եւ հոն կը խեղդուի (Գլ. 11, 12)։ Նոյնպէս կը պարտաւորի երբ մէկն զուրիշ մը ստիպէ՝ պտղատու ծառի մը վրայ ելլել, գետէ մ'անցնիլ կամ անզուսպ ձիու մը վրայ ձիավարել, եւ անիկայ անով կեանքը կորուսանէ (Գլ. 100)։

---

[1] Հայ իրաւանց § 152, 416ի համեմատ, տե. Հաքսդհ. Բ. 250, 265, եթէ սպանութիւնն դիտմամբ չէ՝ արեան գնոյն կէսը պիտի տրուի։

[2] Կատաղի ձիու մասին նոյնպիսի դիպաց մէջ ապաշխարանք եւ (ըստ կամի վնասուողին) հատուցում պիտի ըլլայ (Գլ. 33)։ Սիկիզմունտ Թագաւորն կ'որոշէ, որ հոս վերոյիշեալն (Գլ. 26) գործադրուի։

[3] Հայք ցորենեղէնը գետնի տակ հորերու մէջ կը պահէին, Bischoff, Österr. Blätter, S. 365.

Ինչպէս կը տեսնուի յանցանաց էութեան ծանօթութիւնն սկսած է զարգանալ, եւ ի մասնաւորի վիրաւորուողին մասնակցութեան ալ մտադրութիւն կ'ըլլուի. սակայն դիտութեամբ եւ անդիտութեամբ յանցանքի, նենգութեան եւ յանցանքի մէջ եղած կարգաւորեալ զանազանութեան դեռ չէ հասնուած, եւ կարելի ալ չէր հասնիլ՝ ցորչափ որ արեան գնոյ իրաւունքն տիրող էր։ Այո, թէեւ կը գտնենք կամաւոր սպանութիւն եւ ակամայ սպանութիւն դէմառդէմ դրուած (Գլ. 97) հանդերձ դիպուածական օրինակներով՝ որոնք կենդանի օրինակաւ կը յիշեցընեն հին կտակարանը (Թիւք Լե. 22—, Երկ. Օր. ԺԹ. 5.)[1], սակայն յանցաւորութեան այս զանազանութեան միտ դնելով ալ՝ պատժոց մէջ էական զանազանութիւն մը չի դրուիր։ Բայց այս եղանակաւ վարուելու յիշատակութիւնք կան իրաւագրոց մէջ. այսպէս ի մասնաւորի արբեցութեան ժամանակ եղած կռիւներու մասին կ'ըսուի՝ թէ "ըստ գիւտի եւ որպիսութեան պատճառաց դատը կատարուի„ (Գլ. 8)։ Այս դէպքիս մէջ ընկերակցաց ըստ կամի պատիժ պիտի տրուի (Գլ. 8)։

Բանավարութիւնը կը սկսի 15դ տարին (Գլ. 3)[2]։ Տղայ մը՝ որ 12 տարուընէ վար է՝ արեան կէս գինը պիտի վճարէ, իսկ 10 տարուընէ վար եղողն՝ երրորդ մասը (Գլ. 3. 4, 5, 6)[3]։ Ով որ հարուածով մը տղան մօրն արգանդին մէջ կը սպաննէ, տղոց արեան գնոյն կէսը կը վճարէ, կամ կնոջ էրկան հետ միաբանելով՝ նուազագոյն եւս. իսկ եթէ տղան յարգանդի այնպէս կերպարանաւորուած է՝ որ մարդ կրնայ ըսուիլ, այն ատեն տղու արեան ամ-

[1] Համմտ. Նաեւ Հայ իրաւանց § 323ը առ Հաքսդհ. Բ. 260, 261։

[2] Վախթանգի վրացի իրաւագրոց § 187ի համեմատ, 10 տարուընէ կը սկսի, Հաքսդհ. Բ. 214։

[3] Հայ իրաւանց § 152ի համեմատ առ Հաքսդհ. Բ. 250, անհաւատը միայն 122 պիտի վճարէ իբրեւ արեան գին, ուստի կէսէն քիչ մ'ալ պակաս։

բողջ գինը պիտի վճարուի (Գլ. 25. Հմմտ. Ելք, ԻԱ. 22)։

Պատահական դժբախտութեանց պարտաւորութիւնն սկզբամբ կը մերժուի (Գլ. 66. Հմմտ. Գլ. 11)[1]. բայց պատասխանատուութեան հին գաղափարը դեռ կը պարտաւորէ, եւ այսպիսի դժբախտութեանց համար ապաշխարանք պիտի կատարուի (Գլ. 66, 76, 79). — ինչպէս ուրիշ տեղ՝ նոյնպէս հոս կրօնական շարժառիթն մնացած է, իրաւաբանականն մերժուելէն ետեւ. այսինքն՝ ըստ իրաւանց պատասխանատուութենէ ազատ եղողն՝ կը պարտաւորի քաւութիւն մ'ընել հեղեալ արեան համար, վասն զի արիւնն իւր վրայ է՝ ցորչափ որ քաւիչ ապաշխարանօք ինք զինք չի սրբեր[2]։

Ի հարկաւորութեան ինք զինք պաշտպանել՝ — համեմատ քրիստոնէութեան վարդապետութեան, օրինաւոր է. բայց ապաշխարանք պիտի կատարուի, — ճշդիւ մեր ապաշխարանաց գրքերուն համեմատ[3]. նաեւ եկեղեցական մ'ինք զինք պաշտպանելուն համար ապաշխարանք միայն պիտի կատարէ, եւ ոչ թէ կարգընկէց կ'ըլլայ (Գլ. 76)[4]։ Նոյնպէս պատերազմի ժամանակ մեռցընելու իրաւ-

---

[1] Աս ալ կաւկասեան իրաւունքէ դուրս մեծ յառաջադիմութիւն մըն է, հմմտ. Օսսերու մասին, Dareste, Journal des Savants 1887, p. 287.

[2] Հմմտ. ապաշխարանաց մասին նաեւ Գլ. 19, 24, 25, 33, 75։ Հմմտ. նաեւ Հայ իրաւանց § 268, 323ն առ Հաքսդհ. Բ. 258, 260։

[3] Հմմտ. ապաշխարանաց գրքերն առ Levita, Nothwehr, S. 53, f. 55 f. Իսլամական իրաւանց մասին հմմտ. իմ գործս՝ Über die Blutrache, S. 24.

[4] Հայ իրաւունքն § 320 առ Հաքսդհ. Բ. 260, աւելի խստագոյն է։ Ասոր համեմատ եկեղեցականն՝ իւր վիճակէն պիտի հրաժարի, եթէ իւր անձը պաշտպանելու համար զմէկը մեռցուցած է, բայց ոչ՝ եթէ ուրիշ մը պաշտպանելու համար։ Եթէ աւազակներն քրիստոնեայ չեն, այն ատեն եկեղեցականաց կարծիքն իրը պիտի որոշէ։ Այս տրամադրութեան յիշատակութիւնը կայ նաեւ Լեմպէրկի իրաւագրոց մէջ, երբ կ'ըսուի՝ "եկեղեցին այնպիսի դէպքն ըստ օրինի բառնայ", եւ թէ "քահանայութեան չվնասուի".

*ունքը կ՚ընդունուի՝ յենլով Եկեղեցւոյ Հարց վկայութեան վրայ*[1], — *բայց հոս ալ ապաշխարանք մը կը նշանակուի* (Գլ. 79)։ *Դարձեալ գիշերային, եւ միայն գիշերային գողն սպաննել օրինաւոր է* (Գլ. 34, Համմտ. Ելք, ԻԲ. 2—)[2]։

*Մովսիսական իրաւանց խիստ որոշումներն ծնողաց մեծարանաց դէմ գործող տղոց մասին* (Երկ. Օր. ԻԱ. 18—, Ղեւտ. Ի. 9, Ելք, ԻԱ. 15, 17) *կը մեղմացուին անով՝ որ տղան ապաշխարանք կրել միայն կը պարտաւորի, եւ ծնողք կրնան զինք ժառանգութենէ զրկել* (Գլ. 19, 22, 59. Համմտ. նաեւ Գլ. 78)[3]։

*Մովսիսական իրաւանց խիստ պատիժներն մարդագողաց դէմ* (*Մահապարտութիւն*, Ելք, ԻԱ. 16, Երկ. Օր. ԻԴ. 7,) *մեղմացուած եւ փոխուած են բանտարգելութեան, ձեռքը կտրելու կամ տարագոյն երկաթով խարելու* (Գլ. 21, 91)։

*Դիազերծ ընողներուն մահու պատիժ կը տրուի, եթէ գերեզմանակրկիտն անմիջապէս բըռնուի. ապա թէ ոչ՝ ապաշխարանք միայն* (Գլ. 75)[4]։

*Անիրաւութիւնը կը պատժուի բանտարգելութեամբ եւ պատիժներով* (Գլ. 61). *ի մասնաւ-*

---

*հոս երկու որոշմունք ալ քովէքով կը կենան։ Զարմանալի է որ ինչպէս արեւմուտք ճիշդ հակառակ խնդիրը տիրող էր, այսինքն՝ թէ արդեօք երրորդ մը պաշտպանելու համար թշնամին մեռցընելու իրաւունք կայ։ Համմտ.* Levita, a. a. O. S. 56, f.

[1] *Համմտ. իմ գործս՝* Über die Blutrache, S. 27, f.

[2] *Համմտ. նաեւ Աւգոստինոս ի վերայ ծննդոց, խնդ.* 84։ *Էրկան իրաւունք չի տրուիր շնացեալ ամուսինը մեռցընելու, ըստ* §169 *Հայ իրաւանց առ Հաքսդհ.* Բ. 254։ *Ասիկայ ի սկզբան կար Հայոց քով, ինչպէս նաեւ մինչեւ ցայժմ կաւկասեան ազգաց քով,* Dareste, Journal des Savants, 1887, p. 289.

[3] *Հայ իրաւանց* § 262*ին մէջ առ Հաքսդհ.* Բ. 257, *մովսիսական իրաւունքը կը կրկնուի։ Հանդերձ այսու ռաբբիք եւս մովսիսական իրաւանց խստութիւնը մեղմացուցած են մեկնելով, եւ մահուան պատիժն մէկդի թողած, Համմտ.* Fassel, Mosaisch-rabbinisches Strafgesetz, S. 10 f.

[4] *Նման Հայ իրաւանց* § 282*ի առ Հաքսդհ.* Բ. 259։

որի՝ անիրաւութիւն կը համարուի նաեւ մօրուքը քաշելն (Գլ. 10)[1]։ Եկեղեցական մը թշնամիներն մեծագոյն յանցանք կը համարուի (Գլ. 13)։

Կին կամ կոյս բռնաբարողն մահու պարտապան է. (Գլ. 62. Հմմտ. Երկ. Օր. ԻԲ. 25—) ուրիշ տեսակ բռնական անպարկեշտութիւնք բանտարգելութեան եւ կամայական պատժոց կ'ենթարկուին (Գլ. 62)։ Կին մը, որ երկու կռուող արքն իրարմէ բաժնելու համար՝ անվայել եղանակաւ կը միջամտէ, ինչպէս կը յիշուի Երկ. Օր. ԻԵ. 11—, մովսիսական իրաւանց համեմատ աջ ձեռքը կը կորսնցընէ։ Հայ իրաւունքը նոյնը կը կրկնէ, բայց այս չափաւորութեամբ՝ որ ձեռաց տեղ կրնայ դրամ հատուցանել (Գլ. 74)։

Կին մը չի կրնար առն մարդոյ զգեստ հագնիլ, նոյնպէս այրն՝ կնոջ (Գլ. 65. Երկ. Օր. ԻԲ. 5.)[2]. ով որ հակառակ կը գործէ՝ ըստ կամի պատիժ կ'ընդունի (Գլ. 65)։

Ստերդումն վատահամբաւ կ'ընէ (Գլ. 37)[3]. նոյնպէս ով որ սուտ չափ եւ կշիռ կը գործածէ (Գլ. 104). սուտ վկայն կը պատժուի՝ իբրեւ չար մէկն. (Գլ. 57) այսինքն՝ ապաշխարանաց կ'ենթարկուի[4]. իսկ մովսիսական իրաւանց համեմատ՝ հատուցում պիտի ընէ (Հմմտ. Երկ. Օր. ԺԹ. 19)[5]։ Դրամանենգն ձեռքը կը կորսնցընէ (Գլ. 104)։ Հրձիգն, որ հուր ձգելու ժամանակ կը բռնուի, հրոյ մահու պատիժ կ'ընդունի[6]. եթէ նոյն ատեն չբռ-

---

[1] Հմմտ. Հայ իրաւանց § 183ն առ Հաքսդհ. Բ. 255, որուն համեմատ՝ յանցաւորն երկու անգամ պիտի ածիլուի եւ ամէն անգամ գաւազանի եօթն հարուած պիտի ընդունի։

[2] Նման Հայ իրաւանց § 266ի առ Հաքսդհ. Բ. 257։

[3] Վախթանգի իրաւանց համեմատ § 237, 238 (Հաքսդհ. Բ. 220) ստերդումն ամէն կենակցութենէ եւ ընկերութենէ դուրս կը հանուի։

[4] Հմմտ. Հայ իրաւանց § 336ն առ Հաքսդհ. Բ. 261։

[5] Նոյնպէս Վախթանգի իրաւանց համեմատ Բ. 226, 227, 253 առ Հաքսդհ. Բ. 219, 221։

[6] Նոյնպէս Հայ իրաւանց § 234ն առ Հաքսդհ. Բ. 256։

նուի, ըստ կամի բանտարգելութեան կամ արծաթ վճարելու պատիժ կ'առնու. իսկ եթէ "մատնողն չարութեամբ մատնած ըլլայ" մահուան պատիժ կ'ընդունի (Գլ. 42)։ Սահմանաքարն տեղափոխելն արգելեալ է (Գլ. 56, հմմտ. Երկ. Օր. ԺԹ. 14, 17, 27)։

Գողը կը կախուի[1], նոյնպէս գողակիցը (Գլ. 90, 91, 34, 37, 60). բայց մարմինը գիշերը կախաղանի վրայ պիտի չմնայ, այլ վար պիտի առնուի եւ թաղուի[2]. — Ճիշդ մովսիսական իրաւանց համեմատ (Երկ. Օր. ԻԱ. 22)։ Նոյնպէս աւազակին պատիժն է մահ (Գլ. 60, 91), ինչպէս նաեւ գիշերը գողութեան համար տուն մտնողին (Գլ. 61)։ Տիրոջ դրամը գաղտնի գործածելով կորսնցնողին վրայ կը դրուի վատահամբաւութիւն (Գլ. 60, հմմտ. 37)։

Խաբէութիւնը պատիժ կ'ընդունի ըստ կամի (Գլ. 82, հմմտ. 104)։

Այն դատաւորն, որ իրաւանց չի հետեւիր կամ կաշառ կ'առնու, վատահամբաւ կ'ըլլայ (էջ 8)[3]։ Հմմտ. Ելք, ԻԳ. 6—8. Ղեւտ. ԺԹ. 15. Երկ. Օր. Ա. 27. ԺԶ. 19։ Նոյնպէս ուրիշ մը զրպարտութեամբ ամբաստանողն (Գլ. 37). ասիկայ կ'ընդունի նաեւ ըստ պարագայից դրամական պատիժ եւ բանտարգելութիւն (Գլ. 61)։

Թագաւորին դէմ դաւաճանութեան պատիժն է մահ (Գլ. 1). իսկ դաւաճանաց տղոց մա-

---

[1] Հմմտ. ասորական-հռոմէական իրաւագիրքն, Հայ թարգմ. § 117։

[2] Նոյնպէս Հայ իրաւանց § 163ն առ Հաքսդհ. Բ. 257։

[3] Սիկկիզմունտ թագաւորն յանձն կ'առնու՝ որ կարենայ բողոքուիլ եւ ասով վատահամբաւութիւնը բարձուի։ Բայց Հայ իրաւագիրքն չ'ընդունիր՝ որ սխալ վճիռ մը, այնու որ տրուած է, իրաւանց զօրութիւն ունենայ եւ վատահամբաւ ընէ զդատաւորն, այլ միայն այն՝ թէ գիտութեամբ իրաւունքէ խոտորիլն վատահամբաւութիւն յառաջ կը բերէ. եւ վատահամբաւութիւնը կը մնայ՝ թէեւ բողոքել կարելի ըլլայ։

սին վերն (էջ 40) խօսեցանք։ Ով որ զթագաւորն կամ տէրութեան մեծամեծներն կը պարսաւէ՝ նզովք կ'ընդունի, եւ եթէ եկեղեցական է՝ կարգընկէց կ'ըլլայ. վասն զի “Թագաւորական մեծվայելչութիւնն նաեւ աստուածային իշխանութեան ներկայացուցիչն է„ (Գլ. 14)։

Հոս պէտք ենք յիշել նաեւ յանցաւոր գործքերով յառաջ եկած վնասուց հատուցումն ալ, որովհետեւ արեան գնոյ եղանակին յառաջադիմութեան շրջանին մէջ՝ պատժական իրաւանց հետ սերտ յարաբերութիւն ունի։

Այն ամէն դիպաց մէջ՝ ուր սպանութեան դիմաց արեան գին կը վճարուի, եթէ միայն վիրաւորուի՝ հիւանդութեան եւ առողջանալու համար եղած ծախքը պիտի վճարուի. (Գլ. 4, 7, 8, 11, 12, 23, 26, 96. Համմտ. Ել. ԻԱ. 18 —) եւ եթէ մնայուն խեղութիւն մը յառաջ գայ անկէ, այս վճարմունքէն զատ՝ նաեւ խեղութեան համապատասխանող գին մ'ալ պիտի վճարուի (Գլ. 4, 12)[1]։ Ասկէ զատ կը յիշուի նաեւ ատենին վճարելի խաղաղութեան դրամ մ'ալ (Գլ. 23)[2]։ Տղոց մասին՝ վճարելու պարտաւորութիւնն հոս ալ մեղմ է (Գլ. 4, 6)։

Ով որ դիտմամբ անասուն մը կը մեռցընէ, վնասուն կը պարտաւորի, — նաեւ այն ատեն՝ երբ անասունն սպանողին երկիրը մտած ըլլայ[3]. եւ եթէ զանասունն ծանր վիրաւորէ, ըստ ծանրութեան՝ հատուցանելու կը պարտաւորի. այսպէս օր. աղ. անասնոյն գնոյն քառորդը պիտի վճարէ՝ եթէ մէկ

---

[1] Գլ. 12ի մէջ կ'ըսուի. “Դատաւորական պաշտաման ճոխութիւնն այնպիսի դիպաց մէջ որոշէ զայն, զոր կը թելադրէ արդարութիւնը„։ Անոր համար վճարման չափն դատաւորաց կամքէն կախեալ էր, ուստի տեսակ մ'ապաշխարանք։

[2] Նոյնը կը վճռէ նաեւ Հայ իրաւանց § 152 եւ 416ն առ Հաքսդհ. Բ. 250, 265 (այն է՝ վիճակին համեմատ դրամական պատիժ մը, ի նպաստ Թագին)։

[3] Բայց գրաւելու իրաւունք մ'ունի. Համմտ. վերն էջ 35։

եղջիւրն կոտրէ, մէկ ոտքը կաղացընէ եւ այլն։ Բայց այս ամէն դիպաց մէջ միտ պիտի դրուի, թէ արդեօք անասնոյն տիրոջ յառաջուընէ ազդարարութիւն եղած է, որ անասնոյն վրայ քիչ մ՚աւելի հոկէ (Գլ. 95)։

Ով որ օտարին ցորենեղէնը կը հնձէ, հատուցում պիտի ընէ (Գլ. 67)[1]. նոյնպէս ով որ օտարին այգիէն խաղող կը քաղէ (Գլ. 68). սակայն երկու դիպաց մէջ ալ (էջ 26) յիշուած չափաւորութեանց միտ դնելու է։ Նոյնպէս կը պարտաւորի ով որ օտարին պտղատու ծառն կը փճացընէ կամ անասունը կը մեռցընէ (Գլ. 43, 44, 102). ինչպէս նաեւ ով որ օտարին գերին վտանգաւոր ճամբայ մը կ՚ուղարկէ, եւ ասիկայ ճամբան կը վնասուի (Գլ. 93). Նոյնպէս ով որ հոր կամ ջրհոր մը կը փորէ եւ չի ծածկեր, որով անասուն մը մէջը կ՚իյնայ եւ կը վիրաւորի. բայց այս դէպքիս մէջ անասնոյն մորթն իրեն կը պահէ (Գլ. 29. Հմմտ. Ելք, ԻԱ. 33, 34)։

Բայց նաեւ հասարակութեան վնասակար շինուածոց վրայ, որոնք ուրիշին ստացուածոց կը վնասեն, հատուցման պարտք կը դրուի. այսպէս եթէ մէկն առանց կարեւոր զգուշութեանց ջրուղի կը բանայ որ ջուրն իւր երկրէն հեռանայ, եւ ջուրը դրացւոյն երկրին վրայ վազելու ըլլայ (Գլ. 98)[2]։ Եւ ով որ դիտմամբ կամ անզգուշութեամբ կրակ կը հանէ, վնասուողին պիտի հատուցանէ անոր վնասուց կրկինը. իսկ եթէ կրակը հեռուէն գայ, միայն վնասուն կէսը պիտի հատուցանէ. (Գլ. 36, 42) — յայտնի է թէ անոր համար՝ որ այս դէպքիս մէջ ուրիշներն վնասուց գործակից եղան։

Անասնէ մ՚եղած վնասն ճիշդ մովսիսական

[1] Հմմտ. Հայ իրաւանց § 270ն առ Հաքսդհ. Բ. 258, որուն համեմատ՝ գողութեան համար տրուած պատիժը կը տրուի։

[2] Հմմտ. նաեւ Հայ իրաւանց § 384ն առ Հաքսդհ. Բ. 262։

իրաւանց համեմատ կը դատուի։ Վնասող անասնոյն տէրն եթէ յանցաւոր է, վնասը պիտի հատուցանէ (Գլ. 32, 95), բնականապէս եւս առաւել՝ եթէ ինքն անձամբ զանասունն օտարին ստացուածոց մէջ վարէ (Գլ. 35)։ Այսպէս նաեւ եթէ անասուն մ՚ուրիշ անասնոյ մը վնասէ, եթէ երկուքէն մէկուն տէրը յանցաւոր է՝ այնու որ ազդարարութեանց առանց միտ դնելու՝ վնասակար անասուն մը կը պահէ, վնասը պիտի հատուցանէ (Գլ. 31), որ կրնայ ըլլալ նաեւ սպանուած անասնոյն փոխարէն իւր կենդանի անասունը տալով (Գլ. 28. Հմմտ. Ելք, ԻԱ. 36)։ Եթէ եւ ոչ մէկն յանցաւոր է՝ այն ատեն մովսիսական իրաւանց հիմնական նախադասութիւնն ի զօրութեան կ՚ըլլայ, այն է՝ վնասը պիտի բաժնուի։ Հոս իրաւացի չ՚երեւար՝ եթէ պատահական վնասն միայն մէկուն տրուի. անոր համար դժբախտութեան հետեւութիւնն երկուքն ալ պիտի կրեն։ Եթէ մեռեալ եւ մեռցընող անասունները գրեթէ իրարու հաւասար են, այն ատեն մեռցընողը պիտի ծախուի եւ դրամը մէջերնին պիտի բաժնուի. իսկ եթէ մեռեալն ուրիշ տեսակ անասուն է, այն ատեն անոր գնոյն կէսը պիտի հատուցուի. փոքրիկ անասնոյ մը համար հատուցում ամենեւին չկայ (Գլ. 28, 31[1]. Հմմտ. Ելք, ԻԱ. 35)։

6. Քաղաքական դատ։

Ինչպէս հրէական սովորութեան[2], նոյնպէս հայ իրաւանց համեմատ դատաւոր մ՚առանձին վճիռ չի տար, հապա իրեն կ՚ընկերանան 12 կամ 6 եւ կամ առ նուազն 4 իրաւագէտ անձինք (Գլ.

---

[1] Ի Գլ. 31 “սպանեալ ոչխարն պիտի ծախուի„ սխալ թարգմանուած պիտի ըլլայ ի լատին. պէտք է ըլլալ “սպանող ոչխարն„։ Հմմտ. նաեւ Գլ. 102։

[2] Հմմտ. Bloch, Civilprocessordnung nach mosaisch-rabbinischem Rechte, S. 4.

120)[1]։ Եւ ինչպէս հրէական, նոյնպէս բուն հայական իրաւանց համեմատ այսպիսի վճիռ մ՚անբողոքելի է. ամէն մարդ վճռոյն պիտի անսայ, եւ յաջ ու յահեակ պիտի չխոտորի. վասն զի ատենի անհնազանդութիւնն է միանգամայն անհնազանդութիւն Աստուծոյ[2], եւ ասոր վրայ մահու պատիժ կայ (Գլ. 55. հմմտ. Երկր. Օր. 17, 11—13)[3]։ Եւ սակայն իրաւագիրքն ուրիշ տեղ մը կը նշանակէ բողոք մը, բայց միայն առ Թագաւորն (Գլ. 118)։

Դատաւորին մասնաւորապէս յորդոր կը տրուի արդար դատել եւ աղքատին ու հարստին մէջ ամենեւին զանազանութիւն չընել (էջ 8, Հմմտ. Ելք, ԻԳ. 6—, Ղեւտ. ԺԹ. 15։)

Որեւէ դատաստանական գործ մը, ըլլայ երկու կողմանց մէջ, ըլլայ յատենի դատաւորաց, Կիրակի օրը չի կրնար ըլլալ (էջ 7), — այսպէս կ՚որոշէ այն վճիռն՝ որ Յովհաննէս Բագրատունւոյ կը տրուի։ Հմմտ. վերն էջ 20։

Վճիռը պիտի տրուի երկու կողմն ալ լսելէն ետեւ (Գլ. 119, Հմմտ. 44, 55, 121). եւ եթէ հարկ ըլլայ՝ նաեւ երկրորդական որոշումներն ընելէն ետեւ. վճիռն ու յանցանաց ցուցմունքն բերանացի պիտի ըլլան (Գլ. 121)[4]։ Ով որ ատենի առջեւ անպատշաճ վարմունք կը ցուցընէ, կ՚ենթարկուի ըստ կամի ատենական պատժոց, այսինքն՝ կրնայ դրամական եւ բանտարգելութեան պատիժ տրուիլ իրեն (Գլ. 121)։

Դատ ունեցողներն սովորաբար չեն կրնար ի-

---

[1] Լեմպէրկի Հայոց դատաստանական կազմակերպութիւնը տես վերը էջ 6։

[2] Ռաբբունական իրաւանց մասին հմմտ. Fassel, Mosaisch-rabbinisches Strafgesetz, S. 21 f.

[3] Ռաբբունական իրաւունքն ալ, գէթ իբր կանոն, կ՚ընդունի մի միակ եղծիչ ատեան. Fassel, Mosaisch-rabbinisches Gerichtsverfahren, S. 159 f., Mosaisch-rabbinisches Strafgesetz, S. 73.

[4] Ինչպէս նաեւ հրէական իրաւանց մէջ, հմմտ. Bloch, S. 84 f.

րենց փոխանորդ մը դնել (Գլ. 57, 119) — ինչպէս նաեւ հրէական իրաւանց[1] եւ ամէն նախնական իրաւանց մէջ. անոր համար անչափահասաց դէմ եղած դատաստանը պիտի յետաձգուի մինչեւ չափահասութիւն (Գլ. 115)։ Միայն կանանց տեղ կրնան իրենց այրքն կամ ազգականքն, այսինքն իրենց յանձանձիչքն յատենի երեւալ. բայց այսպէս ուրիշին տեղ դատաստանի ներկայացողն իւր վաւերական թուղթը պիտի ցուցընէ. եթէ մէկը նենգութեամբ առանց վաւերականի իբրեւ փոխանորդ ներկայանայ՝ կինն ասկէ վնաս մը չի կրեր (Գլ. 123)։

Դատ ունեցողներն խիստ պարտաւորութիւն ունին ներկայանալու, — ինչպէս է նաեւ կանոնական իրաւանց եւ հրէական իրաւանց մէջ։ Բայց մինչ հրէականն միայն հոգեւոր միջոցներով՝ նզովքով կը ստիպէ[2], հայ իրաւունքն աշխարհական միջոցներով կը ստիպէ։ Ով որ յամառութեամբ չի ներկայանար, ամէն մէկ չներկայանալուն՝ դրամական պատիժ մը կ՚առնու, առաջին անգամ երեք, յաջորդ անգամներուն վեց կրօշ (grossi). բաց ասկէ՝ կրնայ նաեւ բանտ դրուիլ, մինչեւ որ պատշաճ երաշխաւորութիւն տայ (Գլ. 122)։ Սակայն հայ իրաւունքն նաեւ դատին որոշումն ալ կը գործադրէ յամառութիւնը ճանչնալէն ետեւ. այսինքն՝ եթէ ամբաստանեալն երեք անգամ ազդարարութիւն ընդունելէն ետեւ չի ներկայանար, ոչ միայն յիշեալ պատիժները կ՚առնու, այլ եւ դատը կը կորսնցընէ (Գլ. 122)։ Յայտնի է որ իրաւունքն դէպ ի նոր շրջան զարգանալու վրայ է, որուն մէջ յամառութիւնը ներկայանալու պարտքը կը բառնայ. այս շրջանին դեռ հասած չէ հայ իրաւունքն, բայց հա-

---

[1] Ասիկայ հոս գէթ ամբաստանելոյն համար կ՚արժէ. Թալմուտական իրաւունքն ամբաստանողին կը շնորհէ փոխանորդ, տես Bloch, S. 16 f., Fassel, Gerichtsverf. S. 9.

[2] Հմմտ. Fassel, Gerichtsverfahren, S. 15, Bloch, S. 24 f. Ասոր վրայ ի մասնաւորի ուրիշ տեղ կը խօսինք։

նելու վրայ է. վասն զի ներկայանալու պարտքէն յամառութեան դէմ վարմանց անցումն՝ յետադիմութիւն չէ, այլ միայն կամաց կամայ զարգացումն։

Օտար ամբաստանողներու համար հիւրընկալութեան իրաւունք մը կայ, այս է՝ օտարականաց դատը շուտով կը կատարուի. վերջին պայմանաժամն է չորրորդ օրն, ուր սովորական պայմանաժամն է երեք շաբաթ (Գլ. 122)։

Գլխաւոր ցուցումն է վկայից ցուցումը։ Ինչպէս որ կանոնական իրաւանց եւ նաեւ մովսիսական իրաւանց մէջ, նոյնպէս հոս երկու կամ երեք վկայից միաբան վկայութիւնն իբրեւ ցուցում կ՚արժէ[1]։ Վկաներն ալ հայ պիտի ըլլան (Գլ. 57), միջինդարեան ազգայնութեան ծանօթ սկզբանց համեմատ[2], եւ բարեհամբաւ պիտի ըլլան (Գլ. 57, 60, 83, էջ 8)։ Հաւանական է որ վկայք ալ ներկայանալու այն պարտաւորութիւնն ունենան՝ ինչ որ ամբաստանելոյն համար ըսինք (Հմմտ. Գլ. 122)։

Վկայից ցուցման կերպը նիւթական ցուցման իրաւանց պէս է, այսինքն՝ երկու կողմն ալ կրնայ վկաներ բերել, եւ դատաւորն ըստ իւր կարծեաց կ՚որոշէ ասոնց ծանր կամ թեթեւ հաւատալիութիւնը (Հմմտ. Գլ. 83, 119, նաեւ 95)։

Եթէ վկայ չկայ, ամբաստանեալն իրաւունք եւ պարտք ունի անմեղութեան կամ անարատութեան երդումն ընելու (էջ 8, եւ Գլ. 124, հմմտ.

---

[1] Գլ. 57, 60, 119, էջ 8։ Հմմտ. Երկ. Օր. ԺԷ. 6, եւ ԺԹ. 15, Թիւք ԼԵ. 30։ Հմմտ. նաեւ Մատթ. ԺԸ. 16. Յովհ. Ը. 17. Բ. Կորնթ. ԺԳ. 1. Եբր. Ժ. 28։ — Հմմտ. ասորական-հռովմէական իրաւագիրքն § 106 (ըստ ձեռագրին Լոնտոնի, Sachau, S. 31), եւ Ա. Թգրց. ԽԱ. 10 եւ 13։

[2] Այս կէտն ի Լեմպէրկ անհանդուրժելի դէպքեր յառաջ բերաւ, անոր համար Սիկիզմունտ 1521ին հրամայեց, որ այս որոշումն միայն այն ատեն արժէ՝ երբ Հայոց մէջ է խնդիրն, բայց ոչ՝ երբ Ոչ-հայ մը Հայու հետ դատ ընէ (Bischoff, Urkunden, Nr. 31)։ Եւ դարձեալ 1523ին (անդ 32) այս կէտն ամբողջովին վերցուեցաւ։ Գլ. 60ին մէջ կը յիշուին viri possessionati.

նաեւ Գլ. 37, 38, 41)[1], հրէական դրան-երդման եւ ռաբբունական երդման պէս[2]. ի մասնաւորի անմեղութեան երդում կրնայ ընել, եթէ ամբաստանեալն՝ աւանդապահ, անշահ փոխառու կամ վարձակալ է եւ պարտաւորութենէ ազատ ըլլալն կը պահանջէ, վասն զի չէ ի վիճակի յանցաւորութեան[3]։

Երդումն, ինչպէս հրէական իրաւանց մէջ, առանց երդմնակցի կը կատարուի (Գլ. 124, հմմտ. նաեւ Գլ. 37)։ Երդումը կ'ըլլայ եկեղեցին, խաչի վրայ[4], ամբաստանողին եւ ատենին ներկայութեամբն, ամբաստանողը նախ երդում ընողին ձեռքն երեք անգամ ջուր պիտի հեղու (Գլ. 124)։

Սահմաններու վէճերն երդմամբ չեն որոշուիր, այլ վկայիւք (Գլ. 83). եւ ընդհանրապէս չ'ըլլար դիւրաւ երդումն ընելու ստիպել, միայն եթէ ուրիշ կերպով չի կրնար իրը ցուցուիլ (էջ 8)։ Իրեն հասկցողներուն ցուցումն ալ կը յիշուի (Գլ. 35)։

Անմեղութեան փորձերն ամենեւին չեն յիշուիր[5]։ Հոս ալ ընկալեալ քաղաքակրթական իրաւունքն ի հիմանց փոփոխութիւն յառաջ բերած է[6]։

Պարտքը պահանջելու մասին վերն (էջ 35) պէտք եղածն ըսինք։

---

[1] Հայ իրաւանց § 402ին պէս, առ Հաքսդհ. Բ. 265.

[2] Հմմտ. այս մասին Bloch, S. 62 f., Blumenstein Die verschiedenen Eidesarten nach mosaisch-talmudischem Rechte, S. 5 f. Յայտնի է թէ Միշնի երդումն կրնար միանգամայն կատարման երդումն ըլլալ, ռաբբունական երդումն կրնար ըլլուիլ ամբաստանելոյն երդման դիմացը (բայց ոչ դրան-երդումն)։

[3] Դրան-երդման գլխաւոր դէպքերն հմմտ. Blumenstein, S. 9 f.

[4] Հմմտ. Հայ իրաւանց § 402 առ Հաքսդհ. Բ. 264։

[5] Վախթանգի վրացի օրինաց մէջ այլազգ է, ուր կը յիշուին փորձ հրաշէկ երկաթի, եռացեալ ջրոյ, մենամարտութեան եւ մեղքն վրան առնլու, ըստ Հաքսդհ. Բ. 199։ — Օսսերու քով ալ կայ այսպիսի փորձեր, Dareste, Journal des Savants, 1887 էջ 291 (ըստ Քովալեւսքիի)։ Ասոնց քով կայ տակաւին երդմնակցութիւն, զոր Հայ իրաւագիրքն յայտնապէս կը մերժէ. Հմմտ. Dareste, a. a. O p. 291.

[6] Հմմտ. նաեւ Գլ. 98։

# ՎՐԻՊԱԿՔ

| ԷՋ | | ՏՈՂ | | | ԿԱՐԴԱ |
|---|---|---|---|---|---|
| 9 | ծան³. | 1 | Blättern | „ | Blätter |
| „ | ծան⁴. | 3 | Östereich. | „ | Österreich. |
| 11 | | 4 | Գօշի | „ | Գոշի |
| „ | | 5 | orsetischen | „ | ossetischen |
| 15 | | 24 | Գօշի | „ | Գոշի |
| 16 | | 22 | „ | „ | „ |
| „ | | 31 | ԺԵ | „ | ԺԷ |
| 21 | | 4 | Ներածութենէն | „ | Նախադրութենէն |
| 29 | | 6 | ժառանգութեան յետս կոչումն | „ | ժառանգութիւնն առաջին անգամ գնելու իրաւունքն |
| „ | | 7 | յետս կոչելու իրաւունք | „ | սոյն իրաւունքն |
| „ | | 10 | յետս կոչումն | „ | առաջին անգամ գնելու իրաւունքն |
| 31 | | 16 | դրամագլխոյն վրայ պիտի հաշուուի | „ | դրամագլխէն պիտի հանուի |
| 45 | | 5 | անգամ | „ | անգամ |

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑ . . . . . Ֆր. 1.25*



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ . . . . . ֆր. 1.25*



